# ԸՆՏԻՐ
# ՄԱՏԵՆԱԳԻՐՔ

---

## Ն. ՇՆՈՐՀԱԼԻ

Nerses, Shnorhali Saint

ՏՆ. ՆԵՐՍԵՍԻ

Tn. Nersesi

# ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

Shnorhalwoy Hayots

ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

# ՆԱՄԱԿԱՆԻ




Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի ՍՈՒՐԲ ՂԱԶԱՐ

1838

Shnorhal Saint

ՏՆ. ՆԵՐՍԵՍԻ

Tn. Nersesi

# ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

Shnorhalwoy Hayo,

ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

## ՆԱՄԱԿԱՆԻ




Ի ՎԷՆԵՏԻԿ

Ի ՍՈՒՐԲ ՂԱԶԱՐ

1838

# ԲԱՆ

## ՆԵՐՍԵՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

Առ եպիսկոպոսունսն և վարդապետսն, և համօրէն դասս եկեղեցւոյ, որք յա‑ ւուր փոխի արմաւենեաց ժողովեցայք ՚ի կոչմանէ Տեառն Գրիգորիսի Կաթո‑ ղիկոսի Հայոց՝ եղբօր նորին ՚ի ձեռ‑ նադրութիւն զնա կաթողիկոսութեանն Հայոց ։

ԱՌ ՁԵԶ են բանք իմ [illegible] սր‑ բազանից քահանայապետաց և քա‑ հանայից և իմաստուն վարդապե‑ տաց, որք իբրև զանգամս յիւրա‑ քանչիւր կողմանց ժողովեցայք ՚ի մի յօդութիւն մարմնոյ հասէք առ‑ տանօր կոչմամբ ՚ի հրամանէ գլխոյս եկեղեցւոյ ։ Որպէս զի՛ նովաւ և ընդ‑ նմին մէմ ինչ յանարգաց և ոչ ՚ի պատուականաց՝ ձեռամբ Ճարտարա‑

պետական արուեստիւ յղկեալ 'ի չինուած մարմնոյն Քրիստոսի յօդիցէք իմաստապէս ։ Զորս աղաչէ նուաստախոհ յայսոսիկ նուիրելոյ անձին փոքրկութիւն՝ խոնարհութեամբ և մտադրութեամբ զլըսելիս մատուցանել գուշնաքեայ այսոցիկ բանից, որ ոչ 'ի լսելիս հրապեալ միանգամ և յօդս ցնդեալ, այլ արձանացուցեալ գրով ըստ գերակատար իմաստնոցն օրինի ։

Բանականս բնութիւն յերկուս բաժանի, յանմարմինս և 'ի մարմնաւորս ։ անմարմնոցն սեռք երանական պատահեալ վիճակի՝ անմահութե և անախտութեան, անփոփոխ ընկալան զկ[illegible]յանն փառաց և զպատիւ՝ յորմէ · հեռաէ գոյացեալքն եղեն · քանզի կոչեցեալքն պետութիւնք և տէրութիւնք և իշխանութիւնք և դասակիցք նոցունց ոչ փոփոխելով զայլ՝ բարձրացան 'ի խոնարհութենէ և ոչ փոփոխեցին յորոց ստացան մինչև յաւիտեան · այլ յաւէտ մշտնջենաւորաբար ունին զոր 'ի լինելութեանն ընկալան յարարչէն ։

Էր առաջին և մայրենաւորացս աղ-
գի նոյնաբար լինել եթէ կացեալ
էաք 'ի պատուիրան սկզբնատպին.
բայց զի պատուիրանազանցութե
մեզաք՝ և յաղագս մեղացն մեռաք,
և մեռելութեամբն կորուսաք ըզ-
փառս յաւերժականս, և տարա-
գիր գոլով՝ 'ի հայրենի ժառանգու-
թեանցն՝ յաշխարհս յայս փշաբեր
և անիծիւք դատապարտեալանկաք,
նորին աղագաւ անձաւեր և փոփո-
խական ամենայն ինչ եղև եթէ աս-
տուածային գործոյն տեսութիւնս,
և եթէ նիւթականիս աշխարհի իշ-
խանութիւն: Եւ զի այս այսպէս
գոլով հնարաւորեաց բնութիւնս
իմաստութեամբ, մանաւանդ թէ
'ի վերուստ տուեալ, որպէս զի
փոփոխմամբն զմիմեանս՝ անմահա-
բար և մահկանացուացս սեռ ըստ
անմահիցն կալցեն զգործ և զիշխա-
նութիւն: Ըստ որում և զնահա-
պետսն մարգարէքն փոխանակեցին,
և զմարգարէսն դասք առաքելոցն
և աւետարանչացն, և զնոսա հետե-
ւողք նոցին հայրապետք իւրաքան-

պետական արուեստիւ յղկեալ 'ի շինուած մարմնոյն Քրիստոսի յօդիցէք իմաստապէս ։ Զորս աղաչէ նուաստախոհ յայսոսիկ նուիրելոյ անձին փոքրկութիւն՝ խոնարհութեամբ և մտադրութեամբ զլսելիս մատուցանել դուզնաքեայ այսոցիկ բանից, որ ոչ 'ի լսելիս հնչեալ միանգամ և յօդս ցնդեալ, այլ արձանացուցեալ գրով ըստ գերակատար իմաստնոցն օրինի ։

Բանականս բնութիւն յերկուս բաժանի, յանմարմինս և 'ի մարմնաւորս. անմարմնոցն սեռք երանական պատահեալ վիճակի՝ անմահութե՛ և անախտութեան, անփոփոխ ընկալան զվ[illegible]յանս փառաց և զպատիւ՝ յորմէ. հետէ գոյացեալք եղեն. քանզի կոչեցեալքն պետութիւնք և տէրութիւնք և իշխանութիւնք և դասակիցք նոցունց ոչ փոփոխելով զայլս՝ բարձրացան 'ի խոնարհութեանէ և ոչ փոփոխեցին յորոցստացան մինչև յաւիտեան. այլ յաւէտ մշտնջենաւորաբար ունին զոր 'ի լինելութեանն ընկալան յարարչէն ։

Էր առաջին և մարմնաւորացս աղգի նոյնաբար լինել եթէ կացեալ էաք՝ ի պատուիրան սկզբնատպին. բայց զի պատուիրանազանցութ̃բ մեղաք՝ և յաղագս մեղացն մեռաք, և մեռելութեամբն կորուսաք ըզմասս յաւերժականս, և տարագիր գոլով՝ ի հայրենի ժառանգութեանցն՝ յաշխարհս յայս փշաբեր և անիծիւք դատապարտեալանկաք, նորին աղագաւ անվաւեր և փոփոխական ամենայն ինչ եղև եթէ աստուածային գործոյն տեսութիւնս, և եթէ նիւթականիս աշխարհի իշխանութիւն։ Եւ զի այս այսպէս գոլով հնարաւորեաց բնութիւնս իմաստութեամբ, մանաւանդ թէ ի վերուստ տուեալ, որպէս զի փոփոխմամբն զմիմեանս՝ անմահաբար և մահկանացուացս սեռ ըստ անմահիցն կալցեն զգործ և զիշխանութիւն։ Ըստ որում և զնահապետսն մարգարէքն փոխանակեցին, և զմարգարէսն դասք առաքելոցն և աւետարանչացն, և զնոսա հետեողք նոցին հայրապետք իւրաքան-

չէր տոհմի և աթոռոց, և վարդապետք եկեղեցւոյ որք են ըստ առաքելոյ՝ի հաստատութիւն սրբոց, ՝ի գործ պաշտաման, ՝ի շինուած մարմնոյն Քրիստոսի: Յորոց է և մերն հայր Լուսաւորիչն հայաստանեաց Գրիգորիոս, և որք ՝ի նմանէ ըստ հոգւոյ և ըստ մարմնոյ ծնունդք յառաջ եկեալ ժառանգք և աթոռակալք, և որք յետ նոցա կացեալք յաստիճան հայրապետութեան, հաճոյք Աստուծոյ և ընտիրք մարդկան մինչև ՝ի մերն նախնիք և արեանառուք. և հարազատք սրբոյ Լուսաւորչին ՝ի Գրիգորիոս՝ որ և Վահրամ նախաձայնեալ, և՝ի Բասիլիոս, որք ոչ ըստ մարմնոյ միայն հաղորդեալք նորին ազնուականութեան, այլ և հոգևորապէս հետևեալք հօրն առաքինութեանց. նա և լցօղք եկեղեցւոյ լուսաւորութեան յետնոցին աստուածաշունչ գրոց կտակարանաց թարգմանութեամբ, և ամենայն բարեմասնութեամբ յաստուածայինն յառաջացեալք ՝ի նուազեալս վերջնում

դարու ժամանակիս. և զկնի նոցին զընթացս կենցաղական բարւոք կատարելոյ և առ Աստուած ժողովելոյ՝ զորդգիացեալն ինքեանց հայրապետապէս մարմնով և հոգւով, և 'ի գիրկս խնամատարութեան նոցունց մնեալ, և 'ի հրահանգս հանճարոյ ստացուածեղէն խնամոց յառաջին տիոցն կրթեալ իմն Գրիգորիոս, եղբայր ըստ մարմնոյ, և հայր ըստ հոգւոյ՝ հաստատեցին 'ի նախնական իւրեանց տիրական աթոռ՝ ըստ գրեցելումն. փոխանակ հարց քոց եղիցին որդիք քո: Ոչ յաղագս ըստ մարմնոյ ընտանութեան միայն, այլ և 'ի Հոգւոյն ընտրութենէ նախ աղդեցեալ, որով յոյժ հրաշափառագոյն բանիւ և գործով քան զքազում յաթոռակալացն զատանախնեաց. 'ի մաքրութիւն հոգւոյ ըստ հրոյ գոլով զուգամասնութեան, յիմաստս բանի և 'ի շարադրութիւնս տառի գեղեցկապէս և ըստ կարգի. 'ի վերծանութիւնս իբր թէ նոյն է որք կենդանի խօսեցան ձայնիւ. 'ի գիտութիւնս գրոց ծայ-

րագոյնս, և 'ի խորհուրդս հանճա-
րոյ` ըստ տէրունեան խրատու բարե-
դք խորագիտութեամբ: Եւ զի յեր-
կիւղէ մարդահաճութեան զանգի-
տեալ, մանաւանդ զի իմումն և ոչ
օտարի աղադաւ դրուատեաց քանի
գովութիւն յարմարի, նորին վասն
ոչ է ընդ բովանդակն անցանել սո-
րին գովելի գործոց, զոր 'ի մանկա-
կան տիոցն մինչև ցայժմ 'ի դէպ
վարկաք զպանդխտական կենացն 'ի
դժնեայ պատահեալ ժամանակին,
զհամբերութիւն իմաստասիրաբար,
զփոփոխումն տեղի 'ի տեղւոջէ ըստ
փոփոխական կենաց, և յայնո-
սիկ անփորձ պահել ըստ խնամո-
ցն Աստուծոյ զիւրականս աթոռ.
զշինուածոցն ըստ իւրաքանչիւրսն
տաժանման եկեղեցեաց և հանգըս-
տարանի սրբոց, ոչ տալով քուն
աչաց և նինջ արտեւանանց ըստ Դաւ-
թայ` Թէպէտ և ըստ մեղաց մերոց
ոչ ժառանգեցաք զլեառն սրբու-
թեան զոր ստացաք · զչար իշխողաց
և զանբարեաց առ որս մերձ պա-
տահեալ մերասեռաց և օտարասե-

ուխց՝ զխորհուրդս և զկամս չարեացն
նհանջել իմաստութեամբ և ներո_
ղութեամբ. և որք յանդգնեալ ժըպր_
հեցան գործով ցուցանել զչա_
րութիւն, զաստուածայինն վրէժխըն_
դրութեանն բարկութիւն հեղեալ
առ նոսա, որպէս վկայեն խրադէտք
այսոցիկ և տեսողք: Զի՞նչ և որ առ
խուր հարազատս և եղբարս բարեացն
պատճառ և փոյթ լինելոյ ասելի
է. որ ըստ մեծին Զօրաբաբելի ժո_
ղովեաց զցրուեալս և եւս հայր
փոխանակ հարցն. զոմանս ըստ աշ_
խարհի տնօրինելով, և զոմանս հո_
գևորապէս՝ որպէս և զիմս անար_
ժանութիւն. զի 'ի վարժուածս աս_
տուածայնոցն իմաստից ներակըր_
թեալ արժանացոյց ըստ հասակին
յառաջասութեան՝ և աշախճանա_
ցըն բարձրութեան: Զխո̂րդ թողլի
է առանց յիշատակի և հանրականն
որ սովաւ և'ի սմանէ բարեգործու_
թիւնն, այն որ յաշխարհակործանս
ժամանակի նախախնամութեամբն
Աստուծոյ, և իւրով իմաստու_
թեամբ և ջանիւ և առատապէս

ծախիւք բիւրուց և հազարացպատճառ եղև փրկութեան, և ազատութեան ՚ի ծառայութենէ։ Որ և փրկեալքն ՚ի զանազան լեզուաց և աշխարհաց աղաղակեն ։

Եւ արդ սա որ ՚ի մանկութենէ մինչև յաւագոյթս ըստ հաճոյիցն Աստուծոյ քաղաքավարեալ՝ և ոչ և միով իւիք յիւրաքանչիւր հասակին դղրդեալ ՚ի հակառակաց, այժմ ՚ի ծերութիւն պատուական հասեալ, և ՚ի կրից ախտակիրս բնութեան վտանգեալ, յարաժ կոչելով զմերս անարժանութիւն՝ ստիպէ առնուլ զաստուածընկալ աթոռոյ իւրոյ փոխանորդութիւն. զոր ոչ միայն այժմ, այլ և կանխագոյն ժամանակօք դնէր զայս առաջի։ Եւ պատճառ յառաջագոյն ոչ լինելոյն, ոչ յիշխանականն ւորայն կամաց, այլ ՚ի միշտ հրաժարելոյն մեր յաղագս հեղգութեան անձին և հոգևորացն պակասութեան. և զի չէր պարտ զԱհարոնիւ զանցանել, և Եղիազարու յառաջ մատչել մինչ յողջութեան էր ըստ մար-

մնոյ ։ Իսկ այժմ զի զօրացաւ քան զբնութիւն տկարութեանն մերք, վասն այնորիկ հարկիմք ընդունել զհարկեցուցիչ հրաման սորա, թէ պէտ և ոչ ինչ նուազ և մեք նոցին տկարութեամբ զգածեալ եմք ։

Այլ.զահի հարեալ եմ և դողամ ըստ մեծի մարգարէին. զի թէ նա 'ի տուերին միջնորդ եղեալ Աստուծոյ և մարդկան, զայսպիսի կրէր և ասէր, քանզի և ես արդեօք որ'ի ճշմարտութեան զարհուրելի է ։ Եւ անդ Մովսէս և ահեղանն Աստուծոյ, և խօսակցութեան արժանաւորն. և տա հեռացելոյ անձին 'ի նորին առաքինութեանցն արժանաւորութենէ ։ Քանզի որք մաքր են առաքինութեանց սկզբունք՝ իմաստութիւն, արիութիւն, ողջախոհութիւն և արդարութիւն, վրիպեալ դատանին յիմում իշխանականի մասին ։ Զի ոչ խրատեցի ըղձքանն որ յիս իմաստութեամբ, և ոչ զցանկութիւնն ողջախոհութեամբ, և ոչ դարձեալ զայսպիսի խրատեցի արդարութեամբ, որպէս

զի կառք Աստուծոյ ըստ քառակեր-
պիցն յարդարեցից այսու զանձն.
այլ մանաւանդ հակառակացն բեր-
մամբ՝ անմտութեան և հեղգու-
թեան, բղջախոհութեան և անի-
րաւութեան, օտարացեալ 'ի ճշմա-
րիտ բարւոյն՝ ընդանի չարին եղէ
ներգործութեան: Եւ զի որ յԱս-
տուած մերձենայ, մանաւանդ գե-
րագունի քահանայապետութեան
նմանութեամբ, աստուածանալ
պարտի առաքինութեամբ ըստ
գրեցելումն՝ ըստ չափոյ զօրու-
թեան յեղանակի և հողեղէնս
բնութեան, որպէս ետուն մեզ օ-
րինակ որք յայս գործ տնտեսու-
թեան տանն Աստուծոյ կոչեցեալք
եղեն 'ի տեառնէ: Նախ առաջին
մարգարէքն, որք 'ի հովուաց ըն-
տրեալք՝ հովիւք կարգեցան տանն
Իսրայելի. որք և մահու չափ յա-
ղագս փրկութեան հօտից իւրեանց
ճգնեալք՝ չարչարանօք ելին յաշ-
խարհէս: Եւ յետ նոցա դասք ա-
ռաքելոցն, որք մերկացեալք յաշ-
խարհէ և յաշխարհայնոց ըստ վկայ-

եղոյ տեառն եթէ Դուք չէք յաշխարհէ, և ըստ Պաւղոսի եթէ ինձ աշխարհ 'ի խաչ ելեալ է, և ես աշխարհի. զորս և 'ի կարգս արկեալ զմեռելութեանն օրինակ՝ ասէր. Ի պահս բազում անգամ, 'ի քաղց և 'ի ծարաւ, 'ի սով և 'ի մերկութիւն, և որ մի ըստ միոջէքն ամենայն: Եւ զի հալածեալք եղեն վասն արդարութեան՝ գրէ դարձեալ ըզպատճառն. Ես կապեալ Յիսուսի Քրիստոսի վասն ձեր հեթանոսաց: Զնոյն առնել օրինադրեցին և ամենայն հովուաց որք յետ նոցա զանձինս իւրեանց կամեցան դնել 'ի վերայ հօտին Քրիստոսի. որպէս և եղեն իսկ նմանողք նոցա հայրապետք յընդհանուր տիեզերս, որք և շինեցին յիւրաքանչիւր տեղիս և ժամանակս զիմանալի շինուած հաւատոյ 'ի վերայ հիման առաքելոց և մարգարէից՝ ոչ 'ի փայտից և 'ի խոտոյ և յեղեգանց ըստ հերձուածողաց և մարմնասիրաց բանից և գործոց, այլ ուղղափառութեան իմաստիւք, և զանազան առաքինու-

թեան գործովք, որ համեմատի յոսկի և յարծաթ և յականս պատուականս. որովք ոչ միայն զինքեանց զարդարեսցին զպատկերի վայելչութիւն'ի նմանութիւն սկզբնատպին, այլ և բազմաց որք առաքինութեան նոցա եղեն հետևողք:

Իսկ ես անհամեմատս յամենայնի բազմամասն ազգին առաքինութեանց օրինակաց, զխա՞րդ ձեռնարկեցից տաժանելի հոգւով և տկար մարմնով'ի վեր քան զզօրութիւն անձին և զարժանաւորութիւն'ի գործ և'ի պաշտօն: Ո՞րպէս համարձակեցայց'ի սպասաւորութիւն այսր հովուութեան, ուր հովիւն քաջ զանձն իւր եդ'ի վերայ ոչխարաց և նմանողք նորա. և ես և ոչ զանձն իմ արածեցի օրինօք Աստուծոյ ըստ ամբաստանելոյ հովուացն Իսրայէլի մարգարէին, որ կայ առաջի ոչ միայն ընդ անձին, այլ և ընդ հօտիցն տալ պատասխանի: Զխա՞րդ և'ի բժշկականն ժառանգեցայց տածումն մարմնոյ եկեղեցւոյ ըստ շամփոտացուցոյն օրինակի՝ անբժըշ-

կեղծ ունելով զանձն 'ի զանազան ախտից անյայտից և յայտնի եղելոց, որով և առ իս ատեցեալքն ընդդիմաքանին: Բժիշկ բժշկեա զանձն քո: Զիա՞րդ և քաւիչ այլոց անուանեցայց կարօտս քաւութեան բազում իմոց սխալանաց, և կամ վարդապետ՝ որ ոչ գործով արդարացուցի զբան վարդապետութեանն: Ո՞րպէս դաստիարակ կամ դայեակ ըստ Պաւղոսի տղայացելոց 'ի Քրիստոս, որ ոչ նախ դաստիարակեցի զոգիս գաւազանաւ խրատուց, և ոչ արբուցի սմա կաթն և մեղր 'ի ստենէ պատուիրանացն Աստուծոյ: Զիա՞րդ լոյս անուանեցայց աշխարհի, և կամ աղ, խաւարաւ տգիտութեան և մեղաց մթացեալս, և յաղագս անհամութեան անպիտանացեալս երկրի և տղմոյ, արդարոց և մեղաւորաց, և արտաքս 'ի բարւոյն ընկեցեալս 'ի կոխումն նոցին: Ո՞րպէս հարց սրբոց պետ վերակոչիմ որ և ոչ աշակերտութեանց փոքունց 'ի նոցանէ արժանաւորիմ: Զիա՞րդ գլուխ եկեղեցւոյ՝ յետ գրե

խոյծ՝; որոց և գարշապար չլինելոյ ըստ ուղիղ դատման՝ ունիմ արժանաւորութիւն ։ Ո՞րպէս մշակ և անկարգործ իմանալի այգւոյ և Թըզենւոյ ըստ տէրունեան առակին, որ ո՛չ նախ զիմս բանաւոր երկիր մշակեցի և 'ի պտղաբերութիւն հասուցի ։ Զի՞արդ կոյր գոլով զառաջնորդականն յանձն առեցիր և կոչումն, անձին և առաջնորդելոցն խորխորատի լինել պատճառ. կամ ո՞րպէս կերակրիչ քաղցելոց և մատռուակ ծարաւելոց իմաստութեան հացին և կենարար բաժակին՝ սովեալս առ ծուլութեան, և պասքեալս յերկաքանչիւրոցն լմանէ. ուր զի օրինակքն ճշմարտութեան 'ի վերնատունն նախ արքին, և ապա արբուցին տիեզերաց ։ Զի՞արդ միջնորդ Աստուծոյ և մարդկան՝ ոչ ունելով համարձակութիւն կալ առաջի և մաղթել ըստ Մովսէսի անցանել բարկութեան 'ի ժողովրդենէն, ուր և ես յաղագս պէսպէս օրինազանց լինելոյ զարհուրիմ 'ի ցասմանէ պատուհասից ։

կամ որպէս դատաւոր մեղուցելոց
լինիցիմ ինքնադատս յանխառ դա-
տաւորէ խղճի մտաց որ յիս։ Զի-
նորդ դէտ ըստ մարգարէին լինել
յանդգնիցի ակն զաչացու, որ ոչ
միայն 'ի բացուստ ոչ նկատելով
զթշնամին առզեմ պահապանելոցն,
այլ և յանձին խմուեմ ձգեմ յօժա-
րութեամբ զանէգս և զնետս նորա՝
կամաւ աղխատացեալս. կամ որպէս
հաղարապետ խորհրդոցն Աստու-
ծոյ, որ և ոչ ռամիկ յաստուածայ-
ինան լինել արժանաւորիմ։ Թո-
ղեց ասել զևս բազմապատիկ ա-
նուանս միում այս աշտիճանի կոչե-
ցեալ ըստ գործոյն, որ և ոչ մի 'ի
սոցանէ իմուսն համեմատի թշուա-
ռութեան տիրապէս գառամամբ։
Եւ այս յառաջին աշտիճանացն
առելոց փորձ է. քանզի ոչ սպա-
սաւորեցի իւղոյն սրբութեան ա-
նուշահոտ վարուք'ի սրբութեանն.
և ոչ մատուցի զանձն պատարագ
կենդանի, սուրբ, հաճոյ Աստու-
ծոյ՝ ըստ խրատու Առաքելոյն,
քահանայութեամբն անպատարա-

գեղի ոչխարին պատարագելոյ. և ոչ 'ի տեսչութեանն սակաւուն հօտի արբուցի զջուրն հանգստեան, կամ արածեցի 'ի վայրի դալարւոջ իմաստութեամբ: Եւ զի այսուհետև այսպէս խնկապէս խոստովանեալ զանձնէ, և ոչ առ խոնարհութեան, անգիտանամ յերկաքանչիւրոցն ընտրութենէ. զի թէ զոր պահանջէ յինէն հայրս հոգւոց և դուք ընդ նմին գործօնեայք բարեաց՝ յանձն առից, զարհուրիմ երկիւղիւ նայեցեալ յիմս տկարութիւն, և 'ի մեծի այսր աստիճանի բարձրութիւն և ծանրութիւն. մանաւանդ 'ի չար և յանմասն բարեաց ժամանակիս, որք ոչ միայն յարտաքնոց, որք հակառակ են հաւատոյ՝ նեղեալ տագնապիմք ըստ մարմնոյ, և աղաւաղին կարգք եկեղեցւոյ, այլ և անուամբ քրիստոնէից, նա և յորոց կցորդ է կարգի մերոյ և ձևոյ, որք յաղագս փառամոլ ախտի հակառակ գտեալք Աստուծոյ և աստուածայնոյ աթոռոյս՝ 'ի սկզբանէ հայրապետու-

Թեանուեանս մերոյ մինչև ցայժմ,
որպէս ծանօթ է ամենեցուն՝ և
զազատեալս 'ի Քրիստոս զեկեղեցի
սուրբ՝ ընդ հարկաւ արարին անօ-
րինաց կամաւ, և ոչ 'ի հարկէ.
որոց տալոց էին զվրէժ հատուցման
պղծամբք գեհեննոյն առաւել քան
զայլոց մեղանաց: Թողում ասել
զմեծն պատճառ, զի ամենայն ոք
ընդ ճանապարհ կամացն իւրոց գնայ,
և ոչ ընդ աստուածայինն. և եթէ
ոք յորոց հարկ 'ի վերայ է, և յան-
գիմանէ զանխրատսն, և սաստէ
ըստ առաքելական հրամանին, ոչ
միայն զի ոչ դառնան 'ի չարեաց 'ի
բարիս, որպէս օրէն է աստուածա-
պաշտից, այլ և ընդդիմաբանեալ
հակառակին, և թշնամի կառա-
րեալ և դաւաճանօղ յանդիմանի-
չացն լինին: Եւ եթէ լաւ յաղա-
գըս այնպիսեաց երկիւղից և ոչ
խօսել զաստուածայինն բանն, լաւ
զասացեալն. Ծառայ չար և վատ,
պարտ էր արկանել զարծաթն իմ
'ի սեղանաւորս. և սեղանաւորքն
ոչ 'ի միում աշխարհի բնակեն որ-

ակէս այլոց ազգաց, զի՛ դիւրին էր հրջել առ նոսա առաջնորդացն և սերմանել զբանն, այլ ըստ մեղաց մերոց ցրուեալ են ազգք մեր և ժողովուրդք ընդ ոլորտս տիեզերաց 'ի մէջ օտարասեռ ազանց: Նաև աթոռս սուրբ դրդուեալ 'ի հաստատութենէ, 'ի զանազան և յանպատշաճ վայրս տարբերի ընդ հարկաւ և երկիւղիւ այլասեռից, և անօգնական և աննուէր 'ի մերասերաց. որում ոչ է կար համարձակ հրջել և ուսուցանել, այլ թաքնաբար լինել որպէս մխասասպրատ:

Իսկ եթէ յայսցանէ և որ նման սոցին զանգիտեալ ընդդիմանամք կոչողին հրամանին, երկնչիմ դարձեալ յանհնազանդութեանն դատապարտանէ ըստ դրեցելոյն. Որդի անհնազանդ 'ի կորուստ եղիցի: Եւ այսոցիկ տարակուսանաց եւ ոչ այլ ուստեք, բայց եթէ յաստուածահաճոյ աղօթից ձերոց. զի թէ ուր երկու կամ երեք ժողովին, 'ի մէջ նոցա է Քրիստոս ըստ անսուտ հրամանին, քանի՞ ևս ար-

գեօք հաւատալի է լինել 'ի մէջ այսքանեաց սրբազանից հարց բոլորեցն Աստուած՝ ժողովելոց յանուն Նորա յաղագս հոգևորականըս խնդրոյ ։ Այլ և որ ընդ ամենայն տեղիս է ; և մերձ առ ամենեսեան որ կարդան առ Նա ճշմարտութեամբ , յորմէ հայցել պաղատիմ 'ի բոլոր սրտէ ջերմագոյնիւ արտասուօք՝ գլխոյդ 'եկեղեցւոյ , և որ ընդ քև յօդեալ քահանայապետից և վարդապետաց և դասուց քահանայից և կրօնաւորաց յաղագս բազմադիմի կարօտացելոյս անձին ձերումդ աղօթից օգնականութե ։

Եւ կերպարանք աղօթելոյն զոր հայցեմն նախ և առաջին այս է , զի ըստ տուեցելոյն ձեզ 'ի վերուստ՝ արձակել յինքնակալ կապարանէ ախտից և մեղաց խնդրեցէք զիս յայնմանէ՝ որ անդամալուծին և պտունկին աստուածաբար հրամայեաց խուրաքանչիւրոցն , թէ 'թողեալ լիցին քեզ մեղք քո ․ որպէս զի զոր միանգամ 'ի ծննդենէ աւաղանին մինչև ցայսօր մեղուցեալ

եմ անմեղին բնութեան, երից և մի աստուածութեանն երկուք իմովք միութեամբ հոգւով և մարմնով և մտօք, 'ի խորհուրդս և 'ի բանս և 'ի գործս, թողութիւն շնորհեսցէ ամենառատ բարերարութեամբն իւրով։ Բժշկեսցէ ընդ հոգւոյս խոցուածոց և զմարմինս յիւրական տկարութեանց կրից։ Եւ զօրհնութիւն ձեր աստուածային որ հանդերձեալ է իջանել 'ի վերայ մեղաւորիս, լինել որպէս հուր մաքրիչ տղմոյ յանցանաց անձին իմոյ ըստ իջման Հոգւոյն 'ի դասս առաքելոցն, սրբել յեղելոց սխալանացն զներքին և զարտաքին զգայարանս և զանդամս, և զբոլոր շարժմունս հոգւոյ և մարմնոյ, և առնել զիս նոր փոխանակ հնոյ, և պահել նովին նորոգութեամբ յապագային հնացուցիչ կրից մինչև 'ի կէտ կոչման իմոյ 'ի Քրիստոս։

Երկրորդ յետ այսորիկ ըստ կարգի, և առաջին ըստ զօրութեան, զայսոսիկ 'ի տեառնէ ձեզ վասն իմ խնդրել. զի թէ ողորմութեամբ

խուռով յայսոսիկ տնօրինեաց զիս լինել և ոչ ներողութեամբ, տացէ զօրութիւն տկարութեան իմոյ, և զերկիւղ իւր սուրբ 'ի դաստիարակութիւն անձին իմոյ. որպէս զի զառաջիկայ գործ տնտեսութեան կաթողիկէ ընդհանրական եկեղեցւոյ և զհովուութիւն բանաւոր հօտից Քրիստոսի, և զառաջնորդութեանն օրինակ առաջնորդելոցն առ Աստուած, ուղիղ և անմոլար ըստ աստուածային պատուիրանացն և տուեցելոց բարեաց օրինակացն կատարեցից: Մի և մի իւիք որքան է զօրութիւն, խոտորել ախտաբար 'ի հակառակն կոյս, և կամ նուազեցուցանել հեղգութեամբ'ի լաւագունացն. մի բանիւ և մի գործով և մի յօժարութեամբ խորհրդոց. այլ ուղիղ համառօտել զքան հաւատոյ ճշմարտութեան, և յարդարել զգործս արդարութեամբ և սրբութեամբ, և ամենայն մասամբք բարելաւութեան ըստ օրինացն Աստուծոյ, լինելով ինձ յայսմ տեսչութեան հոգևո-

բանական գործոյ՝ մի՛ գայթակղութիւն տկարաց, կամ 'ի հայհոյութեան պատճառս կարգի և հաւատոյ. այլ օրինակ բարեաց տեսողաց՝ բանիւ և գործով, և 'ի փառս փառաւորեալ անուանն Աստուծոյ: Լոյս լինել անգիտութեամբ խաւարելոց, և աղ մորմոքիչ յանդիմանող բանիւ 'ի մեղս զառածելոց: Ըստ աղաւնոյ միամիտ 'ի սէր պատուիրանացն Քրիստոսի, և ըստ օձի բարիոք խորագիտութեամբ ընդդէմ չար խորամանկութեանց սատանայի և նովաւ զօրացելոցն. որպէս հնարաւոր իմաստութեամբ առաքելական ուսմանն զմարդիկ 'ի կեանս, և հանել 'ի ծովէ աշխարհէ 'ի ցամաք, յախտից յերկիրն արդարոց. ժողովել զբարիսն յշտեմարանս արդարութեան: Յորում արժանի լիցուք մեք հանդերձ ձեօք ասել առ Աստուած՝ Ահաւասիկ ես և մանկունք իմ զոր ետուր ցիս. և 'ի տեառնէ լսել. Ծառայ բարի և հաւատարիմ, եկ մուտ յուրախութիւն տեառն քոյ: Որոց լիցի ամենեցուն մեզ հասանել

հովուաց և հօտից երկնային բարեացն 'ի ժառանգութիւն արքայութեանն որ 'ի Քրիստոս Յիսուս․ ամէն ։

Դարձեալ աղաչեմ զքո մանաւանդ խնդրելին է, որպէսզի և յաղագս հանրական եկեղեցւոյ և ազգի հայաստանեաց ջերմեռանդն սրտիւ աղօթս առ բոլորից Աստուածն մատուցանել։ Եւ զհարսն մեր զառաջինսն զլուսաւորիչն Գրիգորիոս հանդերձ որդւովք իւրովք. սրբովք որք 'ի վերայ օրինացն Աստուծոյ յապառում Թագաւորացն Հայոց և 'ի վայրենաբարոյ իշխանացն տաժանելի կրիւք ելին յաշխարհէ, բարեխօս կալցուք առ Աստուած, մանաւանդ թէ զԱստուած առ նոսա․ զի նախ նոքա թողութիւն շնորհեսցեն արդարապէս անիծիցն զոր հեղին 'ի վերայ որդւոց ժողովրդեան իւրեանց, որով և աններելի եղև բարկութիւնն Աստուծոյ այսքան երկար ժամանակաւ, բառնալով զթագաւորութիւն և զիշխանութիւն, և մատնելով 'ի սուր և 'ի գերութիւն, և ցրուելով ընդ հրէ

ական տոհմին 'ի ստրկութիւն և 'ի ծառայութիւն ամենայն ազգաց ։ Եւ յորժամ հաշտեսցին նոքա, ապա դարձցին և պաղատեսցեն առ Աստուած մեր բառնալ զցասումն պատուհասի յանցանաց, զոր մարգարէացան գալ 'ի վերայ մեր ։ Հալածել զյարուցեալսն 'ի վերայ և փրկել զմեզ 'ի բերանոյ առիւծուց․ ազատել զգերեալսն 'ի տանէ կապանաց որք Նստին 'ի խաւարի, և դարձուցանել զամենեսեան յաշխարհն հայրենի որպէս 'ի ձեռն Զօրաբաբելի զորդիսն Իսրայէլի․ յարուցանել Թագաւոր արդար և իշխանս յիրաւունս Աստուծոյ հաստատեալս ։ Զի որպէս 'ի խստացն և յապստամբացն զբարկութեանն բաժակ արբաք 'ի ձեռանէ տեառն, նոյնպէս 'ի ձեռն հնազանդելոցն օրհնացն Աստուծոյ՝ զքաղցրութեան բաժակն և զողորմութեան արբցուք ։ Որովք 'ի մի բերան փառաւոր արասցուք զամենասուրբ զԵրրորդութիւնն զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգին՝ այժմ և միշտ և յաւիտեանս ․ Ամէն ։

# ՆՈՐԻՆ ·

# ՆԵՐՍԷՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

## ԹՈՒՂԹ ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆ

*Առ համօրէն հայաստանեայս ազգին, որոց փեղշութիւն հաստատեցաւ նմա 'ի փէտանէ։*

ՆԵՐՍԷՍ ծառայ Քրիստոսի, և ողորմութեամբ Նորին կաթուղիկոս Հայոց, ընդհանուր հաւատացելոց Աստուծոյ. հայկականազգեացն, որք յարեալք՝ 'ի սեպհական աշխարհդ հայաստանեայց բնակեալք, և որք յարևմտեան կողմանսդ սահեալք նժդեհութեամբ, և որք 'ի միջերկրեայս 'ի մէջ այլազգու ազանց տարագրեալք, և որք յիւրաքանչիւր եզերս աշխարհաց ըստ մեղաց մերոց ցրուեալք 'ի քա-

ղաքս և 'ի դղեակս 'ի գեւղս և յա-
գարակս , որոց այդոցիկ ամենե-
ցուն՝ քահանայապետաց և քահա-
նայից , վանականաց և քաղաքայ-
նոց , իշխանաց և իշխեցելոց , զի-
նուորաց դատուց , ձիավարժից և
հետևակաց , գաւառապետաց և
գործակալաց , տանուտերաց և եր-
կրագործաց , վաճառականաց և ա-
րուեստագիտաց , և որոց միանգամ
'ի զանազան Ճանապարհս ընթա-
նան կենցաղոյս , ըստ ընտրութեան
կամաց և յօժարութեան՝ արանց
և կանանց , մանկանց և երիտասար-
դաց , կատարելոց՝ և ծերոց , որք
ըստ օրինաց աշխարհի քաղաքավար-
եալք , և որք գերաշխարհիկ են
վարուք , ողջոյն սիրոյ և խաղաղու-
թեան հասցէ յԱստուածընկալ և
փրկական սրբոյ նշանէս , 'ի հրեղէն
լեզուաց հոգւոյն ընդունողաց ա-
ռաքելական նշխարացս , և 'ի սուրբ
Լուսաւորչին մերոյ աջէս և յա-
թոռոյս :

Որոց առաջի պաղատիմք յաղա-
չանս որ առ Աստուած , յաղագս

ոգւոց ձերոց փրկութեան, բանալ զականջս մտաց ձերոց՝ յունկընդրութիւն աստուածայնոց բանիցս այսոցիկ, զոր հանդերձեալ եմք 'ի պատուիրանաց Աստուծոյ գնել առաջի ձեր: Որպէս զի առաջնորդեալք մեօք 'ի շաւիղս արդարութեան, արժանի եղիցի ուրաքանչիւր ոք 'ի ձէնջ՝ միոյ օթևանաց տան հօրն երկնաւորի լինել ժառանգաւոր: Հայցեմ և ես յամենեցունց աղօթս առնել և վասն մեր, բարւոք տալ Աստուծոյ զհամար տնտեսութեանն որ վասն ձեր, յորժամ կոչեալ պահանջիցէ 'ի մէնջ:

Գիտութիւն լիցի ամենեցուն ձեզ, զի հայրն մեր հոգևոր և եղբայրն ըստ մարմնոյ, սրբազան կաթուղիկոսն Գրիգորիոս՝ աթոռակալն և արեանառուն մեծի Լուսաւորչին հայաստանեայց, և համանման նմին մաքրութեամբ անձին և իմաստութեամբ; այն՝ որ բարւոք հովուեաց երկայն ժամանակս զհօտդ բանաւոր, զոր ետ ցնա Քրիստոս ըստ Պետրոսի՝ Թէ, Արա-

ծեա զոչխարս իմ , որոյ հասեալ 'ի կատարումն հասակի բառնահապետացն կարգի, նախ քան զմախձաննն ազգումն եղեալ նմա 'ի հոգւոյն, կոչեաց զեպիսկոպոսունս և զվարդապետս և զհարս սրբոյ եկեղեցին, և զորս 'ի յայլ կողմանց: Եւ Թէպէտ և մեք 'ի բազում անգամ կոչմանէ նորին յայսոսիկ՝ հրաժարեաք յառաջին ժամանակսն, անարժան զանձն վարկանելով, սակայն յայժմուս ակամայ բռնադատելով զմեզ՝ ինքն և ժողովք եպիսկոպոսացն ; ձեռնադրեաց զմերս անարժանութիւն յաթոռ կաթուղիկոսութեան ազգի Հայկայ և տան Թորգոմայ:

Եւ խորև կատարեաց զգործ հրամանին՝ որ ազդեցաւ նմա 'ի վերուստ, յետ երից ամսոց փոխեցաւ իբր կոչմամբ առ Քրիստոս, դասաւորելով ընդ հարսն՝ հայրապետացն. ընդ առաքելսն՝ երկոտասանիցն լրումն. ընդ հալածեալսն վասն արդարութեան՝ համբերողն 'ի հալածանս, և 'ի զանազան փոր-

ձուլթիւնս 'ի հակառակացն ճշմար-
տութեան . ընդ փառաւորեալն՝
պատուեալն յԱստուծոյ և 'ի մարգ-
կանէ 'ի կեանս : Որոյ և մահն պա-
տուական եղև առաջի տեառն ըստ
գերազանցից սրբոյն, զորոց ասէ
մարգարէն : Ինքն Նաւու հաւա-
տոյ ընդ ծով աշխարհիս՝ հողմով
հոգւոյն ուղղակի նաւապետեալ
ճշմարտութեամբ և առաքինու-
թեամբ, եհաս անվնաս յանքոյթ
և յառանց ալեաց Նաւահանգիստն.
և զմեզ եթող 'ի տաժանելի և
յաղձաւոր կեանս, 'ի մէջ օձից
և կարճաց, և զանազան խածանող
գազանաց՝ երևելեաց և աներևու-
թից . և ոչ այս միայն, այլ և ծանրու-
թեան բեռանց 'ի ներքոյ՝ հոգևո-
րաց և մարմնաւորաց : Յորոց կրից
թեթևացեալ ինքն թռեաւ յիմա-
նալեացն կայանս . մերումս ակար
և անզօր յանձն արարեալ բառնալ
թիկանց՝ զծանրութիւն հոգւոց ա-
մենայն եկեղեցեաց :

Եւ իմ յայսմիկ եղեալ զար-
հուրիմ սարսեալ, զահ և զերկիւղ

դատաստանին Աստուծոյ զմտաւ-
ածելով, որ վասն հովուաց և ա-
ռաջնորդաց 'ի հին և 'ի նոր կտա-
կարանս ասացեալ։ Մինչ զի ոչ տալ
քուն աչաց կամ նինջ արտևանաց,
յերկիւղէ այսոցիկ չարչարեալ ոգ-
ւոյ իմոյ։ Քանզի 'ի բազում և 'ի
զանազանս անուանին անուանս և
իրս մի գործ տեսչութեանս ոգ-
ւոց, որ կոչի կաթուղիկոսութիւն
և Հայրապետութիւն, եպիսկոպո-
սութիւն և քահանայութիւն. և մի
քանզմի տուաւեալ և նուաճեալ։
Քանզի որ մեծն է 'ի սոսա, ծան-
րագունի բեռանց է 'ի ներքոյ,
որպէս պարունակօղ զամենայն։
Սակայն ըստ գործոյն՝ օրինադրու-
թիւնքն մի և նոյն են իւրաքան-
չիւրոցն, քահանայութեանն և քա-
հանայապետութեանն։ Քանզի
վերակոչին ծնօղ, դայեակ, վար-
դապետ, բժիշկ, դէտ, հովիւ, ա-
ռաջնորդ, միջնորդ, դատաւոր, և
այլ ևս յոլովագոյն անուանս, որովք
խորհուրդք աստուածապաշտու-
թեանն կատարի, և օրէնք եկեղեց-

ւոյ Քրիստոսի ամբողջ մնան ։

Եւ արդ զխո՛րդ տամ եղբարց 'ի մօրէ՝ կարիցէ լինել ոք ծնօղ կամ դայեակ ըստ Պաւղոսի, զի ասէ, Որդեակք իմ, զորս երկնեմ վերստին՝ մինչև նկարեսցի Քրիստոս 'ի ձեզ. և դարձեալ, Որպէս դայեակ մի, որ սնուցանիցէ մանկունս, այնպէս գթայաք 'ի ձեզ. Զի ծնեալքն բնութեամբ սիրեն զծնօղսն. և սնեալքն զդայեակսն։ Իսկ առ որս փոխանակ սիրոյ՝ ատելութիւն և օտարութիւն, զի՞նչ յոյս գոյ և ծնանելոյ զայնպիսիսն վերստին աստուածեղէն բանիւն յապաշխարութիւն, կամ սնուցանելոյ հայրօրէն՝ ուսմամբ և երկեղիւ տեառն զնոսա ։

Ո՞րպէս հնար է լինել վարդապետ և ուսուցիչ, և քարոզ ելանել՝ ըստ հրամանին Աստուծոյ՝ 'ի վերայ բարձու լերին Սիովնի, որ է եկեղեցի սուրբ, և բարձրացուցանել զբարբառ աւետարանին. և և ոչ երկնչել. կամ ըստ Պաւղոսի որ առ Տիմոթէոս՝ քարոզել զբանն

'ի ժամու և 'ի տարաժամու, յան-
դիմանել, սաստել և մխիթարել,
ուր աշակերտեալքն ցրուեալք են
և ոչ ժողովեալք 'ի վարժարանի.
և ոչ սիրողք վարժից ճշմարիտ իմաս-
տութեանն, այլ սնոտութեան և նան-
րութեան. և առ չարութիւնն կա-
տարեալք, և 'ի բարեաց օտարա-
ցեալք:

Զիարդ բժշկական գործոյն կա-
րեմք քննել նմանօղ առ հիւանդա-
ցեալ որդին 'ի խայթմանէ կամա-
կոր մեղսալին, 'ի բնաւորականաց
կամ յանկրնականացն ախտից բժշ-
կել ջանալով, ուր ախտացեալքն
ոչ միայն ոչ են 'ի խնդիր առողջա-
բար արուեստի հոգևոր բժշկաց,
այլ և դժկամակ լինին յարբաւմն
դեղոցն օգտակարութեան, եթէ
ոք մատուցանէ նոցա յանդիմանու-
թիւն, կամ խրատ, ըստ սաստմանքաս-
ցաւացն նմանութեան, որոց դառն
մաղձիւք ապականեալք իցեն: Եւ
ոչ այս միայն, այլ և ընդդիմաբանեն
ևս նոցին՝ թէ բժիշկ, նախ զանձն քո
բժշկեա յայդպիսի ցաւոց, և ապա

առ իս մատուցես յանդիմանող քո բանիւ ։

Կամ զիա՞րդ այնքան հեռացելոց 'ի մէնջ տեղեաւ և սիրով հնար է լինել դէտ, ըստ հրամանին Առաքելոյ՝ որ առ Եզեկիէլ, եթէ Որդի մարդոյ, դէտ կացուցի զքեզ տանն Իսրայէլի, զի եթէ ոչ աղաղակաւ ազդ արասցես նոցա զդարանակալութիւն և զասպատակ թշնամւոյն, և նոքա սպանցին կամ գերեսցին, զարիւն նոցա 'ի ձեռաց քոց խնդրեցից ։ Մի միայն ունիմք մխիթարութիւն յայսմիկ զմիւս բանն զոր ասէ Աստուած առ սոյն մարգարէ, զի թէ զձայն բարբառոյ քո լուիցեն, անզգոյշ եղեալ կորիցեն, դու զանձն քո ապրեցուցեր, ասէ, և արեան իւրեանց ինքեանք լինին պարտականք ։

Զիա՞րդ հնար է մեզ և զհովուութեանն օրէն լնուլ, 'ի վայրի դալարուոջ աստուածային օրինացն հանգուցանել, և կենդանարար ջրով հոգւոյն խնամութեամբ սնուցանել, զգայլսն հալածել, և

ղջերաւորան բժշկել, 'ի բացեայ լի-նելով հովուին և հօտից յոյժ հե-ռաւորութեամբ 'ի միմեանց:

Զիա՞րդ կարելի է մեզ լինել ա-ռաջնորդ այնպիսեաց, որք ոչ գիտեն հետոց առաջնորդին յօժարին ընդ-արքունականն ընթանալ ճանա-պարհ, որ տանի յերկինս. այլ ընդ-լայն և արձակ պողոտայն, որ հա-սուցանէ յատակս դժոխոց:

Ո՞րպէս կարասցուք լինել միջ-նորդ 'ի մէջ Աստուծոյ և մարդկան այնոցիկ, որք ոչ կամիցին պահել զպատուիրանս ուխտին, զոր եդին ընդ Աստուծոյ մկրտութեամբն, հրա-ժարել 'ի սատանայէ, և յամենայն գործոց նորա, և 'ի պատրանաց նորա. այլ ուխտազանց եղեալ ուխ-տին, զոր եդին հոգւոյն սրբոյն յաւուրն մկրտութեան, զկնի չա-րին ընթանան յօժարական կամօք բանիւք և գործովք:

Զիա՞րդ կարիցեմք և զքահանա-յապետական դատաւորութիւնն 'ի գործ արկանել առ ազգ այնպի-սի, որք ոչ միայն դատաստանի Ա-

տուածային օրինացն ոչ 'ի ներքոյ անկեալ հնազանդին, այլ և դատաւորաց եկեղեցւոյ նորին դատաւորք անխրատութեան, և ինքեանք գերանալից աչօք եղեալք՝ դատին միշտ չարաչար բամբասանօք և անդուռն բերանով զչիրս յանցանաց վարուց նոցա:

Եւ արդ վասն զի այսպիսիկ այսպէս, զարհուրիմ և դողամ յերկեղէ դատաստանացն Աստուծոյ. մի՛ դուցէ այս գործ տնտեսութեան՝ յանձն եղեալ ինձ յԱստուծոյ, փոխանակ փառաց՝ անարգութեան լիցի պատճառ, և փոխանակ անթառամ պսակացն՝ ըստ խոստմանն՝ ամօթ երեսաց: Եւ փոխանակ լսելոյ, թէ ծառայ բարի և հաւատարիմ, որպէս և ծառայքն որ յարդեցին զտուեալ տաղանդսն և շահաբերք եղեն տեառնն, զահագինն լսել և զսարսափելին հրամանն՝ ընդ ոչ շահեցելոյ ծառային, թէ ծառայ չար և վատ, պարտ էր քեզ զարծաթ բանի իմոյ արկանել 'ի սեղանաւորս, որ են ոգիք մարդ-

կան, և ես եկեալ՝ տոկոսեօք պա-
հանջէի զնմն. այս ինքն՝ ընդ բա-
նին որ 'ի քէն լուեին, և զգործոյն
կատարումն 'ի լսողացն: Եւ զի դու
ո՛չ ետուր քոց ծառայակցացն զկե-
րակուրն հոգւոյ, յորժամ ժա-
մանակ էր լսելոյ, վասն այդորիկ
ասեմ. առէք 'ի դմանէ զարծաթ
շնորհաց իմոց, և տուք այնմ որ կա-
տարելապէս աճեցոյց զքանն իմ, ըստ
կատարեալ Թուոյ տասն քանքա-
րացն. և զծառայդ՝ անպիտան ե-
ղեալ 'ի գործ պաշտաման իմոյ,
յորում եդի, հանէք 'ի խաւարն
արտաքին:

Եւ Թէ զի՞նչ արարից զի ապրես-
ցի անձն իմ յահագնալուր սպառ-
նալեաց տատի, տարակուսելի է
ինձ: Քանզի շրջել առ ամենեսեան
ընդ ամենայն կողմանս աշխար-
հի, և քարոզել զբանն Աստուծոյ՝
ըստ նմանութեան առաքելոցն սրբ-
ոց, անկարելի է՝ յաղագս ժամա-
նակիս չարութեան և բազմիշխա-
նութեան: Եւ քաղաք Թագաւո-
րական և բազմամբոխ ոչ գոյ աղքէ

մերում, որպէս զի անդամնօք նստե֊
լով յաթոռ հայրապետութեան
և վարդապետութեան, ուսուցա֊
նէաք ժողովրդեան մերոյ զաստուա֊
ծային պատուիրանս, ըստ առա֊
ջին հայրապետացն և վարդապե֊
տացն։ Այլ եմք իբրև զայծեամն
յորսորդաց և 'ի շանց փախուցեալք
'ի քարանձաւս յայս բնակելով․
յորում ոչ և մարմնական հարկա֊
ւոր պիտոյիւք շատացեալք 'ի գե֊
ղից կամ յագարակաց․ յորոց ու֊
նիմք և ոչ մի։ Նա և ոչ անդաստան
հողոյ, զի վաստակօք և աշխատու֊
թեամբ զպէտս մեր լնուաք, և ոչ
օգնութիւն ուստէք՝ որպէս արժան
էր՝ 'ի թագաւորաց և յիշխանաց 'ի
Քրիստոս հաւատացելոց։ Այլ
միայն 'ի տեառնէ Աստուծոյ՝ ըստ
մարգարէին խրատու, զի ասէ․
Ընկեա 'ի Տէր զհոգս քո, և Նա
կերակրէ զքեզ։ Եւ դարձեալ․
Ո՛ յուսացաւ 'ի Տէր և յամօթ եղև։

Եւ զի այսորքիկ այսպէս, և սպառ֊
նալիք զատաստանին անններելիք 'ի
վերայ պղերգացն հովուաց և հեղ֊

գացելոց , որք ոչ արածեն զբանաւոր հօտս Քրիստոսի յաստուածեղէն Նորա վարդապետութիւնս , և ոչ արբուցանեն զջուրն կենդանի իմաստութեանն Աստուծոյ , և զի իմս տարտամութեան անկաւ այս վիճակ հոգևոր տնտեսութեան , յորում ոչ է արթնութիւն ոգւոյ , և ոչ զօրութիւն մարմնոյ , և ոչ պատահումն բարւոյ ժամանակի՝ ըստ վերագրելոցդ , վասն որոյ անգիտանամ եթէ զի՞նչ գործեցից ։ Թողուլ լքանել զհօտս հովուապետին 'ի խնամոց հովութեան , և ըզգառինան 'ի գայլոցն տեսանելով յափշտակեալս , և անտես առնել , անհաւատութեան է նշանակ ․ մանաւանդ գիտողի զկամս Աստուծոյ՝ և ոչ առնողի ։ Քանզի թէ առ տգիտութեան որք գործէ զանպատշաճն՝ ըմպէ գան , բայց սակաւ , ըստ տէրունական հրամանին ․ իսկ գիտութեամբն՝ բազում և սաստկագոյնս ։ Թէպէտ և այժմուս ոչ որք է տգէտ յընտրողութիւն բարւոյն և չարի ․ թէ և կամաւ որք տգի-

տանեալ ։ Իսկ փութալ 'ի խրատել և յուսուցանել՝ ըստ աստիճանիս գործոյ հարկաւորութեան, և մինչ ձմլել լեզուաւ զկաթն բանին Աստուծոյ 'ի բերանս հոգւոց ողջացելոց 'ի Քրիստոս, ահա յանհնարին է ըստ վերագրելոցդ՝ այսմ ժամանակի և տեղւոյ անձամբ մերով զայս առնել ։ Սակայն զի մի ամենևին անպտուղք եղիցուք առ ձեզ, հաստատեալ ժողովուրդ մեզ 'ի հոգւոյն Աստուծոյ, արդարապէս դատեցաք մեք և որ ընդ մեզ եպիսկոպոսունք և վարդապետք, յիշեցուցանել ձեզ գրով զպատուիրեալսն յԱստուծոյ 'ի հին և 'ի Նոր կտակարանս ։ Նմանելով յայսմիկ մեծի առաքելոյն Պաւղոսի, որ ոչ միայն շրջելով 'ի տար աշխարհ քարոզէր զաւետարանն, որպէս և ինքն իսկ ասէր, յԵրուսաղեմէ մինչև 'ի Լիւրիկեա, այլ և 'ի կապանս գոլով Թղթովք հաստատէր զաշակերտեալսն․ որպէս և յայտ առնէ գրելովն, Աղաչեմ զձեզ ես որ կապեալս եմ 'ի տէր,

արժանի գնալ կոչմանն՝ յոր կոչեցարուք ։

Ընդ նմին և մեք խրատ 'ի կամաւոր բանտէ և կապանաց, յայսմ տօթագին քարանձաւի արգելեալքս, գրով ձեռին մերոյ խօսիմք որպէս բերանով ընդ ամենեսին, որ ունիցին ականջս լսելոյ ։ Ոչ զմեր ինչ բան, այլ զառաքելոցն և զմարգարէիցն և զվարդապետաց եկեղեցւոյ, երկրորդելով զբանից նոցա զօրութիւն 'ի լսելիս ձեր ։ Զորս եթէ լուեալ յօժարութեամբ 'ի միտ առնուցուք, որպէս բարի երկիր և պարարտ, զսերմանեալսն յինքեան, և գործով պտղաբերեսջիք Աստուծոյ, անձանց ձերոց փրկութեան, և մեզ վարձուց լինիցիք պատճառ ։ Ապա թէ ոք ոչ լուիցէ մտադիւրութեամբ, այլ արհամարհիցէ որպէս զապստամբ յԱստուծոյ, և կամ թէ լուեալ և ոչ պտղաբերեսցէ գործով զարդարութիւն, այլ անզեղջ հոգւով և ապառումն սրտիւ կայ անյուսութեամբ 'ի մեղս անդարձ մինչև 'ի վախճան, մեք ան-

պարտ եմք յարենէ Նորա առաջի Քրիստոսի, վկայութեամբն Աստուծոյ, և հրեշտակաց Նորա, և ձեր լողացդ ամենեցուն ։ Քանզի ոչ խորշեցաք կամ արգելաք՝ի պատմելոյ Նմա զբանն Աստուծոյ ։

Եւ արդ որպէս՝ի մասունս մարմնոյ քան զամենայն պատուականագոյն և առաջին գլուխն է, յազգս տեղւոյն բարձրութեան և զգայարանացն՝ի Նմա եղելոց, և ապա այլքն յանգամոցն մի ըստ միոջէ, այսպէս և յանդամս հոգւոյն՝ մեծ և առաջին իբրև զգլուխ՝ է հաւատոյն ճշմարտութիւն, և ընդ Նմին յարմարեալք՝ որպէս անձն ընդ գլխոյ՝ գործք արդարութեան մեծամեծք և փոքունք, ըստ պատուիրանացն Քրիստոսի ։ Վասն այսորիկ և մեք Նախ և առաջին՝ գլխոյն ամենայն բարութեանց՝ զհաւատոյն բուռն հարկանելով դիցուք առաջի լողացդ ։ Ոչ Նորոգ ինչ գրելով, այլ՝ի վերայ հիման առաքելոց և մարգարէից և հարց սրբոց շինելով համառօտ բանիւ ։ Զի մի՛

յանուսումն տգիտաց լսելով բանն՝ որ ոչ ըստ ուղղափառ եկեղեցւոյ դաւանութեան, այլ արտաքոյ Աստուածաշունչ գրոց բարբառին 'ի կործանումն լսողաց, մոլորիցի ոք 'ի ճշմարտութենէն. այլ զի գիտիցէք թէ յո՛վ արդեօք հաւատացէք 'ի մկրտութեանն աւուր, ըստ Պաւղոսի՝ զի ասէ, Գիտեմ յո՛ հաւատացեալն եմ. և կամ թէ որպէս արժան է ունել ուղղափառ քրիստոնէին զդաւանութիւն հաւատոյն, յորում և սկսանիմք պարզ և յայտնի բանիւ ցուցանել զհաւատոյ ճշմարտութիւն:

Պարտ և արժան է Քրիստոսի երկրպագուացն յանուն սուրբ երրորդութեան. մկրտելոց, խոստովանել համագոյ զերիս անձնաւորութիւն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. մի բնութիւն և մի Աստուածութիւն և մի իշխանութիւն համապատիւ և զուգափառ: Ո'չ յումեքէ եղեալ, և ոչ յետոյ սկսեալ, և ոչ 'ի խոնարհութենէ 'ի բարձրութիւն ամբարձեալ. կամ 'ի տկա-

րութենէ 'ի զօրութիւն փոփոխեալ. այլ յառաջ քան զամենայն յաւիտեանս էր, և այժմուս է, և յանփոփոխման յաւիտեանսն եղիցի: Անեղ և անմահ էութիւն, աներևոյթ 'ի բնութենէ, և երևելի վասն արարածոցս, տեսօղ ամենայնի և անտես յամենայնէ:

Հայր անսկիզբն և անծին. Որդի ծնեալ 'ի բնութենէ Հօր, այլ անժամանակ. ոչ ըստ մարդկան ծննդեանն ախտաւոր և հոսանուտ, զոր և զմտաւ ածելն է հայհոյութիւն, թող թէ բարբառել բանիւ. այլ որպէս լոյս 'ի լուսոյ, և հուր 'ի հրոյ, զի ոչ են օտարք 'ի բաժանելն, այլ մի ճառագայթ և մի ջերմութիւն հրոյն և լուսոյն, ծնելոյն և յորմէ ծնաւն, և մի է բնութիւն երկաքանչիւրոցն, թէպէտ և բաժանին 'ի միմեանց անձամբ: Նոյնպէս և լոյս Որդի 'ի լոյս Հօրէ, և հուր ա̃ծութեանն Որդւոյ 'ի հրոյ աստուածութեանն Հօր յառաջ եկեալ ծննդեամբ` ոչ են այլ և այլ, այլ մի և նոյն բնութեամբ:

Իսկ օրհնակ անօրհնակ ծննդեանն Որդւոյ ոչ այլ ինչ է, բայց որ 'ի մեզ մտացս ծնունդ զԲան, Թէպէտ և ոչ ամենայնիւ համեմատի ճշմարտութեանն օրհնակս: Վասն որոյ և Բան ասի՝ յաղագս անապական գոլով ծննդեանն. իսկ Որդի՝ զի 'ի Հօր բնութենէ, և ոչ օտար'ի նմանէ. կամ արարած՝ ըստ հայհոյութեան Արիոսի: Եւ հնար իմանալոյ զանիմանալին ոչ այլ ինչ է, բայց հաւատալ ասացելոցն 'ի գիրս սուրբս, և ոչ ընդ քննութեամբ արկանել զանքննելին, որք անհաս մտաց ասացին զաստուածային ծնունդն և անճառ բանից:

Նոյնպէս և Հոգւոյն սուրբ բղխումըն ասի առ 'ի Հօրէ, և փառաւկից Որդւոյ, Աստուած կատարեալ որպէս զՀայր և զՈրդի: Մի կամք երից անձնաւորութեան, և մի զօրութիւն, և մի արարչութիւն: Հայր կամեցաւ ստեղծանել զերեւելի և զաներևոյթ արարածս, և Որդի գործացոյց յանգոյից, և Հոգին սուրբ՝ զարդարեաց իմաստու֊

Թեամբ: Եւ նոյն ինքն Բանն Աս-
տուծոյ որ արար զմարդն 'ի պատ-
կեր իւր, և երևեցաւ նմա յետ յան-
ցաւորութեանն, և ամենայն ար-
դարոցն առաջնոց՝ Նոյի և Աբրա-
համու և Իսահակայ և Յակոբայ
և Յոբայ, Մովսիսի և Ահարոնի,
և Յեսուայ և այլոց մարգարէիցն,
և խոստացաւ ընդ նոսա .'ի ժամանակս
վերջինս աւետեօք հրեշտակապե-
տին Գաբրիէլի էջ յորովայն կուսին
Մարիամու, և առեալ 'ի բնութենէ
նորա մարմին և հոգի և միտս, և
խառնեաց նոր և անճառելի միա-
ւորութեամբ ընդ աստուածու-
թեան իւրում, և զարգացեալ յո-
րովայնին ինն ամսեայ ժամանա-
կաւ որպէս մանուկ, ծնաւ Աս-
տուած և մարդ կատարեալ· անշը-
փոթ էութեամբ, և անբաժանելի
միաւորութեամբ, մի Քրիստոս, և
մի անձնաւորութիւն նորա յեր-
կուց բնութեանց միացելոց: Կաթ-
նասուն եղև որպէս զմարդ, և 'ի
հրեշտակաց փառաւորեցաւ որ-
պէս զԱստուած: Շրջեցաւ յաշ-

խարհի կատարիչն ամենայնի զատեօ
երեւումն, մինչեւ 'ի կատարումն հա-
ւատքի մարդկութեանն . Միաւորեցաւ
'ի ծառայէն որպէս զմարդ, եւ վկայ-
եցաւ 'ի Հօրէ եւ 'ի Հոգւոյն որպէս
զորդի բարձրելոյն : Փորձեցաւ 'ի
սատանայէ որպէս զմարդ, եւ յաղ-
թեաց փորձողին որպէս զԱս-
տուած : Քաղցեաւ եւ ծարաւեցաւ եւ
ննջեաց եւ արտասուեաց եւ վաստա-
կեցաւ որպէս մտեալ ընդ օրինօք
մարմնոյ, եւ կատարեաց պահանջելիս
եւ նշանս, եւ եցոյց զօրութիւնս աս-
տուածայինս որպէս զԱստուած
կատարեալ : Եկն կամաւորաբար 'ի
չարչարանս, եւ չարչարեցաւ անչար-
չարելին չարչարելի բնութեամբս
'ի վերայ խաչին . մեռաւ անպար-
տականն մահու մահկանացու մար-
մնովն, վասն կենդանացուցանելոյ
զմեռեալ մեղօք բնութիւնս . էջ 'ի
գերեզմանն, եւ արար աւարումն կր-
կին դժոխոց : Մարդկային հոգւովն
միացելովն ընդ Աստուածութեանն
հոգւոցն որ 'ի դժոխս՝ շնորհելով
ազատութիւն, իսկ Աստուածայինն

մարմնոյն յարութեամբն տալով յոյս յարութեան մահկանացու բնութեանս յապականութենէ մահու. յարեաւ 'ի մեռելոց իշխանաւոր յաւուր երրորդի, և երևեցաւ. աշակերտաց իւրոց երկոտասանիցն և եօթանասնիցն և հինգհարիւրոցն և այլոց բազմաց, որք եղեն նորա վկայք և քարոզք ընդ տիեզերս. և յաւուրս քառասուն երևեալ նոցա և խօսէր ընդ նոսա: Եւ 'ի լրումն քառասնեկի աւուրցն վերացաւ յերկինս, և նստաւ ընդ աջմէ Հօր 'ի բարձունս մերով՝ բնութեամբս, յորմէ անբաժանելի էր աստուածութեամբն. և գալոց է նովին մարմնովն՝ փառօք աստուածութեան իւրոյ և Հօր, յարուցանել զմեռեալս և դատել զաշխարհս արդարութեամբ. բարեգործացն զբարեացն տալով ժառանգութիւն, և զանվախճան թագաւորութիւն. իսկ գործողացն չարեաց՝ զամօթն յաւիտենից և ըզտանջանս ըստ իւրաքանչիւր գործոցն:

Եւ արդ՝ այս դաւանութիւն ճըշ-
մարիտ հաւատոյ հիմն է աստուա-
ծայնոյ տաճարին՝ որ 'ի մեզ: Իսկ
գործք բարեացն՝ շինուածն է 'ի վե-
րայ այսր հիման, որպէս ասէրն զդա-
ւանութիւնն Պետրոսի եդ. որպէս
զվէմ՝ հիմն իմանալի եկեղեցւոյ
իւրում. և զինքն որպէս զշինող, և
զընտրելոց իւրոց բարեգործու-
թիւնս, որ յամենայն ազգաց, իբրև
զնիւթ շինուածոց՝ փոխանակ քարի
և փայտի և այլոց պիտոյից:

Դարձեալ՝ է նա որպէս զճար-
տարապետ, և մեք իբրև զմշակս
հրամանակատարս, ըստ որում ա-
սաց աշակերտացն, եթէ առանց
իմ ոչ ինչ կարէք առնել: Գրէ և
Պաւղոս, եթէ ես զիմաստութիւնն
Աստուծոյ հիմն եդի՝ որ է Քրիս-
տոս, և որ 'ի նա հաւատոն ճշմար-
տութեան. բայց ա՛յլ է որ շինէ,
այս ինքն, որ էն, և որ գալոց էն
յաշխարհ: Եւ շինելի գործովք,
զոր կամի իւրաքանչիւր ոք, եթէ
բարի և եթէ չար: Եթէ ոք շինէ,
ասէ, 'ի վերայ հիմանս այսորիկ

ոսկի՝ որ է արդարութիւն և ճշմար_
տութիւն . արծաթ՝ որ է մաքրու_
թիւն մտաց և սրբութիւն սրտի . ա_
կունս պատուականս՝ որ են մասունք
բազմապատիկ առաքինութեանց ,
սէր, խոնարհութիւն, ողորմութիւն,
անոխակալութիւն , պահք , աղօթք,
ժուժկալութիւն ։ Այսոքիկ և որ
նման սոցա՝ են պատուական ա_
կունքն շինեալք յարդարոց ան_
ձանց , 'ի վերայ հիման հաւատոյն ։
Իսկ մեղաւորացն անձինք ոչ 'ի
պատուական և 'ի հաստատուն նիւ_
թոց յայսցանէ , ասէ , շինեն զշի_
նուածս իւրեանց 'ի վերայ հաւա_
տոյն հիման , այլ յանարգաց և 'ի
դիւրավառնելեաց , այս ինքն՝ փայտ
խոտ , եղէգն ։ Փայտն՝ զթանձրա_
գունից մեղաց ունելով զտեսակ ,
զպղծութեան , զպոռնկութեան ,
զգողութեան , զյափշտակութեան ,
և որ նման սոցա . խոտն՝ զխորհրդ_
դոցն չարութիւն՝ ժողովեալս 'ի
սրտի . եղէգն՝ զբանիցն դատարկու_
թիւնս նշանակէ , զորս բղխեն մար_
դիկ 'ի բերանոց՝ զեղծուած գործա_

րան տուեալ սատանայի, Թշնամանելով և անարգելով զընկերս զանազան և պէսպէս հայհոյութեամբ, որ ըստ գեղջկացն բարբառոյ՝ Իշոցք անուանի, և ըստ գրոց սովորութեան՝ անէծք և թշնամանք և որ այսպիսի են անուանք։ Զորոց և Դաւիթ ասէ, Թէ Անիծիւք և դառնութեամբ լի են բերանք նոցա։ Նա և ստութիւնն և չարախօսութիւնն և մատնութիւնն և այլք, որ յայս յարին բանք անիրաւութեան, յեղեգան են օրինակի։

Եւ զայսոցիկ զերկուց հակառակ շինուածոց նիւթս, որ 'ի պատուականաց և յանարգաց՝ հուրն, ասէ, ընտրեսցէ. քանզի հրով յայտնելոց է դատաւորն ։ Եթէ գործն, զոր շինեաց 'ի վերայ հաստատոյն հիմանն, ոսկի է և արծաթ և ականս պատուականս, որք ոչ ապականին՝ այլ և սրբին 'ի հրոյն, գործողն կեցցէ և վարձս առցէ ։ Իսկ եթէ խոտ է և եղէգն և փայտ, որ դիւրաւ ապականին 'ի հրոյ անտի, որ գործեացն զայն՝ տուժեսցի։ Վասն

գէ, զոր օրինակ տաղարանք հիմնակէն միայն չեն բաւական լինել 'ի բնակութիւն մարդկան, այլ պէտս ունին որմոց և ձեղուանց և այլոց շինուածոցն, նոյնպէս և հաւատովն միայն՝ առանց գործոց ոչ ոք կարէ զանձն իւր շինել տաճար Աստուծոյ։ Եւ որպէս գլուխ՝ առանց անձին յարմարութեան ոչ կարէ կցել կենդանութիւն, և ոչ անձն առանց գլխոյ, նոյնպէս և հաւատ առանց գործոց, և գործք առանց հաւատոյ մեռեալ են երկոքին ըստ առաքելոյ։

Վասն որոյ՝ աղաչեմ զձեզ զամենեսեան, զի ընդ հաւատոցդ ճշմարտութեան, զոր ընկալայք 'ի ծնընդենէ աւազանին, և ունիք հաստատութեամբ, յարմարիցէք և զգործըս արդարութեան. զի մի միով աչօք միայն լուսաւորիցէք զանձինս, այլ և երկոքումբք պայծառանայցէք։ Եւ մի վստահանայք 'ի մեռեալ յոյս անմտաց, որք ասեն, թէ բաւական է հաւատոյն միայն ճըշմարտութիւն քրիստոնէին՝ փրկել

'ի տանջանաց, և արժանաւորել արքայութեանն: Զի զոր օրինակ մեռեալ անգամ չէ ինչ պիտանացու 'ի գործ մարմնոյն, նոյնպէս և մեռեալ հաւատ ոչ տայ զօրութիւն հոգւոյն, այլ մանաւանդ առաւելագոյն տանջանաց պարտական կացուցանէ զանձն իւր. որպէս այն որ զմի տաղանդն պահեաց, և ոչ շահեցաւ նմանն ընկերացն: Զի տաղանդն՝ հաւատն է, և շահ տաղանդացն՝ գործքն: Եւ թէ վասն էր ասի հաւատ մեռեալ առանց գործոց, յայտնի արասցուք որոց ոչ գիտեն:

Հաւատոյն անուն մի է, բայց կրկին ունի զօրութիւն: Առաջին՝ դաւանութեան հաւատն, որ է խոստովանութիւն 'ի սուրբ երրորդութիւնն՝ զոր ընկալաւ իւրաքանչիւր ոք յաւազանէն: Երկրորդ՝ հաւատ այն է, որ զգանս՝ զոր հոգին սուրբ խոստացեալ է բերանով մարգարէիցն և առաքելոցն և եկեղեցւոյ վարդապետօք՝ զոր 'ի գիրս սուրբս գրեցին, չհամարի առաս-

պետս և սուտ. այլ հաւատայ՝ թէ ճշմարիտ են և ուղիղ այնպէս՝ որպէս թէ աչօք իւրովք տեսանէ զամենայն զեղեալսն, և զլինելոցն, և զոր ենն: Եղեալն այն է՝ զոր պատմեն, թէ ամենայն երևելի և աներևոյթ բնութիւն ոչ էին, և յԱստուծոյ հրամանէն ստեղծեալ եղեն. և որ ինչ յետ լինելութեան արարածոց սքանչելիք և զօրութիւնք եղեալք յԱստուծոյ պատմին 'ի գիրս 'ի Հնումն և 'ի Նորումն: Եւ լինելոցն այն է՝ զոր ասեն, բարեգործացն բարի հատուցումն լինել յԱստուծոյ, և չարագործացն տանջանք և հուր յաւիտենական: Եւ. որ ենն այն է, զոր քարոզեն յամենայն բանս իւրեանց, թէ Աստուած մերձաւոր է առ ամենեսեան և ոչ հեռաւոր. և զոր խորհին մարդիկ 'ի միտս իւրեանց բարի կամ չար՝ իմանայ զամենայն, և զոր խօսին բանս լեզուաւ՝ լսէ անսխալ, և զոր գործեն մարմնով՝ 'ի ծածուկ՝ տեսանէ յայտնապէս, զի չիք արարած աներևոյթ առ 'ի նմանէ:

Այդ՝ որ այսոցիկ 'ի բոլոր սրտէ հաւատայ՝ նա է որ ունի հաւատ կենդանի ։ Որ և ոչ երբէք յանդըրնի կամ խորհել չարութիւն 'ի սրտի, կամ խօսել անիրաւութիւն բերանով, կամ գործել զմեղս անձամբ իւրով ։ Զի թէ 'ի միոյ ուրուք մերձ լինելոյ, արգելուն մարդիկ յանարժանս գործելոյ. յորժամ հաւատայ ոք զԱստուած լինելատեսող, զի՞արդ ժպրհի կամ խօսել ինչ կամ գործել կամակար մտօք զչարութիւն ։ Իսկ որ բանիւ միայն ունի զսա 'ի յԱստուած խոստովանութիւնն, այլ ոչ գործով, այնպիսոյն հաւատն մեռեալ է ։

Եւ արդ՝ վասն զի ընդ բազում անտեսական գործոյն անուանս, որ հաւատացաւ մեզ 'ի տեառնէ 'ի ձեռն սրբոյ աթոռոյս սպասաւորութեան, է և բժշկական անուն և գործ, վասն որոյ որպէս բժիշկ ճանաչելով զհիւանդացելոյն ախտաւոր ցաւոցն զպատճառս՝ հրամայէ 'ի վնասակարացն 'ի բաց կալ, և զառողջարարն ընդունել դեղ և

կերակուր, այսպէս և մեք զընդ-
հանրական եկեղեցւոյ Քրիստոսի
հոգևոր բժշկութեան ունելով ըզ-
փորձ, տեսանեմք մերոց աչօք, թէ
և ոչ զամենեսեան՝ այլ զյոլովա-
գոյն մասն աշխարհի, որ յաղագս
մեռելոտի գործոց մեռեալ ունին
և զհաւատսն. և կամիմք որպէս
զբժիշկս ցուցանել ամենայն անձին
զմահաբեր ախտից իւրոց զպատ-
ճառսն, և զկենդանարար հոգւոց
զդեղսն։ Զոր թէ առեալ ըմպի-
ցէք առանց դժկամակ լինելոյ, և՛ի
բաց մերժեցէք յոգւոց ձերոց ըզ-
դառնութիւն մաղձիցն ապականու-
թեան խոստովանութեամբ և ապաշ-
խարութեամբ, արժանի լինիք ո-
ղորմութեանն Աստուծոյ, և առ՛ի
նմանէ խոստացելոց բարութեան-
ցըն։ Իսկ որոց ոչ թուին ախորժելի
ասացեալքս՛ի մէնջ, կամ յաղագս
ծուլութեան և մեղսասիրութեան,
կամ վասն արհամարհելոյ զմեզ.
առ այնպիսիսն զմարգարէականն
ասասցուք, թէ Որ անօրինելոցն
է անօրինեսցի, և որ արդարանալոցն

է արդարացի ։ Մեք զոր հրամայեալն է մեզ արասցուք, աղաղակելով որպէս դէտ 'ի բարձր դիտանոցէ զպատուիրանս Աստուծոյ 'ի լսելիս ձեր ։ Այսուհետև առնելն և ոչ առնելն 'ի կամս ազատութեան իւրաքանչիւր անձին է ։

Բայց մի ոք կարծիցէ զմէնջ՞ թէ իբրև առողջս զմեզ համարելով յախտից մերոց, ձեզ միայն զբժշկականս զայս մատուցանեմք դեղ որպէս հիւանդացելոց ․ այլ ծանիցէ ամենայն ոք, զի մեք առաւել քան զամենեսեան ունիմք պէտս հոգևոր բժշկութեան ։ Բայց որպէս յիմար հիւանդի է զիւրն առողջութեան դեղ՝ զոր մատուցանէ նմա ախտացելոյ ոմն բժիշկ՝ 'ի բաց մերժել, անարգելով զցաւս մարմնոյ նորա, նոյնպէս յիմարագոյն է՝ ոչ զբնութեան բժշկին ունել փոյթ, թէ առողջ է և կամ հիւանդոտ, այլ զդեղին քննել զօգտակարութիւն, եթէ առողջարար իցէ թէ վնասակար ։ Արդ և դուք մի վասն մեր անարժանութեան և 'ի հո-

դեղորայն պակասութեան զօգտա-
կար դեղս հոգւոց՝ զոր մատուցա-
նեմք ձեզ՝ արհամարհեցէք, և ոչ
ընդունեցիք յանձինս: Զորս աղա-
չեմք՝ ընկալարուք սիրով և յօժա-
րութեամբ. ոչ վասն մեր ինչ փա-
ռաց և պատուոյ, զոր ոչ պահան-
ջեմք յումեքէ, թէ և էաք արժա-
նաւոր. այլ վասն սիրոյն Քրիստոսի,
որ կոչեաց զմեզ յիւր արքայու-
թիւն և 'ի փառս: Զի թէպէտ և
մեք անարժան եմք, այլ բանս՝
վասն զի աստուածային է՝ արժա-
նաւոր է ընդունելութեան: Եւ
ընդունելութիւն ոչ այլ ինչ եղիցի,
այլ կատարումն գործոց:

Վասն որոյ աղօթեսցուք 'ի մե-
րոյ միմեանց, մեք յաղագս ձեր,
որպէս գլուխ վասն անձին մտադիւ-
րութեամբ ընդունել զսերմն աս-
տուածային բանիս 'ի սիրտս և պտղա-
բերել Աստուծոյ՝ մի յերից պտղա-
բերութեանց բարի և պատուաւոր
երկրին: Եւ դուք վասն մեր, ըստ
որում անձն վասն գլխոյ, առող-
ջանալ 'ի հոգևոր հիւանդութեանց,

և զօրանալ 'ի տկարութենէ զգայ-
ութեանցս ։ Որպէս զի թէ գերան
իցէ 'ի մեզ մերումս տեսարանի կու-
րացուցիչ, նախ 'ի բաց մերժել
զայն, զի և զայլոց շիղս տեսանել և
տրել կարող լինիցիմք ։ Բանալ և
զխցեալ ունկն՝ աստուածայնոյ
ձայնին հնչման ճանապարհ տանե-
լով. և զհոտոտելիս անմահութեան
թափեցելոյ իւղոյ անուանքն անու-
շացուցանել. և զճաշակելիս կե-
նացն հացի քաղցնուլ և ծարաւել,
և յագիլ անյագութեամբ արդա-
րութեան և իմաստութեան. և զձե-
ռս որ 'ի փառս Աստուծոյ և 'ի
շինութիւն լսողաց բանից լինել
սպասաւոր, այլ լինելով նեխելոց և
լոյս խաւարելոց՝ լսու հրամանին
տեառն, նախ անձին և ապա այլոց ։
Որով և զերկոսին զնեմք առաջին
լսողացն զանազան կերպարանօք.
պայծառացելոց ոգւով զլուսա-
փայլ բանից ճառագայթ, և մթա-
ցելոց կամ նեխելոց՝ զաղին օրինակ
'ի յանդգնաբանողական մոլորութիւնս,
որով և սկսանիմք այժմ առ որս
արժան է, նախակարգել զբանս ։

## ԱՌ ԿՐՕՆԱՒՈՐՍ ՈՐ
## Ի ՎԱՆՈՐԱՅՍ

Եւ արդ՝ առաջին ընդ գերաշխարհիկսդ վարուք և քաղաքավարութեամբ՝ խօսեսցուք առ կրօնաւորսդ, որք 'ի վանորայս և 'ի մենաստանս բնակէք։ Որ սիւնք էք աշխարհի և պարիսպ ընդդէմ թըշնամւոյն աղօթիւք ձեր և բարի վարուք. հրեշտակք 'ի մարմնի, և աստեղք լուսաւորք յերկրի, յորոց 'ի բարի և 'ի լուսաւոր վարուց փառաւորի միշտ Հայր ձեր՝ որ յերկնիս է։ Որ թէպէտ և խրատեալ էք յԱստուածաշունչ գրոց՝ միշտ 'ի սերտիս ձեր հնչելով, և չունիք ինչ կարիս մերոյս դուզնաքեայ բանից, այլ որպէս ծառայք՝ որք զհասարակականն կերակուր հրամանն առնուն 'ի տերանց բաշխել, ոչ միայն քաղցելոց՝ այլև յագեցելոցն շնորհեն, նոյնպէս և մեք՝

զի ընդհանուր ծառայակցաց մերոց հրամայեցաք 'ի տեառնէ տալ զբաժին կերակուր, հասարակաբար պարտիմք մատակարարել փարթամաց գիտութեամբ, և աղքատաց 'ի գիտութենէ. զօրաւորաց առաքինութեամբ, և տկարագունիցն յառաքինութենէ։

Վասն որոյ՝ աղաչեմ զամենեսեան, մի նուազութեամբ իւղոյ ողորմութեան և սրբութեան աղօտացուցանիցէք զլոյս հաւատոյ լապտերաց ձերոց, այլ անշիջանելի պահեցէք զճառագայթս աստուածութեանն մշտավառ առաքինութեամբ յանձինս ձեր։ Մի՛ վասն սիրոյ նեւթականիս՝ 'ի հրոյ սիրոյն Քրիստոսի զոր արկ յերկիր, և կամի զբորբոքելն վաղվաղակի, զովացուցանիցէք զոգիս։ Մի՛ տայք տեղի օտար հրոյ ցանկութեան 'ի սիրտս ձեր, և այնու խնկարկել Աստուծոյ զազօթս և զխորհուրդ աստուածայնոյ պատարագին, որպէս որդիքն Ահարոնի՝ Նաբաթ և Աբիութ. այլ նախ մաքրեսցի իւրաքանչիւր ոք

խոստովանութեամբ յանմաքուր խորհրդոց և գործոց, և պատարագ կենդանւոյ զինքն մատուցէ կենդանւոյն Աստուծոյ առաքինութեամբ, և ապա 'ի մաքուրն մերձեսցի, և սրբութեան սրբոցն սպասաւորեսցէ. զի մի ըստ նմանութեան նոցա՝ տանջողական հրոմն այրեսցի ներքին մարդն, սաստ խղճիւ մտացն, և անդ բոցովն անշիջանելեաւ:

Մի՛ լիցի ումեք 'ի ձէնջ յարձանագի մածնուլ, որպէս կինն Ղովտայ յաղագս յետս դառնալոյն յաշխարհական իրս՝ 'ի հեշտութիւնս ախտից կամ 'ի ցանկութիւնս հիւթանիւթից: Քանզի զոր օրինակ նա յետ պատուհասին ոչ եղև համեմիչ կերակրոց իբրև աղ, քանզի քար էր, և ոչ 'ի շինուած ինչ պիտանացու եղև որպէս քար, վասն զի աղ էր, ըստ այսմ՝ նմանութեան և ամենայն ոք՝ որ ելանէ յաշխարհէ որպէս Ղովտ 'ի Սոդոմայ, և բարձրանայ 'ի կարգ կրօնաւորութեան որ է հրեշտակական, որպէս նոքա

ճանապարհորդեալք ընդ հրեշտակացն 'ի լերինն, և դառնայ անդրէն 'ի սէր աշխարհիս և յախտս թաւալի մեղաց, որպէս և կինն այն զի դառնայր գլխովք 'ի Սոդոմ, ոչ Աստուծոյ է պիտանացու այնպիսին իբրև զկրօնաւոր, և ոչ աշխարհի օրինաց որպէս զաշխարհական. այլ է անարդ և անպիտան, կոխան եղեալ 'ի մարդկանէ որպէս զաղ անհամեալ։ Բայց ձեր, որ անփոփոխ էք յաստուածայինսդ, ամենայն ինչ ըստ խրատուն առաքելոյ բարեձևութեամբ և ըստ կարգի եղիցի։ Որ և դարձեալ ասէ։ Խմաստութեամբ գնասջիք առ արտաքինսն, զնոյն առեալ զժամանակս. և թէ Զվարս ձեր առաջի հեթանոսաց պարկեշտ ունիցիք։

Եւ արդ՝ մի ոք 'ի ձէնջ զվատթարս խօսելով լեզուաւ, կամ իրս ինչ անպատշաճ գործելով անձամբ առաջի արտաքնոցն՝ պատճառ լինիցի բանալոյ զանդուռն բերան նոցա 'ի հայհոյութիւն սուրբ հաւատոյս և կարգիս, որովք կոչեն

դատաստանս տալոց են այնպիսիքն առաջի Աստուծոյ. առաջինն՝ ընդ մեղանացն, զոր խօսին կամ գործեն. երկրորդ և մեծ՝ ընդ գայթակղութեան լինելոյն պատճառ: Մէ ոք զընկերակից կրօնաւորաց թողլով զկենակցութիւն առանձինն բնակիցէ, ոչ յաղագս ճգնողական վարուց որպէս միայնակեացք՝ այլ վասն ագահութեան ախտի, զի զանձինն իւրոյ աշխատութիւնն ոչ հասարակաց եկեղեցւոյն՝ այլ իւր միայնոյ ամբարիցէ. յորմէ մնասք բազում հոգւոց. և 'ի միաբանութենէն օգտութիւնք յոլովագոյնք, որպէս աստուածախօս վարդապետացն ցուցանեն բանք: Զի առ բազումս քան զերկուսն Աստուծոյ առաւել զօրէ ընկերակցացն ամօթոյ երկեւղ, յետս դարձուցանելով զյօժարութիւն մտացն 'ի չար ցանկութեանց մեղացն կատարմանէ. Եւ ևս՝ բազմապատիկք են շահիցն հոյլք 'ի միասին եղբարցըն բնակութենէ, զորս աւելորդ վարկանիմք գիտողացդ երկրորդել:

Էն ոմանք դարձեալ յաշխարհա-
ւէր և 'ի մեղկ կրօնաւորաց, որ ոչ
միայն արտաքուստ ըստ հնոյն Իսրայէլի
գառանան յեգիպտական գործս խա-
ւարինս, այլև անձամբ իսկ ընդ աշ-
խարհականս բնակեն 'ի գեւղս և 'ի
քաղաքս, և 'ի բանից բերանոյ գար-
շութիւնս, և 'ի գործս վատթարու-
թեան, և յորովայնամոլութիւնս
անպատկառս, և յարբեցութիւնս
անառակս, և յամենայն անկարգու-
թեանց բերմունս առաւելուն քան
զնոսա։ Պարտ և արժան էր, զի
թէ պատահեր կրօնաւորաց ըստ
հարկաւոր ինչ պատճառի բնակել
յաշխարհի, իբրև զգուշաւոր լի-
նել աստուածային և ուղիղ վա-
րուքն 'ի մէջ նոցա, 'ի փառաց
պատճառս անուանն Աստուծոյ՝ և
ոչ 'ի հայհոյութեան։ Զայնպի-
սիսն մանաւանդ յորդորեմք 'ի
նոյն, քան թէ արգելումք. զի օրի-
նակաւ բարեացն՝ բազումք լինին
բարիք, որպէս և 'ի նախանձու է
չարացն վարուց՝ չարք յոլովա-
գոյնք։

Արդ՝ հրամանաւն Աստուծոյ և մեր, այս եղիցի կանոնական օրէնք 'ի վերայ այնպիսեացն. փոխել այսուհետև զբնակութիւնս իւրեանց 'ի վանս, և զկարս իւրեանց՝ ըստ ձևոյն և ըստ կարգին՝ յապաշխարութիւն և 'ի պարկեշտութիւն մինչև 'ի վախճան: Իսկ եթէ ոք 'ի նոցանէ ոչ լուիցէ աստուածային օրինացս զոր գրեցաք, և ոչ ելցէ յաշխարհէ, այլ կացցէ յամառեալ մինչև 'ի մահ իւր 'ի նոյն, անպարտ եմք մեք 'ի խղճոյ կորստեան նորա. ինքն եղիցի արեան իւրոյ պարտապան առաջի Աստուծոյ:

Այլ քահանայից պատուէր տամք, զի թէ մինչ յաշխարհի իցէ այնպիսին, և վախճան մարմնոյ ընդ հոգւոյն մեռելութեան հասանէ նմա, ոչ հաղորդութեան և ոչ օրհնութեան թաղման արժանի առնել զնա, մանաւանդ զայնոսիկ՝ որ միշտ յանզղջութեան կեցցին մինչև 'ի մահ: Իսկ եթէ ոք յայնպիսեացն մերձ եղեալ 'ի մահ զղջասցի, և հայցէ արտասուօք զհաղոր-

գութիւն, և զթաղումն, և խոստո֊
վանութեան նորա գիտողք վկայ֊
եսցեն, եթէ հաստատեալ էր 'ի
միտս ելանել յաշխարհէ՝ եթէ որ֊
հաս մահուն ոչ էր կանխեալ, այն֊
պիսայն՝ վասն ողորմութեանն Աս֊
տուծոյ՝ տացի թոշակն վերջին, և
օրինաւոր թաղումն, ոչ որպէս
քահանայի կամ կրօնաւորի, այլ
իբրև զմիոյ յաշխարհականաց ։
Բայց՝ մի՛ ոք անընտրողաբար զամե֊
նայն որ յաշխարհի մեռանիցին
կրօնաւորք՝ հաւասար համարեսցի,
զի են բազումք՝ որ հիւրութեամբ
եկեալք յաշխարհ՝ պատահէ նոցա
վախճան. և այլք՝ որ ծեր և տկար
գոլով մարմնով՝ և վասն ոչ գտա֊
նելոյ խնամս 'ի վանորեայս՝ բնա֊
կեն յաշխարհի ուղիղ և ոչ բամբա֊
սելի վարուք. այսոքիկ և սոյնպի֊
սիքս պատուով թաղեսցին, յոր֊
ժամ հասանէ վախճան, որպէս
զծառայս Աստուծոյ ։

Դարձեալ՝ զգուշացուցանեմք
զճշմարտադաւանութեանդ երամս յա֊
ղագս նոր եղելոյ սովորութեանդ

'ի վանորէայս 'ի մերում ժամանակիս, այգեգործ իւրաքանչիւր ոք լինելով 'ի կրօնաւորաց որպէս 'ի գեւղս, որ անվայելուչ է կրօնաւորական կարգի և արտաքոյ առաջին սրբոց հարցն պատուիրանաց: Զի նոքա և զորս յաշխահի ունէին ժառանգութիւնս և ստացուածս՝ թողին, և թողուլ օրինադրեցին, և զխաչ առաքինութեանն բարձին. և զկնի Քրիստոսի գնացին որպէս և ինքն հրամայեր մեծատանն, թէ Երթ վաճառեա զոր ունիս, և տուր աղքատաց. և դու առ զխաչ քո և եկ զկնի իմ, և ունիցիս գանձս բազումս յերկինս: Եւ դարձեալ՝ թէ Որ կամիցի զկնի իմ գալ, և ոչ ուրասցի զամենայն՝ զոր ունիցի յաշխարհի, և առցէ զխաչ իւր հանապազ, ոչ կարէ իմ աշակերտ լինել: Եւ այլ ևս որ այսպիսիք են աւետարանական պատուիրանք աշակերտելոց անձանց, որ էք դուք: Յորոց բազումք են 'ի ժամանակիս կրօնաւորաց՝ որ

յաշխարհի առանց ժառանգութեան էին, և հարկաւորք իշխանաց, և աղքատք 'ի գոյից, և կարօտք հարկաւորացն, և յորժամ զՁև կրօնաւորութեան ընկալան, տեարք եղեն 'ի վանորեայս բազում ժառանգութեան, և փարթամացան ստացուածովք. և ոչ միայն հարկաւոր պիտոյիցն եղեն անկարօտ, այլև աւելորդօքն լցան. և յաշխարհի հողովք և երկօք տաժանեալք, և աստ անհոգութեամբ և հեշտութեամբ ստուարացեալք: Եւ զիա՞րդ կարիցէ այնպիսին յաշակերտութն լինել կարգի, և ասել որպէս Պետրոս, Տէր, ահա մեք՝ թողաք զամենայն, և եկաք զկնի քո, արդ զի՞նչ լինիցի մեզ: Յայտ է զի ոչ եթող ինչ վասն Քրիստոսի. այլ մանաւանդ զոր ոչ ունէր յաշխարհի, ստացաւ հակառակ Քրիստոսի:

Եւ արդ՝ քանզի աստուածային պատուիրանք ըստ զօրութեան ընդունողացն եդան յիւրաքանչիւր ժամանակի, տկարագունիցն Թե-

Թևագոյնք՝ զի տանել կարիցեն, և զօրաւորացն ծանունք՝ զի յօժարութեամբ բառնան, ըստ այսմ օրինակի և մեք՝ վասն զի տեսանեմք զբազում ցամաքեալս յաստուածային սիրոյն, և ոչ մի քան զմի նախանձու բարեաց շարժեալք՝ 'ի բարձրագոյն առաքինութիւս ձեռնարկելով որպէս առաջին հարքըն. այլ մերոյս նախանձ 'ի հակառակն բերի նոցա, այսինքնքըն՝ թէ ոմ քան զընկերս յընդարձակագոյն տեղւոջ և'ի պարարտ երկրի տնկիցէ այգի, և թէ զիմրգ մնուցանիցէ իմաստութեամբ զնորագոյն տունկսն: Եւ փոխանակ զարուեստս առաքինութեան ուսանելոյ 'ի միմեանց, զայգեգործութեան հնարս վարժին անհըմուտքն 'ի հմտագունիցն: Արժան է, ասեն, այսպիսի օրինակաւ վատակել եզամբք, և բրել ձեռամբ փայտատօք և բահիւք, և զհակառակ տնկոցն զարմատս, և զբոյսս արմատաքի խլել: Զոր պարտ էր նախ զբարեաց հակառակ բոյսն,

որ 'ի վերս մեր և 'ի բարս, 'ի բաց հանել 'ի մէնջ, և այլս արտաքնոցն ունել փոյթ : Այլ և յատանելոյն օրինակ զանազանեալ է իւրաքանչիւր տնկոցն սեռից՝ առ իմաստունսն յայնոսիկ. զի զոմանս հուպ յարմարումն, և զայլսն 'ի բացեայ հատուածն. յոմանս սակաւուսն, և 'ի կէսս յոլովագոյնս թողուն. և այս ամենայն՝ որպէս զի յաճախագոյնս պտղաբերեսցեն, և յոլովս զգինւոյն չափոյ աճեցուսցեն զթիւս : Թողից ասել զպատուաստելոյն հնարս, մի քան զմի առաւելեալ 'ի հանճար. և զգործելոյն եռանդն ջերմութեան, զի ոչ զտիւն ումանք բաւական համարին ժամանակ գործելոյ, այլև զգիշերին ևս խառնեն ընդ տուընջեանն, զոր արժան էր յայգի պատուիրանացն Աստուծոյ զայնքան ունել փոյթ և յօժարութիւն գործոյ, յորում հրաւիրեցաք 'ի Քարոզչացն, և մտաք 'ի գործ՝ հաւատովք և կրօնիւք, ընդ դահեկանին վարձու, որ է պատկերն թագաւո-

ըստկան տուեալ մեզ յԱստուծոյ, յերեկոյանալ կենցաղոյս ժամանակի, նման լինելով նմա՝ ըստ խոստացելոյն:

Դարձեալ՝ յորժամ պատահեն միմեանց տեարքն այգեաց կրօնաւորք յայլ և յայլ տեղեաց, յետ ողջունին՝ ոչ զողջութենէ հոգւոց հարցանեն և զհիւանդութեանց ախտից, և ոչ զպատերազմաց դիւաց, և զխաղաղութեանց, և ոչ՝ թէ զիա՞րդ ստասցուք շնորհս արտասուաց 'ի ժամ աղօթելոյն, այլ թէ յայսմ ամի, ո՞վ եղբայր, զիա՞րդ է պտղաբերութիւն քոյին տնկոցն, առաւե՞լ է թէ նուազ: Եւ նա թախծեալ սրտիւ պատասխանէ. զի՞նչ ասացից, ասէ, զաղէտան, որ պատահեցան. զի ոմանք 'ի ճճեաց մնասեցան, և յոմանց ծաղիկքն թօթափեցան, և այլքն արևակէզ եղեալ ողկուզացն չորացան, և կէսքն նեխութեամբ ապականեցան. և թէ զի՞նչ արարից՝ անգիտանամ զելս վտանգիս եղելոյ: Եւ ընկերն թելադիր եղեալ նմին՝

խրատ տայ, զոմանս պատուաստել 'ի անկոցն՝ որք պողակորոյսք լինին, և զայլսն զանազան փորձեալ հնարիւք բժշկել 'ի պատահելոց կրիցն:

Եւ քանզի 'ի Նիւթականացս ցանկութիւն զբաղումն 'ի կրօնաւորաց ժամանակիս տեսանեմք ըմբռնեալս, որք ղթեթևանալն յայսպիսի ծանրութեան հոգոց դըժուարինս վարկանին, և գնալ զհետ խրատուն Քրիստոսի, որ հրամայէ ոչ հոգովք պաշարել զանձն յաղագս հարկաւորացն կերակրոց և զգեստուց, թող թէ վասն աւելորդացն, վասն այնորիկ և մեք ոչ գտնեմք օրէնս այսպիսի կրօնաւորաց, ամենևին 'ի բաց կալ 'ի տընկագործութենէ, և յամենայն գոյից ստանալոյ, որպէս վայելէ աշակերտաց Քրիստոսի, զի մի 'ի լսելն դարձուսցեն զդէմսն յարևմուտս, և խոժոռեալ ընդ լուր խրատական մեր բանի՝ 'ի բաց գնասցեն, որպէս և մեծատունն այն. այլ զերկրորդն գտեալ զոր յայսոսիկ

հաճոյս խմանամք կամացն Աստուծոյ, և զայն դիցուք ձեզ օրէնս: Եւ դուք թէ ընդ առաջինն դժուարանայք զամենայնն տալ Աստուծոյ, և մերկանալ աշխարհի կամաւ՝ նախ քան զմերկ գնելն 'ի գերեզմանի ակամայ, զերկրորդ օրինադրութիւնս ընկալարո՛ւք ախորժելի կամօք: Զոր թէ յօժարական սրտիւ առնիցէք, հաւատամք ողորմութեանն Աստուծոյ, զի որպէս զառաջինն ընկալցի, և 'ի ձեռն երկրորդիս կատարման՝ յառաջինն առաջնորդեսցէ ձեզ վերանալ յօժարութեամբ, և ոչ բռնութեամբ. և այս է զոր ասելոցս եմք:

Յամենայնի է զոր ստանայք, եթէ տունկս և եթէ այլ ինչ, զախտ ապահովութեան 'ի բաց մերժեցէք 'ի նոցանէ, որպէս զորոմս վնասակար 'ի բարի սերմանց, և զաշխատութիւն ձեր՝ որ 'ի նոսա՝ մի՛ վասն յոլովելոյ յինչյան առնիցէք, այլ վասն կամացն Աստուծոյ, և յերկինս գանձելոյ զերկրաւորս, և 'ի մարմնոցդ աշխատութենէ՝ հոգւոցդ

ամբարել զանձ։ Եւ զոր տանէմքս այսպէս եղիցի, որով լինիցին առացուածք ձեր 'ի հաճոյս Աստուծոյ։

Ի պտղոցն ժամանակի՝ զպտղաբերացն ձերոց մասն տուք Աստուծոյ՝ 'ի ձեռս աղքատաց և կարօտելոց, և մի՛ դատարկ և ունայն զխնդրօղսն պտղոյն դարձուցանիջիք, զի մի՛ և զձեզ Աստուած յիւր տնկեալ դրախտէն ունայն դարձուսցէ։ Եւ եթէ տայցէք, մի՛ խոժոռ դիմօք և զայրացեալ սրտիւ և դժկամակ բանիւք, իբրև զզոհն Կայենի՝ որ ոչ է հաճոյ Աստուծոյ, այլ և պատճառ զայրացման. այլ զուարթառատ կամօք, որպէս սիրէ և խնդրէ Աստուած։ Եւ 'ի գինւոյն ժամանակի՝ 'ի գինւոյ անտի մասնաւորեցէք զբաժինն Աստուծոյ։ Եւ յորժամ առաւելուցուքան զպէտս ձեր, և հարկ լինի վաճառել, 'ի գնոց անտի արծաթոյ՝ առաւել պտղաբերեցէք Քրիստոսի, տալով տառապելոց և գերելոց և մի՛ ամբարիցէք յերկրի, և յուսայք յետ մահու՝ այլոց ձեռամբ

ղձերն տալ Աստուծոյ վասն ձեր ։ Զի փոքր է յոյժ այն , չասեմք թէ ամենևին ընդունայն , և երկրորդ բարի , և ոչ առաջին , 'ի յայլոց ձեռն յուսալ առատագոյն լինել մինչ իւր , և զիւրն կարկամեցուցանել , մինչ իշխան է գոյիցն և տէր ։ Եւ երկբայելի է այր այնպիսի գտանել , որ երկեզիւն Աստուծոյ մատակարարիցէ զինչսն ըստ հրամանի գնացելոյն ․ զի բազմաց աներկեւղից պատճառ կորստեան լինի հոգւոյ՝ ստացուածք մեռելոյն՝ յորժամ ժառանգէ , անառակ և անկարգ գնացիւք վատնելով զամենայնն , որ միասու պատճառ փոխանակ փրկութեան լինիցին ինչքն այն ստացողին իւրում ։

Դարձեալ՝ զի թէ և երկիւղած ոք հանդիպեսցի , և զամենայն գոյս մեռելոյն՝ ըստ կամացն Աստուծոյ անօրինէ վասն հոգւոյ նորա թողութեան մեղաց , նուազ է 'ի բարեաց և ոչ կատարեալ բարի ։ Եւ զի այս ճշմարիտ է՝ 'ի բանից իմաստնոյն ուսանիմք ․ այն զի ասէ ,

թէ, Որ ողորմի աղքատին, փոխ տայ Աստուծոյ : Եւ գիտէ զայս ամենայն ոք, զի զվճար փոխոյն ոչ ստարի ուրուք, այլ փոխատուին տայ փոխառուն : Վասն որոյ աղաչեմ, մի յայլ ոք վստահանայք. այլ դուք տուք զփոխն ձեռամբ ձերով ՚ի ձեռս Աստուծոյ : Զի թէ զձեզ ճանաչիցէ փոխատու՝ խնդրող փոխոյն Աստուած, յաւուր պայմանի հատուցման իւրոյ զոր եդ, ՚ի ձեռս ձեր տացէ զվճար փոխոյն: Իսկ եթէ ձերոց գոյիցն այլ ոք լինիցի տուօղ փոխոյ, նոյն և ընկալցի զփոխարէնսն յԱստուծոյ. և ձեզ վասն ինչ թերևս հատուցցի ողորմութեան, միջնորդութեամբ տըւողին զձերն : Այլ և տէրունական հրամանն, զոր ՚ի հրապարակախօս ատենի անդ ասելոց է առ աջակողմեանսն, զնոյն նշանակէ : Քանզի ոչ ասէ՝ թէ քաղցեայ, և այլք վասն ձեր ետուն ինձ ուտել. կամ մերկ էի, և այլք վասն ձեր զգեցուցին զիս. այլ թէ դուք ետուք ինձ ուտել, և դուք զգեցուցէք զիս :

Եւ արդ՝ թէպէտ և առաջին կամք Քրիստոսի այն է, զի ոչ ընաւ ստանայցէ կրօնաւորն ստացուածս որպէս վերագոյն ասացաք, զի մի յաղագս նիւթականիս հոգալոյ՝ յաստուածային առաքինութեանց աննիւթական հոգոցն խափանեսցի. և բազում վնասուց և ծանրութեանց զանձն 'ի ներքոյ արկանիցէ. այլ ունել 'ի միաբանական կենացն կերակուր և հանդերձ ըստ հրամանին առաքելոյ, և այնու շատանալ: Բայց վասն զի այս ոչ ամենեցուն է, այլ որք վասն սիրոյն Աստուծոյ ատեցին զաշխարհ, և ելին յաշխարհէ, և ոչ յաղագս այլ ինչ պատճառի, վասն որոյ և մեք այնոցիկ կրօնաւորաց՝ որք երկակենցաղ կենդանեաց նմանեալք են, զի են ցամաքայինք՝ վասն ձևոյն, և են ծովայինք՝ յաղագս 'ի ծովու աշխարհիս զբաղանաց, զաշխարհայնոցն դիցուք օրէնս, և ոչ զզերաշխարհիցն: Զի մեծ է աղքատանալն վասն Քրիստոսի, քան ստանալ ինչս, և տալ աղքատաց յաղագս հրամանին

Քրիստոսի, որքան մեծ է Քրիստոս քան զայն՝ որ ողորմի աղքատին 'ի դէմս Քրիստոսի։ Քանզի կամաւոր աղքատն որ յաղագս Աստուծոյ՝ նմանօղ Քրիստոսի է, որ վասն մեր աղքատացաւ, ասացաւ 'ի գիրս. իսկ ողորմածն աղքատին՝ բարեկամ Քրիստոսի կոչի, այլ ոչ նոյն ինքն Քրիստոս։

Եւ արդ վի բոլորովին ընկել Քրիստոս՝ մերկանալովն կամաւորութեամբ զամենայն ինչ վասն Քրիստոսի՝ դժուարին է ամենեցուն, ոչ ասեմ թէ անհնարին. զի որք կամին՝ կարող են, զոր յայտ առնէ բազմացն կատարումն յամենայն ժամանակի. դուք այսուհետեւ՝ որ ստացեալ էք ինչս, զբարեկամացն Քրիստոսի ընկալարուք զաստիճան, ողորմելովն աղքատաց, որպէս և ինքն իսկ հրամայեաց տէրն, թէ տուք ողորմութիւն, և ամենայն ինչ ձեր սուրբ է. այս ինքն՝ թէ յորժամ 'ի ձերոց ստացեալ գոյիցն տայցէք մասն ողորմութեան աղքատաց՝ յօժարական

և տուատամիտ կամքը , մնացեալն ամենայն սրբքն և անմխաս լինին ձեզ : Եւ ոչ գտանիք խորև զազահս յաղագս սասանալոյն , այլ ողորմութեան արժանաւորք յԱստուծոյ՝ որպէս զողորմածս , ըստ ասելոյն տեառն մերոյ , Երանի ողորմածաց զի նոքա ողորմութիւն գտցեն :

Նաև զայս ևս ասեմք , թէ՝ օրէնք որ եդան կրօնաւորաց՝ անինչս և անստացուածս լինել , թէպէտ և յաղագս անզբաղ լինելոյ է յաշխարհական իրաց , և միայն հոգևորացն պարապել , այլ կատարեալ պատճառն՝ յաղագս կարօտ լինելոյ կրօնաւորին , ոչ միայն յաւելորդացն կերակրոց և ըմպելեաց և զգեստուց , այլ և 'ի հարկաւորացն ևս , որպէս զի կարօղ լինիցի պատերազմի ցանկութեանն , որ զինուորին ընդդէմ մաքուր կուսութեանն , յաղթօղ լինել : Զի որք անխտիր տան զանձինս որկորստութեան և արբեցութեան , թէ և դիւք պոռնկութեան զրգռիչս ոչ ունէին ախտից , բաւական է բոցոյ ցան-

կուսութեանն՝ զառաւելութիւն նիւթոյ որովայնամոլութեանցն տալն, ձգել զտոսա 'ի կատարումն մեղաց: Վասն որոյ աղաչեմ, զի թեպէտ և յոլովս ունիցիք զնիւթ կերակրոյ և ըմպելւոյ առ ձեռն և առանձին, այլ յոգւոյս ձեր խնայելով մի՛ ագահութեամբ և որկորստութեամբ յայնոսիկ վարեսջիք, այլ պարկեշտութեամբ և օրինաւորըստ կարգի կրօնաւորաց: Եւ զոր 'ի ձէնջ պակասեցուցանէք վասն պատուիրանին Աստուծոյ, 'ի սէր կարօտեալ և չքաւոր եղբարց, և ծերագունից և տկարաց զայնոսիկ 'ի կեր արկանիցէք. յորոց կերկին ամբարէք 'ի յոգւոյս ձեր զբարին. զպարկեշտութիւնն անձանց ձերոց, և զխորով ողորմութիւնն կարօտելոց:

Մի՛ ոք գտցի 'ի միջի ձերում, որ զձև կրօնաւորութեան զգեցեալ է, և յառաւելութիւն գինւոյ տուեալ զանձն իւր՝ զքաղցրասանս արբեցողաց ընկալցի՛ 'ի կարգն տուրք. զի միոյն անկարգութեամբ ամենայն կարգակիցք նորա անարգանես-

ցին յաշխարհականաց և յայլազ-
գեաց ։ Իսկ թէ և այլով ամենայնիւ
հնար էր անբասրելի լինել այնո-
պիսոյն , արբեցութեանն արտա-
քրս ելցէ յարքայութենէ՝ ըստ բա-
նին առաքելոյ ․ քանզի ասէ՝ Մի՛
խաբիք , ոչ պոռնիկք , ոչ շնացողք ,
ոչ արուագէտք , ոչ արբեցողք , և
զայլն որ ըստ կարգի թուէ՝ ոչ ժա-
ռանգեսցեն , ասէ , զարքայութիւնն
Քրիստոսի , և Աստուծոյ ։ Զի ուր
օրինակ լինել բարեաց պարտական
են ամենայն տեսողաց , և նոքա
զայն ինչ գործեն՝ զոր արգելուն
գիրք սուրբք 'ի յաշխարհականաց ,
զի՞նչ յոյս աշխարհականին կայցէ ,
և կամ ո՞վ համարձակեսցի առ նա-
սա յաղագս վատթար ինչ գործոց՝
յանդիմանութեան ինչ խօսել բան ։
Որք և ընդդիմաբանեն զկարգաւո-
րաց ամանց զանազան անկարգու-
թիւնս ։ Ոչ զամենեցուն ասեմք , զի
բազումք 'ի ձէնջ և ոչ հացիւ և ջրով
յագէին վասն սիրոյն Աստուծոյ ,
թող թէ աւելորդ կերակրովք և
գինեաւ ։ Այլ յաղագս անխոր-

տիցն և ծուլից, զորս և դուք՝ որ կատարեալքդ էք, խրատեցէք զնո-սա որ ստահակսն գնայցեն, զի ուղ-ղեսցին: Իսկ որք յամառեալք՝ ՚ի նոյն բերին համապազ ՚ի լոյծ և ՚ի մեղկ կեանս, յետ բազում անգամ խրատելոյն և ոչ անսալոյն, ՚ի բաց հատէք զանբժշկելի անդամսն ՚ի մարմնոյ եկեղեցւոյ, զի մի փոքր խմորն՝ զամենայն զանգուածն ա-պականիցէ, չարն՝ չարեաց լինելով օրինակ:

Իսկ եթէ ոք յեղբարցն Ջատա-գովէ այնպիսումն, վասն մարմնա-ւոր ընտանութեան, կամ վասն սիրելութեան, որպէս զի ախտա-ցեալ անդամն ՚ի կարգ առողջիցն պահեսցի, լրբաբար գործելով զան-պատշաճսն, և մերձակայիցն պատ-ճառ լինելով հիւանդութեան՝ զիւրն հոգւոյ ախտ ՚ի նոսա փոփո-խելով որպէս զբոր, կորստեան հոգւոյ նորին և այլոցն՝ որ նովաւ, օգնականն նորա տացէ պատաս-խանի առաջի Քրիստոսի՝ եթէ ա-ռաջնորդն իցէ, և թէ այլ ոք յե՛ն

նկերակցացն ։ Զի թէ Տէրն զաջ ակն հրամայէ խլել, և զձեռն աջոյ և զոտն հատանել, զի՞նչ լինիցին՝ որք զգայթագղեցուցիչսն առ գայ-թագղեալսն պնդեալ պահեն 'ի միտս երկաքանչիւրոցն ոգւոց, հի-ւանդացն՝ աներկիւղ գործելով ըղձ-վատթարին, և առողջիցն՝ գայ-թագղելովն և բամբասելով ։ Իսկ եթէ յետ 'ի բաց գնալոյն և զղջա-ցեալ դարձցի յուղղութիւն այն-պիսին շնորհօքն Աստուծոյ, և ող-ջացի առաքինութեամբ ճշմար-տութեամբ, և ոչ կեղծաւորու-թեամբ՝ ընկալցի վերստին յառողջ անդամոցն Քրիստոսի միաւորու-թիւն ։

Դարձեալ և զայս պատուիրեմք, զի թէ հնար իցէ՝ փոփոխել ձեզ 'ի փոփոխական բարուց, վանաց 'ի վանս շրջելով․ զի վասն դոյզն պատ-ճառի թողուլ զառաջնորդն իւր, և զկենակից եղբարսն՝ անհաստա-տութեան բարուց է նշանակ ։ Վասն զի բաց 'ի հոգւոց միասունէ՝ որ հրամայեալ է 'ի գիրս թողուլ

և գնալ, յաղագս մարմնաւոր ինչ պատճառի ոչ թողացուցանեն ըզփոխումն 'ի տեղւոջէն ։ Եւ յայսմ պատճառէ՝ յազգի մերոյ կրօնաւորաց զբազումս տեսանեմք անհրահանգս, և անխրատս, և անհնազանդս ուսագագունից. և զրեթէ զբովանդականն՝ բաց 'ի սակաւուց ։ Զի յորժամ յանպատշաճսն կամ 'ի գործս կամ 'ի խօսս՝ որ անվայելուչ է կրօնաւորաց տեսանիցեն զոք եղեալ՝ առաջնորդն, կամ վարդապետն, կամ ոք 'ի ծերագունիցն, և յանդիմանող բանիւ սաստիցէ, վաղվաղակի գիշերագնաց եղեալ, իբրև ծառայ փախուցեալ 'ի տեառնէ՝ փախչի զայրացեալ սրտիւ յաստուածայինն խրատուէ անտի ։ Եւ զի առաջնորդն երկնչի՝ մի գուցէ 'ի գնալ եղբարց յաղագս այսպիսի պատճառի, գործոյ եկեղեցւոյն պակասումն լինիցի, ներող լինի ամենայն ստահակ եղբօր կալ մնալ անբժշկելի 'ի բարս և 'ի գործս ստահակութեան. և այսու աղագաւ՝ անխրատս և անհրահանգս

մնան այնպիսիքն մինչ 'ի փախճան։

Նա և ևս ծանրագոյն յիմարութեան բանք, զոր պատասխանեն նոքա խրատտուաց իւրեանց՝ մի՛ լինել շատաշրջօղս, ասեն. Աստուած ազատ արար զմեզ, և ինքնիշխանս, զիա՞րդ զազատութիւնս մեր դիցուք 'ի ծառայութիւն մարդկան։ Եւ երանի՞ թէ զազատութիւնն՝ զոր ետ Աստուած բնութեանս, բարւոք 'ի կիր արկանէին, այս ինքն 'ի յախտից լինել ազատս։ Վատթար ծառայութիւն և վնասակար՝ մեղաց ծառայութիւնն է, որպէս ասաց Քրիստոս, թէ Որ առնէ զմեղս, ծառայ է մեղաց։ Իսկ Աստուծոյ ծառայութիւնն, և վասն Աստուծոյ՝ եկեղեցւոյն, և վասն եկեղեցւոյն՝ առաջնորդին, արդարութիւն է, և ոչ մեղք. զոր և առաքեալ օրինադրէ, թէ Ծառայեցէք միմեանց՝ երկեղիւն Քրիստոսի. և ինքն Քրիստոս հրամայէ, թէ Որ կամիցի մեծ լինել, եղիցի ամենեցուն ծառայ։ Գրէ և սուրբն Բարսեղ 'ի կրօնաւորաց սահմանն, թէ ամե-

նոյն ժուժկալութիւն և առաքինութիւն այնմ՝ որ զհնազանդութիւն առաջնորդին ոչ ունիցի՝ անօգուտք են, և յոչ ինչ պէտս համարեալ։

Մի՛ ոք յեղբարց տրտնջող լինիցի զառաջնորդէ խորմէ յինչ և իցէ պատճառս տրտնջման. Թէ և արդար գտանիցի 'ի տրտնջելն, զի մի՛ զվարձսն՝ որ յԱստուծոյ՝ կորուսանիցէ, և ընդ այդպիսին մշակացն առաջնոց դատեսցի, վասն տրտընջելոյն զտեառնէն անիրաւաբար։ Զի թէ մարմնաւոր ծառայից հրամայէ առաքեալ հնազանդ լինել ըստ մարմնոյ տերանց, ոչ առ ականէ ծառայելով, այլ միամտութեամբ սրտիւ որպէս Աստուծոյ, զի 'ի տեառնէ, ասէ, ընդունիցիք ըզվարձսն, քանի՛ ևս պահանջէ Աստուած 'ի հոգևորացդ, առաւել քան զնոցայն ցուցանել հնազանդութիւն և համբերութիւն և միաբանութիւն եկեղեցւոյ հոգևոր առաջնորդաց։ Զի ոչ միայն ընդ պահոցն և աղօթից, և որ նման

սոցին՝ մասանց առաքինութեանց՝ տայ Աստուած զվարձս վաստակոց գործողաց 'ի յայգի պատուիրանի նորա, այլ առաւել ընդ հաւատա-րիմ լինելն եկեղեցւոյ 'ի գործս և յաշխատութիւնս և յամենայն իրս։

Իսկ զգողսն և զ[illegible]ծսն և զհա-տուսն՝ քան զարտաքինսն 'ի սոյն յանցանս գտեալս՝ առաւելապէս դատի Աստուած, որպէս զգիտող կամաց տեառն ծառայ, քան զայն՝ որ ոչն գիտէ։ Զի զորօրինակ ըղ-սուրբ կերակուրս և զըմպելիս պիղծ կայտառք անկեալք 'ի նոսա և հեղ-ձեալք ապականեն, սոյնպէս և յար-դար վաստակս՝ յորժամ ձեռն գողոց մերձենան 'ի կծծութիւն՝ ինքեանց բարեգործութիւնն հեղձ-նուն 'ի հոգիս իւրեանց որպէս ըղ-մկունս, և զմնացեալ ստացուածսն պղծեն անիրաւութեամբն։ Ցորմէ զգուշանալ աղաչեմ, և սուրբ պա-հել զձեռս 'ի վնասակար և յանի-ծաբեր անձին ախտիցս։ Քանզի ա-նէծք ցաւագինք վասն այլ մեղաց

ոչ ևս շարժին 'ի մէջ եկեղեցւոյ, քան յաղագս գողութեան: Եւ մի՛ ոք փոքր համարեսցի զսա 'ի կարգս մեղաց, քանզի 'ի քարեղէն տախտակին` 'ի գրեալ օրէնսն մատամբն Աստուծոյ` երրորդն է սա կարգեալ յետ սպանութեանն և շնութեանն: Եւ մի՛ ոք կարծիցէ` թէ մեծագոյն իրաց յափշտակութիւնն է 'ի գողութեան համարի, և փոքրն ոչ: Ծանիցէ այնպիսին, զի թէպէտ և 'ի տուգանսն զանազանութիւն է, քանզի չորեքպատիկ հատուցանել յօրէնսն հրամայեցաւ զգողութեանն վճարուին, և տասն դահեկանի չափոյն` չորեքպատիկն, կամ հարիւրին կամ հազարին` առաւել է քան զմիոյն կամ զերկուցն, սակայն անուանն մի և նոյն է մեծին և փոքուն, բազմին և սակաւուն: Զի ոչ թէ որ զմեծագոյն իրս կամ զբազումս գողանայ` նա միայն կոչի գող, և որ զփոքունս և զսակաւս` յայլ ինչ անուն վերաձայնի, այլ համանունաբար 'ի վերայ ամենայն գողոց է գողու-

թեանն անուն և պատիժ , որ զբազումս գողանայ և որ զսակաւան ։ Եւ սահման՝ որ ընդ գողութեան անուան և բամբասանօք արկանէ զմարդ՝ այսչափ է . ամենայն ոք՝ որ զձեռս իւր ձգէ յառնուլ զինչ և իցէ իրս, և աչօքն այար և անդր հայեսցի , զի մի՛ տեսցէ՝ կամ տէր գոյին՝ և ըմբռնեսցէ զնա , կամ օտար ոք՝ և հայհոյեսցէ , գող է այնպիսին , գողութիւն է զոր առնուն ։

Եւ մի՛ ոք ինքն ինքեան իրաւունս առնիցէ , կամ աշխատութեան իւրոյ վարձ առնելով զգողացեալն , և կամ այլ ինչ ցուրտ պատճառս յօդելով՝ անպատիժ համարի լինել զինքն 'ի դատաստանէն Աստուծոյ , 'ի նախնի եղեալ օրինակէն զգաստասցի այնպիսին Անանիայ և Սափիրայ ։ Մի՛թէ անձի՛ն աշխատութիւն էր գողացեալն յիրաց այլոց՝ որպէս և քոյդ , ոչ . այլ 'ի սեպհական իւրեանց գեղջն գնոց , և 'ի հայրենի ժառանգութենէ՝ զոր վաճառեալ արծաթոյ , և սակաւ ինչ խորեալ՝ յաղագս առանձնա-

բանից և զբարին թողացուցէն ելանել․ իսկ զչարս և զնմանակարս և զանօգուտս՝ 'ի սրտին որպէս 'ի բանտի արգելցէն, ոչ թոյլ տալով մտացն ծնանել զչար մանկունսն, այլ մանաւանդ հեղձուցանել յինքեան զսերմանեալ յղութիւնն 'ի սատանայէ: Եւ արդ՝ մի՛, որք դատեսցի զընկեր իւր, զի մի՛ և ինքն դատեսցի յարդարադատն Աստուծոյ, որպէս և ասաց տէրն․ Մի՛ դատիք և ոչ դատիցիք:

Մի՛ որք 'ի բամբասանս յօժարեսցի, թէ և ուղիղ իցէ, թող թէ զրահետ վարեալ: Զի զի՞նչ օգտեցուցանես զեղբայրն՝ բամբասելովն զնա առ այլս․ զքեզ վնասեցեր 'ի բամբասելն, և նմա ոչ ինչ օգտեցար: Եթէ կամիս օգտեցուցանել զնա և զքեզ, տերունական վարեցիր խրատով: Յանդիմանեա զնա սիրով, որպէս զհիւանդացեալ անդամ սպեղանեօք, նախ առանձնաբար, եթէ ոչ անսայցէ՝ առաջի երկուց և երից վկայից: Եթէ և 'ի նոցանէ ոչ պատկառեսցի դառնալ

յուղղութիւն, ատասջիր յեկեղե-
ցւոջն. և թէ և յեկեղեցւոյն 'ի հրա-
պարականախատ լինելոյն ոչ զըղ-
ջասցի, յայնժամ համարեսցի քեզ
և բամբասեսցի իրաւապէս իբրև
զհեթանոս և զմաքսաւոր:

Եւ արդ՝ մի՛ ոք սովորեցուսցէ 'ի
կրօնաւորաց զլեզու իւր կամ չա-
րախօսել 'ի զուր զումեքէ, կամ
անիծանել վայրապար, կամ հա-
կառակել ընդդէմ բանից հակա-
ռակողաց յանօգուտ կռիւս, և 'ի
վնասակար վիճաբանութիւնս.
կամ 'ի վիճելն՝ թշնամանաց և ա-
նարգանաց բանս բարբառել որ-
պէս զաշխարհականս, որ ոչ վայելէ
սրբոց: Զի թէ ընդ դատարկ բանից՝
համարս պահանջէ Քրիստոս, որ-
պէս և հրամայեաց, զի՞նչ լինիցին՝
որք զարշելի և վատթար բանիւք
վարին անխտրաբար: Մանաւանդ
որք 'ի խեղկատակութիւն սովորե-
ցուցեն զլեզուս և 'ի ծիծաղական
բանս, նման լինելով խաղալկացն
և հացկատակաց, և որք 'ի ծիծա-
ղելի այլայլեն զդէմս և կարկաջեն

անմտաբար ։ Վասն որոյ աղաչեմ, զի բանք ձեր ոչ լինիցին անհամ և անաղ՝ որպէս զռամկաց անմտաց, այլ որպէս աղիւ համեմեալ՝ ըստ խրատուն առաքելոյ՝ ՚ի շահ և ՚ի շնորհս տալ լսողաց, և ոչ ՚ի գայթակղութիւն, և ՚ի զազրութիւն լինել լսելեաց ։ Այլև նոյն ինքն շահաւէտ և օգտակար բանքն մի յաճախութեամբ և առանց դիպօղ ժամու եղիցին խօսեցեալ յայնմանէ որ խօսելն գիտիցէ իմաստութեամբ, զի մի ձանձրացեալ նողկտայցեն լսողքն, և դսրովանս դիցեն ատեցողք բարի բանից, այլ սակաւք եղիցին, և այն հեզութեամբ և հանդարտութեամբ ։

Եւ գլխաւորելով զբանս որ առ մաքրագունիցդ եղբարք, ասեմք զայս՝ եթէ խորհուրդք և բանք և գործք ձեր, և ամենայն շարժումն հոգւոյ և մարմնոյ, այնպէս եղիցին պարկեշտք և աստուածավայելուչք, որպէս զի անուանն Աստուծոյ, և ձեռոյ կրօնաւորութեանդ՝ մի հայհոյութեան և պարսաւա-

նաց, այլ գովութեան և փառա֊
ւորելոյ լինիցին պատճառք 'ի տե֊
սողաց և 'ի լսողաց: Զի մի՛ լիցի ու֊
մեք 'ի ձէնջ՝ ընդ հնոյն Իսրայելի
լսել յԱստուծոյ մարգարէին թէ,
Անուն իմ վասն ձեր հայհոյի 'ի
մէջ հեթանոսաց. այլ մանաւանդ
տէրունական բանին որ առ աշա֊
կերտսն՝ արժանաւոր առնիցէք
զանձինս պայծառ առաքինու֊
թեամբ թէ, Այնպէս լուսաւո֊
րեսցի լոյս ձեր առաջի մարդկան,
որպէս զի տեսցեն զգործս ձեր բա֊
րիս, և փառաւորեսցեն զհայր ձեր
որ յերկինս է: Եւ այս ինչ սակա֊
ւուք առ աշակերտեալ եղբարսդ
ասացեալ 'ի մէնջ 'ի փառս Աս֊
տուծոյ աւարտեսցին:

## ԱՌ ԱՌԱՋՆՈՐԴՍ ՍՐԲՈՑ ՈՒԽՏԻՑ

## ՎԱՆԱԿԱՆԱՑ

ՓՈՔՐ ինչ և առաջնորդացդ 'ի յերկինս ճանապարհորդելոցն՝ տացուք ծառայակցաբար զհոգևորական և զաստուածային բանին կերակուր, որք զաչաց ունիք գործ և սպասաւորութիւն մարմնոյ եկեղեցւոյ։ Զի զոր օրինակ աչք առաջնորդեն անձին յամենայն շարժուածին 'ի լաւագոյնն կամ 'ի վատթարագոյնն, ըստ այսմ նմանութեան և առաջնորդք առաջնորդելոցն։ Եւ որպէս բիբք աչացն եթէ մաքուր լինիցին 'ի յախտից ինչ 'ի ներքս անկելոց, սրատեսութեամբն անմոլար առաջնորդէ անձին յուղիղ ճանապարհն․ իսկ եթէ շամանդաղք մթինք զերական լուսոյ՝ որ 'ի գլխոյ անտի յաչսն իջանեն, խնուն՝ անտեսութեամբն սխալէ, և ընդ ինքեան 'ի խորխո-

ըստ մահու զբոլոր անձն իւր արկանէ, ըստ այսմ օրինակի և առաջնորդք եկեղեցւոյ. որ ոք երկոքումբք աչօք լուսաւորեալ իցէ, այս ինքն գիտութեամբ աստուածաշունչ գրոց, և առաքինասէր գործովք, անբծութեամբ, և սըրբութեամբ և ամենայն արդարութեամբ, զոր պատուիրանքն Աստուծոյ ուսուցանեն, այնպիսին որպէս անձին իւրոյ, նոյնպէս և համօրէն եղբայրութեանն բարւոք առաջնորդէ յաստուածայինսն: Իսկ որ զմի յաչացն բաց ունիցի, և միւսն կափուցեալ իցէ, այս ինքն՝ որ կամ գիտութիւն առանց գործոց առաքինութեան, և կամ առաքինութիւն առանց գիտութեան ունիցի, թերի է 'ի բարեաց, և ոչ կատարեալ. քանզի միականեաց նմանի այնպիսին: Զի թէպէտ և որ զիմաստութիւնն ունիցի՝ գիտէ զշաւիղս արդարութեան ճանապարհին ուղիղ ուսուցանել բանիւ, այլ ինքեան ոչ գնալով ընդ նոյն գործով, ոչ կարէ հաւանեցուցանել զայլս

գնալ։ Նոյնպէս և այն՝ որ սրբութեամբ վարուք լցէ միայն առանց գիտութեան գրոց, թէպէտ և անձամբ իւրով գնայ ընդ ճանապարհ օրինացն Աստուծոյ, բայց զի այլոց որպէս արժան է ոչ գիտէ իմաստութեամբ առաջնորդել, վասն այնորիկ բազում անկարգութիւնս մտանէ յեկեղեցի։

Իսկ այնոքիկ՝ որք զերկոսեան տեսարանս աչաց խաւարեալս ունիցին 'ի լուսոյ, այս ինքն զի են տգէտք աստուածային գիտութեանց, և են պղերգք յամենայն գործս արդարութեան, մանաւանդ թէ և հակառակօքն լցեալք, և յանդգնին տալ զանձինս յառաջնորդութիւն եկեղեցւոյ, որ և զբազումս տեսանեմք յայսպիսեաց 'ի մերումս թշուառացեալ ժամանակի ձեռնամուխ եղեալ յայսոսիկ, լինին այնպիսիքն ըստ տէրունական առակին. Կոյր կուրի յորժամ առաջնորդէ, ասէ, երկոքին 'ի խորխորատ անկանիցին, որք ոչ յԱստուծոյ, այլ 'ի սատանայէ շար-

ժեռալք դիմեն յառաջնորդու-թիւնն յայն, 'ի կորուստ ինքեանց և առաջնորդելոցն: Վասն այնո-րիկ և մեք զաստուածայինս բանի խրատու սիրով յայնց առաջնոր-դաց ողխս սերմանեսցուք, որք օրի-նօքն Աստուծոյ վարեալ յօժա-րին զառաջնորդութիւնս իւրեանց, որք Աստուծով սկսանին, և առ Աստուած կատարեսցին: Առ որս և ասեմք.

Մի՛ անփոյթ առնիցէք զաշա-կերտելոց եղբարցն 'ի հոգւոյ ինչ վտանգս անկեալ ուրուք կամ 'ի մարմնոյ, քանզի համարս տալոց էք ընդ իւրաքանչիւրոց: Մի՛ զնիւ-թականին գործոյ միայն պահան-ջել զկատարումն անթերի, և զհո-գևոր գործոյ՝ զառ 'ի նոցանէն կա-տարելոյ՝ անփոյթ առնել. այլ 'ի վատթարաց զգուշանալ, և լաւա-գոյնիցն պատկառ կալ միշտ խրատ տալով. զոր մանաւանդ պահանջէ ձենն և կարգն՝ զոր ընկալան: Վասն զի այսմ կարգի է մեռեալ լինել աշխարհի և աշխարհական իրաց, և

կենդանի Քրիստոսի և նորին պատուիրանացն՝ ըստ խրատուն Պաւղոսի · զի զայդի օրինացն կոչեցան գործել, և ոչ զարտաքնոցն մշակութեան զգործ : Եւ որ զայն միայն գործէ սաստ, և 'ի հոգևորացն ոչ ընաւ, կամ զնիւթականն 'ի բոլոր սրտէ, և զաննիւթն 'ի հարկէ և առ աչս մարդկան, ոչ եղև լսելի ներքին ականջօք տէրունական հրամանին թէ, Գործեցէք՝ մի զկորըստական կերակուրն, այլ զայն՝ որ տանի 'ի կեանսն յաւիտենից :

Գործել արժան է և զայս, քանզի զի դատարկութիւնն չար է՝ որպէս և Պաւղոս խրատ տայ, մանաւանդ զի և օրէնս դնէ, եթէ որ գործիցէ ոչ, և կերիցէ մի · զոր և ինքն կատարէր յանձն՝ Զցայգ և զցերեկ գործէաք առ 'ի չծանրանալոյ ումեք · և եթէ, Ձեռքս այս պաշտեցին զիս, և որ ընդ իմն էին : Բայց յաղագս մարմնական գործոյն զհոգևորսն անտես առնել իբրև զաւելորդ ինչ, յոյժ վատթարագոյն է աշակերտելոց բանին : Քանզի

պարտ է՝ որպէս երկրորդ է մարմինն հոգւոյն, առաջին զհոգւոյն հոգալ կերակրոց, որ են աղօթք և ամենայն բարեգործութիւնք, և ապա զմարմնոյն և զմարմնականաց։ Զի և առ մարդիկ՝ նախ տէրն կերակրի սպասաւորեալ 'ի ծառայից, և ապա ծառայքն 'ի նշխարէ տերանցն։ Եւ 'ի մեզ քանզի մարմինն ծառայական է, և հոգին տիրական, և կամք մտացս դատողական, արժան է դատողականին 'ի կարգի պահել զերկաքանչիւրսն։ Յառաջագոյն զհոգին կերակրել հոգևորական կերակրօք 'ի ձեռն մարմնոյն սպասաւորութեան, և ապա զմարմնականացն հոգալ՝ հոգւոյն իմաստութեամբ և անօրէնութեամբ։ Արդ՝ յայսոսիկ և որ նման սոցա բարեկարգութիւնս, պահեսջիք զմիաբանութիւն եղբայրութեան ձերոյ։

Դարձեալ՝ մի կողմնաւոր բարուք զոմանս սիրել, ջոկս առնելով, և զոմանս անտես առնել. ոմանց աւելորդօք բերել 'ի պէտս,

և այլոց և ոչ հարկաւորօքն բաւականանալ. այլ սերն հասարակաց եղիցի՝ ըստ սրբոյն Բարսղի կանոնադրութեանն, և պատիւն՝ որոց վայելէ։

Իսկ կերակրոցն բաշխումն՝ ըստ չափոյ աշխատութեանն առ իւրաքանչիւրոմն լիցի, առաւելութեամբ և նուազութեամբ։ Զծերացեալսն և զվտանգեալսն, որք զմանկութեան ժամանակն և զզօրութիւն անձանց 'ի յաշխատութիւնս եկեղեցւոյն ծախեցին, մի՛ բարձի թողի առնիցէք՝ որպէս ոչ ժամանակին պիտանացուք, զի մի՛ բարկասցի Տէր։ Քանզի թէ օտարաց վտանգելոց, նա և թշնամեաց խնամ տանել հրամայէ Քրիստոս և ողորմել, և պատուհաս սպառնայ՝ որք ոչն առնեն, քանի՞ ևս եղբարցն և անդամոց եկեղեցւոյն։ Աւան որոյ զծերս պատուեցէք և ծերաածեցէք ըստ հրամանին առաքելոյ, և զտկարացեալսն խնամարկեցէք սէտչութեամբ, և պիտոյից նոցա պատրաստութեամբ ըստ չափոյ զօրու-

Թեան ձեռոյ ։ Գիտեմք զի այսպէսեաց բարեկարգութեանց խափանելոյ՝ աղքատութիւն ժամանակիս է պատճառ, բայց ոչ զառաւելն այլ զյօժարութիւն կամացն և զկարն պահանջէ Աստուած ։

Մի՛ զնուիրեալն յեկեղեցիս, կամ կենդանեաց միաբանութեան կամ մեռելոց յիշատակի, անձին միայնոյ սեպհականեսցէ առաջնորդն. այլ 'ի պէտս եկեղեցւոյն ծախեսցէ զնոյն, և հատուցանէ եկեղեցեաւն զհոգևոր սպասն, զի մի՛ յարդար դատաստանին աւուր՝ պահանջեսցէ խորաքննիչն ոք զրուեալն, և զի ոչ ունիցի յայնժամ հատուցանել, զիւրն առեալ բարեգործութիւն փոխարէն տացեն։ Եւ թէ առաջնորդն առաջին՝ զոր առ յաւուրս իւր, 'ի ծախս եկեղեցւոյն վանեաց հաստատուն վկայիւք, և ոչ ժամանեաց յաղագս օրհասին մահու կանխելոյ հատուցանել զպարտսն, երկրորդն՝ որ զկնի նորա ժառանգէ զառաջնորդութիւն և եղբայրութեանն,

պարտական է վճարելոյ. և եթէ անտես առնէ, ունի տոկոսեօք վճարել առաջի Քրիստոսի: Իսկ եթէ ոք ոչ վկայեն նմա 'ի պէտս եկեղեցւոյն առնել զառեալն, ինքն՝ որ էառն՝ հատուսցէ 'ի հանդերձելումն:

Մի՛ ոք ինքնակամ ախտիւ շարժեալ՝ կաշառանօք աւագաց՝ յափշտակեսցէ զառաջնորդութիւն վանաց, առանց ժամանակին առաջնորդի քննութեան և հրամանի: Քանզի երկուք են պատճառ իրաւացի փոխելոյ զվանաց առաջնորդս. կամ վասն զանարժանս գործելոյ. արտաքոյ օրինացն Աստուծոյ, և այն ճշմարիտ վկայիւք, կամ եկեղեցւոյն ոչ շինութեան՝ այլ աւերման լինելոյ պատճառ: Եւ թէ առանց այսոցիկ՝ եթէ յանդգնի ոք հակառակ յառնել, մեղանչէ յօրէնս Աստուծոյ:

Եւ զոր ինչ միանգամ կանոնեալք են, և եդեալ 'ի բանս սրբոց հարցն յաղագս առաջնորդաց՝ առ 'ի խրատ և յուղղութիւն

'ի բանս 'ի գործս, և յամենայն բարեձևութիւնս կարգաւորութեանց, զամենայն բարեացն զոխպան և զօրհնական փութասջիք յանձինս ձեր նկարագրել: Եւ թէ զամենայնն ոչ էք բաւական կատարել, յաղագս ձմեռն գոլով 'ի բարեաց ժամանակիս, գոնեա զյոլովսն գործովք կատարեցէք, և առ պակասեալսն՝ զյօժարութիւն կամաց ունիցիք և զզղջումն և տրտմութիւն վասն պակասութեանն: Զի յորժամ յայսոսիկ հաստատեցէք զմիտս, հակառակ բարւոյ չարն ոչ կարէ տեղի գտանել յոգիս ձեր: Վասն որոյ և մեք աղաչեսցուք զձեզ, զի առաջնորդացդ և առաջնորդելոցդ յաջողեսցէ 'ի յերկնայինն հետևել ճանապարհ մեօք հանդերձ, զի ամենեքեան արժանասցուք խոստացելոց բարեացն, որ 'ի Քրիստոս Յիսուս:

## ԱՌ ԱՌԱՋՆՈՐԴՍ ԵԿԵՂԵՑԻՈՑ ՈՐ ԵՆ ՅԱՇԽԱՐՀԻ, ՈՐ ԿՈՉԻՆ

## ԵՊԻՍԿՈՊՈՍՈՒՆՔ

ԽՈՍՏԵՍՑՈՒՔ և առ դասս եպիսկոպոսաց սրբոց, որ էք տեսուչք կարգեալք յԱստուծոյ հօտուց հաւատացելոց, որ են յաշխարհի ։ Որ թէպէտ և ըստ կարգի երկրորդ եղայք, յաղագս բարեկարգութեանն՝ նախ առ վանականսն և ապա առ որս յաշխարհի են առաջնորդք խօսելով, սակայն ըստ աստիճանի առաջին էք ։ Զորս աղաչեմ նախ քան զամենայն ՚ի միտս ձեր դալ, և ճանաչել իմաստութեամբ զաստիճանին զոր ունիք՝ զբարձրութիւն և զգործ, եթէ ուստի՛ սկսաւ, և վասն էր եղաւ, և զինչ հրամայեցաւ խոնարհել յայնցանէ՝ յորոց հաստատեցին զսա ։ Զի յորժամ զայսօսիկ գիտիցէ ոք որպէս պարտն իցէ գիտել, մի ՚ի յերից աստի շահիցի ։

կամ Ճանաչելովն զծանրութիւն սորա և զդժուարակրութիւն, և ոչ յօժարութեամբ դիմել իւր 'ի դիւրին իրս և 'ի հեշտալին՝ գիտելով զիւր տկարութիւնն, այլ 'ի բաց հրաժարել՝ թէև բռնադատեսցի յիւրոց մտացն ախտից կամ 'ի մերձակայից, որպէս և առաջինն սուրբքն արարին և ուսուցին։ կամ թէ յանձն առցէ զլինելն, փութայ ըստ հաճոյիցն Աստուծոյ. կատարել զհնազանդութիւն գործոյն։ կամ թէ ոչ արասցէ զարժանն, ճանաչէ զպակասութիւն բարւոյն եղեալ յինքեան, և ըզվնասն, և խղճիւ մտաց իւրոց՝ դատէ զանձն, յանցաւոր զինքն համարելով։ Արդ՝ թէ ուստի սկսաւ՝ տատասցուք։

Սկիզբն եպիսկոպոսութեան եղև յայնմանէ, որ երդմամբ առ զքահանայութիւնն 'ի Հօրէ՝ ըստ կարգին Մելքիսեդեկի ոչ ըստ աստուածութեանն, այլ ըստ մարդկութեանն. ոչ յանբանից մատուցանելով պատարագ ըստ Ահարո-

նեանն քահանայութեանն, այլ
զանձն իւր մատոյց կամաւոր պա-
տարագ 'ի վերայ խաչին Հօր՝ վասն
ընդ մեզ հաշտութեան: Եւ զնոյն
քահանայապետութիւն, զոր ինքն
'ի Հօրէ ընկալաւ յաղագս խաչին
մահու 'ի վերայ այնոցիկ՝ զորս
գնեաց արեամբ իւրով, շնորհեաց
աշակերտաց իւրոց 'ի ժամանակի
համբառնալոյն յերկինս ըստ աւե-
տարանին Ղուկայ թէ, Եդ ձեռս
'ի վերայ նոցա, և օրհնեաց զնոսա.
և ապա ինքն, ասէ, վերանայր յեր-
կինս: Զնոյն օրինակ պահանջելով
և 'ի նոցանէ, թէ որպէս ես ոչ
հեշտութեամբ, այլ չարչարանօք և
մահուամբ ընկալայ զքահանայու-
թիւն 'ի վերայ ազգի մարդկան և
դուք նմանապէս մահուչափ նա-
հատակեցարուք 'ի վերայ ոչխարաց
հօտի իմոյ, զոր ստացայ արեամբ
իմով: Որք և արարին ըստ հրամա-
նին, մեռանելով 'ի վերայ ժողո-
վրդեանն՝ որ հաւատացաւ նոցա 'ի
տեառնէ: Եւ յորժամ հանդեր-
ձեալ էին առաքեալքն Քրիստոսի

ելանել յաշխարհէ , ընտրէին 'ի հաւատացելոց անտի արս երկիւղածս և իմաստունս , և կացուցանէին փոխանակ իւրեանց՝ գլուխ ժողովրդեանն 'ի քաղաքս և 'ի գաւառս , զորս և եպիսկոպոս անուանեցին , որ Թարգմանի տեսուչ. Արդ Թէ ուստի սկսաւ , ասացաք :

Պարտ է գիտել և զայն Թէ յաղագս որոյ պատճառի եղաւ 'ի Քրիստոսէ և յառաքելոց նորա այս գործ եպիսկոպոսուԹեան . յայտ է Թէ վասն լինելոյ գլուխ և հրամանատար քահանայից և ժողովրդոց , և որպէս գդէտ՝ աննիրհ աչօք մտացն նայել 'ի վերայ ամենեցուն , զԹիւրեալսն ուղղել , և զուղիղսն հաստատուն պահել յուղղուԹեան : Եւ Թէ զինչ հրամայեցաւ եպիսկոպոսին լինել , և կամ զինչ առնել , զայս Պաւղոս յայտ առնէ առ ՏիմոԹէոս գրելովն. Թէ , Պարտ է եպիսկոպոսին անարատ լինել որպէս Աստուծոյ տնտեսի , հեզ , ցած , պարկեշտ , հիւրասէր , բարեսէր , արդար ,

տուրք, ժուժկալ, մի՛ արծաթա֊
սէր, մի՛ կռուող, մի՛ հարկանող,
այլ հանդարտ և այլն ևս։

Անարատ սեղանն, յամենայն
արատոյ՝ որ ըստ հոգւոյ և մարմ֊
նոյ իցէն՝ մաքուր լինել հրամայէ։
Իսկ որպէս Աստուծոյ տնտեսի՝
զայս յայտ առնէ, զի թէ մարդիկ
նիւթական գոյից իւրեանց տնտես
զանարատսն, ասէ, ընտրեն լինել,
այս ինքն՝ որ ոչ գողասցի աւազա֊
կապէս և ոչ հեղգասցէ 'ի խնամ
տանելոյ գոյիցն և 'ի պահպանու֊
թենէ, քանի՜ ևս արժան է անա֊
րատութիւն և արթնութիւն, և
զգուշութիւն ունել տանն Աս֊
տուծոյ տնտեսաց, որ է եկեղեցի
սուրբ. ոչ զնիւթականս սասեմ զե֊
կեղեցւոյ, այլ զհոգիս մարդկան՝
որք լինին տաճար Աստուծոյ կեն֊
դանւոյ, զորս պարտ է՝ որչափ
զօրութիւն իցէ Աստուծոյ տնտե֊
սին՝ անխախտելի պահել զշինուա֊
ծըս աստուածաբնակ տաճարացն,
և ոչ տալ գողանալ սատանայի իւ֊
րով պղերգութեամբն 'ի հոգևոր

գանձուց անտի, ոչ գիւր և ոչ յորոց զանտեսութեանն ունի գործ ։ Տացէ նոցին օր ըստ օրէ և զբանսն կերակուր 'ի ժամու, ըստ տէրունական հրամանին ։

Հեզ, ցած, պարկեշտ ։ Հեզութեամբն յուշ առնէ նմանող լինել Մովսիսի և Դաւթի, որք 'ի հնումն էին հովիւք ժողովրդեանն Իսրայէլի, թէ նոյնպէս պարտ է և նորոց հովուացս հեզութեամբ և հանդարտութեամբ հովուել զժողովուրդս, որպէս և հովիւք զհօտս, և ոչ ձոխութեամբ և սաստկութեամբ ըստ աշխարհի իշխանաց ։ Իսկ ասելովն՝ թէ ցած, զխոնարհութիւնն ուսուցանէ. զի անդէպ է եպիսկոպոսին՝ հպարտութեամբ և գոռոզութեամբ լինել առ հնազանդեալ ժողովուրդսն, որպէս զգործակալս բռնաւորաց, այլ հեզութեամբ և խոնարհութեամբ բերիլ առ ամենեսեան ։ Որպէս և Քրիստոս յայտնի զինքն տայ օրինակ. Ուսարուք յինէն, ասէ, զի հեզ եմ և խոնարհ սրտիւ ։ Եւ

դարձեալ՝ ցուցանելով զոր ՚ի խո֊
նարհութենէն օգուտն, և զոր ՚ի
հպարտութենէն վնասն առնէ, Ա֊
մենայն որ բարձրացուցանէ զանձն՝
խոնարհեսցի, և որ խոնարհեցու֊
ցանէ՝ բարձրասցի: Եւ Պաւղոս
զգուշացուցանելով զՏիմոթէոս՝
զի մի զանկատարան հոգևոր և
մարմնաւոր հասակաւ վերակոչես֊
ցէ յաշտիճան եպիսկոպոսութեան
առնէ. Մի մատաղատունկ, զի մի
հպարտացեալ ՚ի դատաստանս
անկցին սատանայի: Քանզի սա֊
տանայ ընդդէմ արարչին Աստու֊
ծոյ հպարտացեալ, և վասն այնո֊
րիկ անկաւ յերկնից, և պատրաս֊
կան է յաւիտենական դատաստա֊
նացն, և մշտնջենաւոր տանջանացն:
Վասն որոյ հրամայէ՝ թէ ցած, զի
մի նորին ախտիւն ըմբռնեալք՝ նո֊
րայն դատաստանի և պատժոց
կցորդք եղիցին:

Պարկեշտ. Պարկեշտն անուն մի
է, բայց առ ամենայն շարժումն
հոգւոյ և մարմնոյ պատշաճեալ
բերի պարկեշտութիւն. ՚ի բանս՝

մի՛ շատախօս լինել․ ՚ի կերակուրս
և յըմպելիս և ՚ի զգեստս՝ մի՛ աշ֊
խարհօրէն բերիլ, այլ ըստ նոցա
նմանութեան որոց խաչեալ է աշ֊
խարհ ։ Նա և յընթացս ճանա֊
պարհի՝ ոչ երևելի և կազմեալ երի֊
վարօք և կամ կիսիշօք ամբարձեալ
եղիցին ՚ի բարձրն կոյս, այլ վասն
զտկարացեալն մարմին միայն բառ֊
նալոյ՝ ըստ պատահելոյ կրօղին ։ Եւ
ոչ սրընթաց ձիովք շահատակել, և
շամփք և բազէիւք որսականօք բե֊
րիլ առ երէվայրիս և թռչունս, որ֊
պէս լսեմք զոմանց թէ իցեն ։ Որ
այնքան պատշաճի այսմ ձևոյ ու֊
նողաց այս գործ, որպէս թէ ընդ֊
գտակ կարմիր դիցէ ՚ի գլուխ կրօ֊
նաւորն փոխանակ քուսիթայի, և
զգեստ բեհեզեայ՝ ընդ ասուոյ և
այծեաց ։ Եւ կերակուրքն և ըմպե֊
լիքն՝ ոչ յաճախութեամբ և անկար֊
գութեամբ, այլ պարկեշտութեամբ
և չափաւորութեամբ եղիցին ըստ
աստուածաշունչ գրոց խրատու ։
Եւ բանք բերանոյն՝ մի՛ անմտաբար
խեղկատակութեամբ, կամ աշխար֊

հօրէն զաւակաւնս կամ զանկածութիւնս 'ի լեզուն յեղլով անարգել զոք, այլ բղխեսցէ սրտիւն զբան բարի՝ ըստ մարգարէին, 'ի յօգուտ և 'ի շնորհս լինել լսողաց՝ ըստ առաքելոյ, և մի 'ի վնաս և 'ի տարակուսութիւն, և 'ի պատճառս աղարտելոյ զառաքելականն աստիճան :

Հիւրասէր՝ ըստ Աբրահամու և Ղովտայ, և այլոց նահապետացն, որք այնչափ գտան հիւրասիրութեամբն հաճոյք Աստուծոյ, մինչ զի և զԱստուած հանդերձ հրեշտակօք ընկալան և պատուասիրեցին : Եւ ոչ ասէ հիւրընկալ, այլ հիւրասէր. քանզի հիւրընկալութիւն՝ է երբեմն զի 'ի հարկաւոր ինչ պատճառէ լինիցի, կամ 'ի բռնութենէ, կամ 'ի պատուոյ երեսաց, կամ գովութիւն և փառս որսալոյ 'ի պատուասիրելոցն. իսկ սիրով ընդունելութիւնն՝ յայտացանէ յամենեցունց ազատ է, որով և խնդութեամբ ընդունի զեկեալ հիւրսն, և ոչ տրտմութեամբ. և զուարթ ցուցանէ զկերպարանս, և ոչ

խոժոռ և Թախծեալ դէմս. և ոչ
գժգմնելով ինչ բարբառոյ բանս,
այլ ուրախարարս և խրախճանա֊
կանս, որ յոյժ լաւագոյն է հիւ֊
րոցն, քան զկերակուրսն։ Վասն
այսր պատճառի հրամայէ եպիսկո֊
պոսաց և քահանայից, նա և ամե֊
նայն քրիստոնէից ոչ միայն հիւր֊
ընկալ՝ այլ և հիւրասէրս լինել։

Բարեսէր. և որ են բարիքն զորս
հրամայէ սիրել. ոչ զկարծեցեալ
բարիսն, որ են ախտաւոր բարիք
մարմնականք կամ հոգեկանք և
նիւթք աշխարհի, այլ նախ և առա֊
ջին զճշմարիտ բարին սիրել զԱս֊
տուած՝ որ է սկիզբն և աղբիւր բա֊
րութեան։ Երկրորդ՝ զպատուի֊
րանս նորա, որ է բղխումն յաղբե֊
րէն բարեաց յԱստուծոյ, ըստ
Դաւթայ, Թէ Սիրեցի զպատուի֊
րանս քո քան զամենայն ոսկի, և
զտպազիոն։ Երրորդ՝ զորս 'ի մարդ֊
կանէ լինին բարիք։ Իսկ զհակա֊
ռակ բարւոյն զչարն, այս ինքն՝ ըզ֊
սատանայ և զորս 'ի նմանէ սերմա֊
նեալ զմեղս, ատել և 'ի բաց գառ֊

նալ, ըստ նորին Դաւթայ՝ Թէ, Զմեղս ատեցի և անարգեցի, և զօրէնս քո սիրեցի: Նա և զչարասէրն և զանդարձն ատել և 'ի բաց դառնալ. յորոց յետ բազում անգամ խրատելոյն և ոչ դառնալոյն՝ հրաժարել հրամայէ տէրն, և համարել որպէս զհեթանոս և զմաքսաւոր:

Արդար. արդարութեանն անուն մի է, բայց զամենայն պարունակէ յինքեան զառաքինութիւնս բարեաց որ ունին զնա: Որպէս և արդարքն առաջինք՝ որք վկայեցան յԱստուծոյ՝ Յովբ, և Զաքարիա, և Յովսէփ, և այլ բազումք: Ըստ նոցին օրինակի պարտ է լինել, ասէ, եպիսկոպոսին արդար և ճշմարիտ առաջի Աստուծոյ և մարդկան, և արտաքոյ ստութեան և անիրաւութեան 'ի բանս և 'ի գործս:

Սուրբ. առաջին սուրբ այն է՝ որ մաքուրն է յամենայն աղտոյ, որ պատերազմին ընդ ոգւոյն, որ ոչ խոցուածս ընդունիցի 'ի սկզբանն, և ոչ դեղոց կարօտանայցէ: Երկրորդ՝ սուրբ է, որ թէպէտ և հա-

Վաճնիցն ինչ նետիւք բծից, ոչ ասեմ մինչ 'ի կատարումն, ոչ լինի 'ի ներքոյ անկեալ թշնամւոյն՝ միշտ խոցոտելով զոգին հեշտութեանցն ախտից անդի տուեալ, և երկրորդ բնութիւն զնոյն սովորութիւն առնելով, այլ մանաւանդ զանցեալ խոցուածսն բժշկեսցէ դեղովք ապաշխարութեանն, և յառաջի կայիցն զինուք աղօթից և պահոց, և պահպանութեամբ զգայարանացն զգուշանալ, ոչ վերստին խոցոտել սովորական նետիւքն. այլ այնքան աւել զնոսա, մինչ զի յիշատակ նոցին՝ ոչ հեշտութիւն, այլ տրտմութիւն բերել մտացն: Արդ որ յայսմ մարտին է, յառաջ նոյն և կամ յերկրորդիս, նա է սուրբ, և այսմ առաքելական աստիճանի արժանաւոր: Իսկ որ ախտիցն յօժարութեամբ տուեալ տեղի, և ոչ պատերազմի ընդ նոսա, այլ և խնամով թաքուցանէ յինքեան զխմորն չարութեան, և միշտ խոցեալ ոգւով ոչ ատեայ զխոցմանն պատճառս, այլ և սիրէ ևս,

և ոչ բժշկել փութայ ախտացուածսն, այլ և որ ըստ օրէն նորոգել զմեղսն, ոչ է և ոչ ասի սուրբ այնպիսին, և ոչ ընտրութեանցն Աստուծոյ կոչի պաշտաւորել աստուածայնոցն, այլ իւրով ախտիւն շարժեալ, ըստ ներքևոյն Աստուծոյ՝ ձգի յայնոսիկ 'ի կորուստ անձին ; և բազմաց։

Ժուժկալ · ժուժկալութիւնն իսկ և նիւթ և տեղի իմն է ամենայն առաքինութեանց · զի որ կրէ յինքեան զառ 'ի չարեաց ժուժկալութիւն, կրէ և զբովանդակ մասունս բարեաց · և որ ոչ ունի զսա, անհաստատ է յամենայն բարութիւնս ։ Չի թէպէտ և յօժարի 'ի բարիս և սկսանի, այլ ոչ կատարէ · որպէս այն՝ որ կամեցաւ առանց խորհելոյ շինել աշտարակ ։ Իսկ ժուժկալութեանն սահմանն՝ այս ինչ է ։ Յամենայնէ՝ յորոց օրէնք Աստուծոյ հրաժարեցուցանեն զմեզ, պարտ է ժուժկալ լինել ։ Առաջին խորհրդոցն վատթարաց ոչ տալ տեղի առ միտսն, այլ ընդդէմ կալ ժուժկալութեամբն, և հալածել 'ի սրտէն,

զեր մեր եւ կատարումն հետեւեսցի ։ Զնոյն ժուժկալութիւն պարտ է եւ աչացն դնել պահապան, ոչ թուլապատել հեշտութեամբքն 'ի յարատ հայեցուածս, կամ 'ի չարախնութիւնս, այլ անարատապէս հայել յարարածս Աստուծոյ ։ Եւ ականջացն ոչ յօժարութեամբ ունկնդիր լինել վնասակարաց բանից, այլ օգտակարացն ։ Եւ լեզուոյ ոչ խօսել զայնինչ բանս՝ որով արտաքինքն վարին, որ է անվայելուչ սրբոյ աստիճանին, այլ զպիտանին եւ զգովելին։ Եւ սրտի ոչ բարկանալ 'ի տարապարտուց, այլ հեզ լինել. եւ ձեռաց ոչ յանիրաւի զոք հարկանել, այլ վաստակել զբարիս, եւ յաղօթս ամբառնալ. եւ բերանոյ ոչ մերձենալ տարաժամ 'ի կերակուրս, այլ պահօք դաստիարակել. եւ ոտից ոչ ընթանալ 'ի շաւիղս գայթակղութեան ոգւոց, այլ 'ի ճանապարհս արդարութեան ։ Եւ ոչ եւ միոյ անդամոյ թոյլ տալ ժուժկալութիւնն, որ ունի զնա, շարժել 'ի վատթարա-

դոյնան ։ Արդ այսոքիկ և որ սոցին նման է ժուժկալութեան գործ ։

Մի՛ արծաթասէր․ արծաթասիրութիւն, զոր մայր ասէ Պաւղոս ամենայն չարեաց, թէպէտ և ամենայն ումեք, և յամենայն գործս յորում են մարդիկ՝ վնասակար է, առ թագաւորս, և դատաւորս, և իշխանս, և գործակալս, և առ ամենայն ոք որ յաշխարհի են, բայց առաւել առ հոգևոր առաջնորդութիւնս ։ Քանզի առ աշխարհի իշխանութիւնս՝ ըստ մարմնոյ առնէ վնաս ումեք, կամ անիրաւ դատելով, կամ զրկելով, կամ յափշտակելով, կամ զրպարտելով, կամ գողանալով, կամ սպանանելով, կամ որ յայսպիսեաց իցեն ։ Իսկ առ հոգևորս՝ այս զհոգիս վնասէ ։ Քանզի յայսմ ախտէ է զանարժանս յառաջ կոչել յաստուածայնոցն սպասաւորութիւն'ի կորուստ կոչողացն և կոչեցելոցն, և զարժանաւորս յետս կացուցանել, ընդակիղծս իբրև զասուրս, և զոսուրս

խաչն զպղինձս վարկանելով։ Եւ բիւրք են առ 'ի նմանէ խառնափըն-գործեալ կարգք յեկեղեցւոջ, որք խոտելիք են Աստուծոյ. զորոց Դաւիթ ասէ հոգւովն Թէ խա-տեսցին ոյք ընտրեալ են արծա-Թով։ Վասն այնորիկ հրամայէ առաքեալն՝ վասն եպիսկոպոսաց, Թէ մի արծաթասէր։ Մի կռուող, մի հարկանող. քանզի Թէ Քրիս-տոսի են աշակերտ՝ մանաւանդ Թէ փոխանակ, զհեզութեան նորին ընկալ զօրինակ, որպէս հրամայէ ա-շակերտելոցն, Թէ Ուսարուք յի-նէն, զի հեզ եմ և խոնարհ, զորմէ և Եսայի ասէ՝ Թէ, Ոչ աղաղակեսցէ և ոչ վիճեսցի։ Եւ ինքն իսկ տէրն երանի տայ հեզոց, և խաղաղարա-րաց։ Եւ զի ոչ ամենայնիւ նեղող, պարտ է լինել և հեզ՝ առաջնորդին, այլ առ յանցաւորս զաստան 'ի կիր արկանել, տայ և այնմ օրինակ. զի առեալ խարազան և եհան զվաճա-ռականսն 'ի տաճարէն։ Եւ այն զի չուանեայ, և ոչ 'ի կարծր նիւթոյ, խրատէ զառաջնորդս ոչ զդառնու-

Թիւն միայն 'ի կեր արկանել առ-
յանցաւորս ; այլ և քաղցրութիւն
և ներողութիւն ունել 'ի սաստկըն-
վասն որոյ յաւելու ասել, Թէ Այլ
հանդարտ ։ Եւ զհանդարտու-
Թեանն չափ՝ տէրունականն ու-
սուցանէ խրատ, որ ոչ միայն զինքն,
այլ և զդիմակն հանդարտ առնէ ։
Զի յետ միոյ դիմաց ապտակին՝
զերկրորդն մատուցանել հրամայէ
առաջի անիրաւին. որով Թէ և քան
զզազանս խստագոյն իցէ, քան զոչ-
խարս հանդարտագոյն լինիցի ։ Եւ
ինքն Քրիստոս ոչ աղաղակէր, և ոչ
վիճաբանէր, այլ որպէս զոչխար 'ի
սպանդ վարիւր ըստ Եսայեայ.
զնոյն նմանութիւն պարտ է և ա-
ռաջնորդաց եկեղեցւոյ բերել յին-
քեանս, բայց ոչ առ ամենայն ոք,
և ոչ յամենայն ժամանակի ։ Քան-
զի յիւրոյ անձինն արհամարհու-
Թիւն՝ որ յանիրաւաց, բարւոք է
հանդարտութիւն, և վարձուց ար-
ժանաւոր . իսկ յորժամ զաս-
տուածային պատուիրանս տեսանէ
արհամարհեալ յանդգնամաց, առ

սոյնպիսեան ոչ զհանդարտութիւն, այլ զբարկութիւն 'ի կիր արկանել արժան է ըստ բարւոյ նախանձուն Եղիայի վառելով: Որպէս և տեսին յորժամ առ ինքն զնախատանացն ձգէին բանս՝ դիւահար կոչելով, Ներելով տայր զպատասխանին, ասելով, Թէ Ցիս դև ոչ գոյ: Իսկ յորժամ առ հայր և հոգին, ցասնոյր և վրէժխնդիր լինէր. այսինքն՝ յորժամ նոքա որք զգործսն սատանայի գործէին՝ հայր կոչէին զԱստուած, ասէր. Դուք 'ի հօրէ սատանայէ էք. և յորժամ զգործս հոգւոյն Բէեղզեբուղայ իշխանին դիւաց տային, ասէր. Թէ Ամենայն որ ասէ բան զորդւոյ մարդոյ՝ Թողցի նմա, բայց որ զհոգին սուրբ հայհոյէ, մի Թողցի նմա: Այսորիկ և սոյնպիսիքն են բարւոք և ըստ կամացն Աստուծոյ, երբեմն հանդարտութեան, և երբեմն ոչ հանդարտութեան օրինակք. զոր առաքեալ հրամայէ ունել եպիսկոպոսին:

Ցասնելու և զայս. Վերակացու, ասէ, լինել բանին վարդապետու-

թեան. այսինքն ուսանել և գիտել և սպասաւորել աստուածային օրինացն քարոզութեան, և առաջին զայն ստանալ գործ, և ապա զնիւթականացն հոգաբարձութիւն, որպէս առաքելալքն արարին և ուսուցին: Քանզի ասէին. Ոչ է պարտ մեզ թողուլ զբանն Աստուծոյ, և պաշտել զսեղանս. Թէպէտ և սեղանն այն` աղքատաց էր սպասաւորութիւն, և ոչ անձանց, բայց զի զմարմնոյ կերակրել զաղքատաց` փոքր համարէին 'ի բարիս, քան զհոգիս աղքատացեալս 'ի բարեաց` հոգեւորական կերակրովն, որ է բան վարդապետութեանն. Նորին աղագաւ նիւթականին կերակրոց զստեփանոսեանքն եդին սպասաւորել ժողովրդոցն. Իսկ ինքեանք զբանն Աստուծոյ քարոզէին: Եւ այս է` զոր հրամայէ եպիսկոպոսաց` մերակացու լինել բանին վարդապետութեան, և զողջամիտ մխիթարել, այս ինքն` որք ոչ ունիցին հեւանդութիւն հաւատոյ. որք զաթուն ընդունելին զառաքելական, և

զգործն ստանալ զառաքելոցն, որ-
պէս եղեն հետեւողք նոցին սուրբ
հարքն առաջինք ։ Եւ թէ որք զե-
պիսկոպոսութեանն ունէին աշտի-
ճան՝ ոչ էին վարժեալք վարդա-
պետական բանիւ, պարտ է նոցա
յայնցանէ՝ որք կրթեցան յայս
շնորհ աստուածային՝ մերձ առ ին-
քեանս ունել ․ զի տացեն ծառայ-
ականց յիւրաքանչիւր ժամու ըզ-
բանին Աստուծոյ զկերակուրս ։

Եւ զհակառակորդսն ասէ կշտամ-
բել ։ Երկու գործս դնէ բանին վար-
դապետութեան վերակացու լինելոյն
առաջնորդաց ։ Առաջին, զծառայ-
ականցն կերակրելով ըստ աւետա-
րանական հրամանին ․ Երկրորդ,
զթշնամեան ճշմարտութեան՝ որք
հակառակին հաւատոյն բանի և օ-
րինացն Աստուծոյ և աւանդու-
թեանց եկեղեցւոյ՝ ըմբերանել աս-
տուածային գիտութեամբն, զի մի
զպարզամիտս՝ի ժողովրդոցն պատիր
բանիւքն ձգեսցեն՝ի կորստեան իւ-
րեանց խորխորատ ․ ըստ ընտանի
գազանացն կրկին գործոյ, որք ըզ-

վայրենի գազանանն հալածեն, և զհօտս հովուին պահեն արթնութեամբ, որպէս կարգեցան։ Արդ՝ որք զառաջինն ընկալան 'ի Քրիստոսէ զգործ եպիսկոպոսութեան դասք առաքելոցն՝ այսպէս արարին ինքեանք, և ուսուցին հետեւողաց իւրեանց նոյնին օրինակաւ վարիլ։ Իսկ յայժմուս Թշուառական ժամանակի՝ այնքան հեռացաք 'ի բարւոյ նոցին նմանութենէ, մինչ զի ոչ այլ ինչ գործոյ պատճառ գիտել զեպիսկոպոսութիւնն, որք յօժարին ստանալ զնա, բայց միայն զանազան հնարիւք ինչս ժողովել 'ի հնազանդելոցն, և փառս որսալ 'ի փառաւորչաց. զոր անարգանս պարտ է ասել և ոչ փառս։ Քանզի Ճշմարիտ փառք այն են, որ 'ի ձեռն բարեաց գործոց՝ անուանն Աստուծոյ լինիցի ոք փառաւորութեան պատճառ, ըստ տեառն հրամանին, Թէ Տեսցեն զգործս ձեր բարիս, և փառաւոր արասցեն ըզՀայր ձեր՝ որ յերկինս է։ Իսկ անձին առ 'ի մարդկանէ փառքն՝ ոչ

միայն հակառակ են փառացն Աս-
տուծոյ, ըստ ասելոյն 'ի տեառնէ
զոմանց, թէ Սիրեցին զփառս մարդ-
կան՝ առաւել քան զփառս Աստու-
ծոյ, այլ և 'ի գովչացն առ երեսս՝
զտրտմեալք լինին իբրև զախտաւորս,
յորժամ տեսանեն ցանկութեամբ
զհետ ընթացեալ գովութեան և
փառացն՝ որ 'ի նոցանէ:

Թողից ասել զեւս զծնդականդոյն-
տըն այսր ժամանակի եպիսկոպոսաց
գործ, զի և բազում անարգանաց
և տուժից տանին յայլազգեաց,
ոչ յաղագս աստուածայինն օրինացն
որպէս առաջինն սուրբքն, զի այն
երանութեան էր արժանաւոր, այլ
վասն սնոտի փառացն յուսոյ. և
զգերփեալսն 'ի հնազանդելոյն
պէսպէս հնարիւք և բռնաւորու-
թեամբ, զոր յեկեղեցւոյ պայծա-
ռութիւն և յաղքատաց պէտս հրա-
մայեցաւ լինել, զայնոսիկ ժողովեն
որպէս զմաքսաւոր, և բռնակալաց
աշխարհի նուիրեն: Եւ ոչ թէ 'ի
նոցանէ բռնադատեալ զայն առ-
նեն. քանզի սոյն իսկ յազգէս մերմէ

սկսաւ այս գործ չարութեան , և ծանուցաւ այլազգեաց յանկերկրեղեց ումանց և 'ի փառաւորելոց, որք մի 'ի միոյ վերայ յառնելով առակաւելն անձնցուցանելն զկապալս 'ի վերայ եկեղեցւոյ Քրիստոսի, որպէս զառուծս բաժնից, կամ զննօրկոցաց. որոց մնացեալ չէր Թողութիւն, ըստ առ 'ի յԱստուած մեղուցելոյն։ Որ ոչ միայն քահանայապետութեան չէին արժանի՝ որ զայս գաժան գործ սկիզբն արարին մուծանել յեկեղեցի, և կամ այնոցիկ՝ որք 'ի հայրապետացն ընկեցեալք յաԹոռոյ վասն հոգևոր պատճառի , այլազգեաց բռնաւորութեամբ և յաւելուածով կաշառացն՝ զարձեալ փութան յափշտակել զեպիսկոպոսութիւնն, այլ և ոչ քրիստոնէութեան հաւատոյ և կարգի , և ոչ օրինաւոր քահանայական Թաղման և որոց պատարագին յիշատակի։

Զինչ է ասել և զմօրէն այսոցիկ չարեաց՝ զկայանապէս հակառակացն ճշմարտութեան , և որոց ա-

Թուայ Ղուկասուորդւոյն, որք ինքնա-
շարժ ախտիւք և բռնակալաց աշ-
խարհի հրամանօք, զանձինս իւ-
րեանց յայս աստիճան հոգևոր բար-
ձրութեան ձգեն, և ոչ ընտրու-
թեամբ Աստուծոյ և աստուածայ-
նոց արանց համօրէն ազգիս, որպէս
օրէնն պահանջէ, որով բիւր նե-
խութեան և ապականութեան ան-
դամոց Քրիստոսի լինին պատճառ։
Զի թէ 'ի գլուխն Ահարոնի իջա-
նեն շնորհք հոգւոյն սրբոյ՝ որ է
հայրապետութիւնն, և 'ի գլխոյն 'ի
մօրուսն՝ յեպիսկոպոսութիւնն, և
'ի մօրուացն 'ի գրապանակսն՝ որ է
քահանայութիւնն, և 'ի գրապա-
նացն 'ի զգեստն՝ որք են ժողովր-
դեանն դասք, և արդ՝ զո՞ր արդեօք
իւղ շնորհաց ունիցին, որք յահարո-
նեանն գլխոյ օտարացեալք են, և
ընդ Դաթանայ և Աբիրոնի, որք
հակառակ կացին մեծին Մովսիսի
և Ահարոնի, յօղեալք իցեն գոր-
ծով։ Կամ եթէ զոր կամակորու-
թեամբն մերկացան՝ բաժանեալք
և որոշեալք 'ի շնորհաց, զիա՞րդ

կարկեցին զինքեանց կորուսեալն այլոց ընձեռել։

Որք յաղագս սոյն և այսր իրի յանդգնութեան 'ի ժամանակս տեառն մերոյ և եղբօր Գրիգորիսի կաթողիկոսի սրբոյ,'ի սուրբ լեառնն՝ մեծաւ սիւնհոդոսիւ սուրբ և առաքինեաց արանց ազգիս Հայոց ժողովեալ աւելի քան զերկու հազար և զհինգ հարիւր անձանց, եպիսկոպոսաց, վարդապետաց, հարց վանականաց, և միանձանց սրբոյ լերինն, Նզովեալ հերքեցան յեկեղեցւոյ Քրիստոսի, և սրով բանին Աստուծոյ հատեալ 'ի բաց ընկեցան՝ որպէս զնեխեալ և զփտեալ անդամ յառողջ մարմնոյ եկեղեցւոյ, անէծս ցաւագինս կուտեալ 'ի գլուխ նոցա։ Որոց ոչ եկեալ 'ի միտս, և ոչ զգացեալ զմահացու ցաւս հոգւոց՝ առնլով զդեղ կենաց 'ի դեղատուէ իմաստնոյ, և բժշկել զղջմամբ և ապաշխարութեամբ'ի մահահամբոյր պատուհասէն, այլ հանդոյն իժի և քարբի խցեալ զլսելիս աստուածային բա֊

նին, դեռ ևս յամառեալ բոլորովին 'ի նոյն չարութեան. արբեալ և յիմարեալ փառամոլ ախտիւ իւրև զգազանս կատաղիս ոչ դադարեն մուծանել զխռովութիւն յառագաստ խաղաղութեան երկնաւոր հարսնարանի փեսայացեալ բանին, զոր արեամբն գնեալ ազատեաց 'ի չար մշակութեանց բռնաւորութին: Որոց արիւն 'ի գլուխ իւրեանց եղիցի, և վրէժ չարութեան գործոց նոցին յանձինս իւրեանց լիցի:

Այլ դուք՝ որք ճշմարտութեանն էք Ջատագովք, և 'ի նոյն՝ բարեաց հետևողք, աղաչեմք՝ պատրաստ լերուք ամենայնիւ 'ի գործ հոգևոր հովուութեանդ, զոր ընկալայք 'ի ճշմարիտ հովուապետէն, ամենայն զգայարանօք ըստ վերոգրեալ աւանդանիդ և ըստ կանոնական խրատու սուրբ առաքելոցն, և նոցին հետևողաց: Որպէս զի համարձակութեամբ և պարզերես կացջիք առաջի ատենադալին ձեզ զատադանող պատուիրանին, տալով զհամար շահիցն նոցա կրկնապատիկ յաւե-

լուածով ։ Ցորմէ լսիցէք զբարբառն երանաւէտ, եթէ Ծառայ բարի և հաւատարիմ, որով 'ի սակաւուց հաւատարիմ ես, 'ի վերայ բազմաց կացուցից զքեզ, մուտ յուրախութիւն տեառն քոյ ։ Որում և մեզ լիցի աղօթիւք ձեր հանդիպել 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր ։

## ԱՌ ԴԱՍՍ ՔԱՀԱՆԱՅԻՑ ։

ԴԱՐՁՈՒՍՑՈՒՔ այսու հետև զկարգ բանիս առ դասս քահանայից, որք աշխատանաւ երկրորդ էք եպիսկոպոսացդ, և կարգեալ էք քահանայական գործառնութեամբ՝ նուիրել զամենայն հոգիս Աստուծոյ, ծնանելով զամենեսեան մկրտութեամբ սուրբ աւազանաւն յորդեգրութիւն հօրն երկնաւորի, և 'ի ժառանգակցութիւն Քրիստոսի Աստուծոյ, և մեզա-

քաւիչ մարմնոյ և արեանն տեառն բաշխմամբ կերակրել զհոգիս նոցա յանմահութիւն ։

Եւ արդ՝ աղաչեմ զամենեսեան սիրով Քրիստոսի, բանալ զաչս մտաց և զարթնուլ ՚ի մահահրաւէր թմբրութենէ կենցաղոյս, և ճանաչել զզօրութիւն երկնային գործոյդ՝ յորս հրաւիրեալ կոչեցայք, որ և հրեշտակական գերաշխարհիկ զօրութեանցն է գեր ՚ի վերոյ այս աշտիճան, որք անարատութեամբ և սրբութեամբ պաշտեն զսա ։ Եւ որովհետև արժանի եղէք յերկնայինն գործ մատուցանել զանձինս, մի՛ և մի՛ իւիք պատճառս տայք արատոյ անկանել ՚ի պաշտօնդ ձեր, ըստ առաքելոյն խրատու . այլ արխաբար և յօժարամիտ սրտիւ առանց ծուլութեան զկանոնեալ սահմանս աղօթից սուրբ հարցն անթերի կատարեցէք, ըստ իւրաքանչիւր ժամու ։ Եւ մաքուր հոգւով, և սուրբ սրտիւ, և անարատ հաւատով, և մեծաւ յուսով, և պարզ մտօք, և կատարեալ սիրով,

ահիւ և դողութեամբ սպասաւորեցէք աստուածային խորհրդոյն, և մի՛ իբրև ջուր ընդ խողովակ անցանիցէք անմտաբար ընդ խորհրդական բանս աղօթիցն՝ զոր մատուցանէք. եթէ սաղմոսերգութիւնք են, և եթէ ընթերցուածք սուրբ գրոց, եթէ պաշտօներգութիւն, և եթէ քահանայական աղօթք սրբոյ պատարագին, և այլոց կարգադրեալ կանոնիցն. այլ յոյժ մտաւորաբար. և թէ գոյ հնար՝ արտասուօք, և մեծաւ երկեղիւ, որպէս թէ դուք նորոգապէս բղխէք զնոսա 'ի սրտէ և 'ի մտաց ձերոց: Զի ամենեքեան խնդրըւածք են առ Աստուած, զանազան և պէսպէս պարգևաց և բարութեանց մեզ առ 'ի նմանէ: Եւ ինքն պարգևատուն բարեաց Աստուած յորժամ տեսանէ զջերմեռանդն հայցուածս խնդրողին, առաւել առաւելապէս շնորհէ ըզխնդրեալն. ըստ այնմ՝ եթէ Որ խնդրէ առնու, և որ զննի:

Գիտասջիք, զի յառաջագոյն 'ի

ժամանակս առաքելոցն՝ մինչև ու-
նոր ծաղկեալ գարունն հաւատոյ,
ամենեքեան լի էին հոգւով սրբով,
և շնորհօք հոգւոյն յինքեանց
մտաց խօսէին զբանս աղօթից ըստ
ժամուն պիտոյից՝ զպատարագին
խորհրդածութեան, և զամենայն
կատարողականութեանց։ Իսկ 'ի
ժամանակս յետինս քանզի հան-
դերձեալ էր ձմեռն մեղացն սառ-
նամանեօք խստութեան ցրտացու-
ցանել զջերմութիւն առ Աստուած
սիրոյն յամենեցունց, և բթացու-
ցանել 'ի շնորհաց սուրբ հոգւոյն,
տեսեալ հոգւոյ ականք սուրբ և
հոգեկիր վարդապետք եկեղեցւոյ,
և այնր աղագաւ գրով աւանդեցին
զամենայնն զկնի եկողացս. զի
նոքօք անվրէպ և անսայթաք ա-
ռաջնորդեալք կատարեսցուք զա-
մենայն կարգաւորութիւնս եկե-
ղեցւոյ։ Վասն որոյ զսոյն մտաւո-
րաբար պարտ է մատուցանել, և
մեծաւ հաւատով և յուսով։

Ծանիրո՛ւք և զայս, զի կոչումն
անուան քահանայութեանց ձե-

րոյ՝ ոչ է 'ի մարդկանէ, և ոչ 'ի ձեռն մարդոյ, այլ յայնմանէ՝ որ կոչեցաւն քահանայ ըստ կարգին Մելքիսեդեկի, որ և ինքն է ճշմարիտ քահանայ, և քահանայապետ և պատարագ Աստուծոյ հօր. և նա ետ ձեզ զկոչումն անուան իւրոյ, և յանձն արար ընդ անուամբն և զգործն իւր, հովուել զժողովուրդ իւր, և ուսուցանել միշտ զգործս բարիս, և տալ զանձն օրինակ բարեաց ամենեցուն. ըստ որում և Պաւղոս գրէր առ Տիմոթէոս, թէ Մի՛ անփոյթ առնէր զշնորհացդ՝ որ տուաւ քեզ. 'ի ձեռնադրութենէ երիցութեան: Եւ դարձեալ՝ թէ Քահանայք կրկին պատուոյ արժանի եղիցին, որք աշխատեսցին բանիւ և վարդապետութեամբ: Վասն որոյ աղաչեմք, զի ըստ անուանդ կոչման, և զգործն կատարեցջիք: Եւ որպէս հարք և ծնողք ժողովրդեան ձերոյ՝ յամենայն ժամ տուք նոցա զհոգևոր խրատս, միշտ ուսուցանելով յեկեղեցւոջ, 'ի հրապարակս, և առ֊

տըններն զամենայն որ՝ ըստ իւրաքան-
չիւր հասակի, զգուշացուցանե-
լով յաստուածայինն ։

Եւ Թէպէտ և ամենայն բարեաց
տեսանկօք և առաքինութեամբ կա-
տարեալք իցէք, սակայն զեկեղե-
ցւոյ պայծառութեանն է և զսրբոյ պա-
տարագին պատուական և մաքուր
զգեստուց մի անփոյթ առնէք, որ-
պէս լսեմք զոմանց՝ եթէ հաս-
բակաց զգեստուք, և աղտեղեալ
որեխօք ելանեն 'ի բեմն սուրբ, և
զսարսափելի խորհուրդն անխոր-
հրդական զգեստուք կատարեն և
զայն՝ 'ի պարկեշտութիւն անձանց
համարին, հանելով զժողովուրդն
արտաքոյ եկեղեցւոյն, և զդուռն
ընդդէմ ձգելով. և ոչ միայն,
այլ անմտաբար 'ի բամբասանս
բերին ամանց եկեղեցեաց, և 'ի
մեր բարեզարդ կարգաւորու-
թիւն ։

Եւ արդ՝ մի ոք վայրաբար և
անխորհուրդ համարեսցի զքահա-
նայականն զգեստ. զի որպէս 'ի
հնումն առ Մովսէսիւ նկարեցաւ.

խորհուրդ որոյ պատարագին Նախ օրինակօք, և 'ի Նորումն կատարեցաւ 'ի Քրիստոս, Նոյնպէս և քահանայք հնոյն՝ Նորոյ քահանայութեանս էին օրինակք. և պատմուճանն Ահարոնին՝ Նորոց քահանայիցս զգեստուցն յապացոյց: Զոր և սուրբ առաքեալքն գործակցութեամբ հոգւոյն որոյ կատարելապէս յարգարեցին զկրօնս եկեղեցւոյ, և յամենայն տեղիս ձեռնադրեալ կարգէին քահանայս և սարկաւագունս, և պատուիրէին ներքին և արտաքին մաքրութեամբ սպասաւորել փրկական խորհրդոյն, որ և ընդ բնաւ աշխարհս մեծագարդ պայծառութեամբ զարդարեալ լինէին եկեղեցիք ընդհանուր ազգաց քրիստոնէից, պայծառազգեստ վայելչութեամբ սպասաւորեալ սրբութեանցն: Նա՝ և առաւել և հայաստանեայս ազգի եկեղեցիք 'ի սուրբ Լուսաւորչէն մերմէ սկսեալ՝ մինչև յաւերումն աշխարհէն 'ի հինանց: Բայց այսացիկ բարւոյ աւանդութեանց հա-

կատարելոյ առաջնոց հարցն սր_
բոց, ոչ այլ ինչ է պատճառ՝ քան
թէ տգիտութիւն և ինքնօրէն անձ_
նահաճ կամապաշտութիւն, որք
ոչ տեսին զառաջին պայծառու_
թիւնն՝ մինչ ողորմութեամբ տեառն
մեր էր երկիր, այլ 'ի հալածանացս
ծնեալ ժամանակի՝ ընդ խորթնա_
տեսակս նայեցան տգեղութիւն,
որովք կապեալ են ամենայն սուրբք
ազգ մեր յաղքատութէ որպէս ընդ
երկաթոյ՝ 'ի նեղքոյ լծոյ ծառայ_
ութեան իւրաքանչիւր ազգաց,
ուր և կցեն: Այլք և հարկաւոր ախ_
տոյիցն կարօտ են ըստ մարմնոյ,
թող թէ պայծառութեան եկեղե_
ցւոյ 'ի խնդիր, և ըստ հոգւոյ՝ ա_
մենեքին անշարժք 'ի բարիս, զի ցա_
մաքեցաւ սէրն՝ ըստ տէրունական
բանին: Ոչ որպէս յառաջին հա_
լածանացն ժամանակին՝ Նոր հաւա_
տացեալքն 'ի Քրիստոս, յորս
այնքան զօրանայր սէրն Աստուծոյ՝
մինչ զի 'ի հալածանան առաւել
մեծամեծս և վայելուչս տեսանեմք

չինեալ 'ի նոցանէ եկեղեցիս, քան մինչ խաղաղութիւն եղև եկեղեցւոյ: Եւ արդ՝ տգիտաց զխաւարին զայս տեսանելով անկարգութիւն որ յաղքատութենէ և յաւերմանէ, և զբարկութիւնս՝ որ յԱստուծոյ՝ աւանդութիւնս և օրէնս կարծելով, և նորին աղագաւ յանդգնին հակառակել աստուածաւանդ հրամանացն:

Այլ մեր 'ի բաց թողեալ զանիմաստ հակառակորդացն զպնդմունս, հնազանդ եղելոցդ օրինաց Աստուծոյ՝ 'ի վերայ ասացելոցս և զայս աւանդեսցուք պատուիրան՝ որ վասն այսր իրի խնդրոյ: Ոչ ունել քահանայից յԱստուծոյ և 'ի մէնջ հրաման՝ աւանցսուրբ ծածկութեան պատարագամատուցին ընդէնլոյ՝ մատուցանել զսուրբ պատարագն, կամ աւետարան կարդալ, կամ խաչ առնուլ 'ի ձեռս, կամ յայլ ինչ 'ի սրբութեանն մերձենալ. և այսոքիկ զորս գրեցաք, սակաւուք, և որ նման սոցին՝ սր-

տաքըին մարդոյս զգուշութիւն, որոց հանդերձեալ են սպասաւորել աստուածայնոցն ։

Աստացուք և յաղագս Ներքին մարդոյն, որ և օրինակ է արտաքնոյն զարդ՝ սորին հոգևոր պայծառութեանն զարդու ։ Մի՛ ոք 'ի ձենջ անարժանութեամբ աստուածային խորհրդոյն սպասաւորեսցէ, և կամ զոք 'ի ժողովրդեննէն անքըննաբար հաղորդեցուսցէ, զի մի՛ ընդ Յուդայի, և ընդ խաչահանուացն դատապարտեսցի ։ Մի՛ ոք ծածկելով յոգւի իւր զգործս մեղաց առանց ճշմարիտ խոստովանութեան, և այնպէս մատիցէ 'ի տէրունական խորհրդոյն սպասաւորութիւն, զի մի՛ զբարկութիւնն Աստուծոյ շարժեսցէ 'ի վերայ իւրեան և աշխարհին, և 'ի բաց ընկեսցի յաստուածային հարսանեացն. քանզի զխաւարատեսակ մեղացն զգեցեալ պատմուճան՝ եմուտ յեկեղեցի Աստուծոյ, որ է օրինակ վերին հարսանարանին, որ և լսելոց է զահագին բարբառն, Ընկեր, զիարդ

մանր այսր, զի ոչ ունէիր հանդերձ հարսանեաց ։ և թէ, Հանէք զդա արտաքս, ա՛յս է յարքայութենէն, և կապեցէք զդա ընդ մէջ, ա՛յս ինքն զհաւատն և զշնորհս սուրբ աւազանին և զքահանայութեանն 'ի բաց մերկացուցէք ։ և մասն զորա ոչ ընդ հաւատացեալս, այլ ընդ անհաւատսն լիցի ։ Քանզի ոչ հաւատայց՝ եթէ մարմնոյ և արեան Աստուծոյ ապաստաւորէ ։ այլ հաց լոկ և գինի համարեցաւ, և վասն այնորիկ՝ անարժանութեամբ ժամբ-հեցաւ մերձենալ, և առանց խոստովանութեան ։

Եւ արդ աղաչեմք, մի որպէս մարմնական ինչ գործ վարկանելով զերկնային խորհրդոյն կատարումն, այլ ահիւ և դողութեամբ սպասաւորեցէք աստուածայնոցն ։ զի թէ սերովբէն սուրբ յօրինակն ունելեաց կարօտանայր, մերձենալով 'ի կայծակունն որ 'ի վերայ սեղանոյն, մեզ հողեղինացս և մեղաւորացս՝ քանի՜ մաքրութիւն և զգուշութիւն պիտոյ է յաղագս

առ ճշմարտութիւն այնր օրինակի
մերձենալոյ ։ Վասն որոյ զմիտս և
զզգայարանս պատրաստականս էք պատրաս-
տել յամենայն [illegible] իրաց
սպասաւորք որոյ խորհրդոյն
յամենայն ժամանակի , առաւել
յայնմ աւուր՝ յորում՝ յԱստուած
մերձենալ համարձակեալ իցէք ։
Զի թէ Մովսէսի ասացաւ յԱս-
տուծոյ՝ ոչ կոխել մեռելոյ մոր-
թովք զտեղին ուր երևեցաւ հուր
աստուածութեանն , որքան մեզ
արժան է լուծանել նախ զմեռե-
լութիւն մեղաց 'ի մէնջ , և ապա
յաստուածայինն մերձենալ խոր-
հուրդ ։ Զի ոչ միայն խօսել
ընդ Աստուծոյ ըստ Մովսիսի
կայ մեր առաջի , և կամ տեսա-
նել զկերպարան Աստուծոյ , այլ և
ձեռօք շօշափել զանշօշափելին , և
շրթամբք համբուրել զտէրն , և բե-
րանով ճաշակել զկերակրիչն ամե-
նայնի , և 'ի սիրտս ընդունել , և
հոգւով միանալ ընդ նմին , և լինել
Աստուած շնորհօք ընդ Աստուծոյ
միաւորելովն ։ Վասն որոյ՝ զանսա-

նեղիս և զկսեղիս և զկեղու և զամե֊
նայն անդամս խրատեցէք 'ի բարիս
շարժել, և 'ի չարիս անշարժ մնալ.
և ողջախոհութեամբ և սրբու֊
թեամբ յաշխարհական ցանկու֊
թեանց, և զբօսանաց զմիտսն ամ֊
փոփելով, և ապա յերկնայնն խոր֊
հրդոյն ապաստաւորութիւն մերձե֊
նայցէք: Զի մի 'ի դատաստան ան֊
ձանց ուսուցէք և ընկալցէք զմարմին
և զարիւն տեառն ըստ առաքելոյ,
այլ 'ի քաւութիւն մեղաց, և 'ի
մաքրութիւն հոգւոց, ձեզ և ժո֊
ղովրդեան ձերում: Եւ մի լիցի՝
որպէս լուաք զոմանց աներկեղ
քահանայից՝ որ 'ի քաղաքս բնա֊
կեն, եթէ յառաւօտէ մինչև ցժամ
պատարագին 'ի վաճառափողոցս
քաղաքին շրջին 'ի տուրևառու֊
թիւն վաճառաց, յորս բազում
նեղք հարկանին յոգւոյն ընդ մուտս
զգայարանացն, 'ի տեսանել և 'ի
լսել, 'ի խօսել և 'ի գործել զան֊
պատշաճն, և անտի դարձեալ՝
մտանել յանդգնին յեկեղեցիս, և
յայլոց յահանայից կազմեալ նշխա֊

րաւ՝ առանց տաղտկանաց և աղօթից մատուցանեն զպատարագն ։ Որոց պատուիրեմք՝ յայսմհետէ 'ի բաց կալ յայդպիսի անկերկեղ և չար սովորութեանց, և նախ սրբել զմիտսն, զխղճերոյն և տառանջեանն աղօթիւք. որպէս վերադրոյին զրեցաք, և ապա մատնել յեկեղեցի սուրբ, և յանդիմանն լինել Աստուծոյ սրբով պատարագաւն ։

Մի՛ ոք 'ի քահանայից առանց գիտելոյ զխոստովանութիւն մարդոյ՝ զհաւատոյն 'և զգործոցն, կամ իւր ինքեան, կամ այլում քահանայի, տացէ նմա զհաղորդութիւն մարմնոյ և արեանն Քրիստոսի 'ի յառողջութեան կամ 'ի հիւանդութեան, և կամ զխոտելով զանարժանութիւն ուրուք՝ այս յաղագս մարդահաճութեան զաստուածային խորհուրդն, ծածկելով այնու զկարծիս չարութեան՝ որ զնմանէ ։ Զի այնպիսին է, որ տայ սրբութիւն շանց, և առաջի արկանէ զմարգարիտս խոզաց ։

Մի՛ ոք 'ի քահանայից պատա-

բազդողաց ոխակալութիւն ունե-
լով'ի սրտին ընդ ումեք, մնասցէ
յաստուածային խորհրդոյն կա-
տարումն, և անընդունելի առնիցէ
զպատարագն առաջի Աստուծոյ,
այլ նախ հաշտեսցի ընդ եղբօրն՝
ըստ հրամանին Քրիստոսի, և ա-
պա եկեալ մատուսցէ զպատա-
րագն: Նոյն սահման և'ի վերայ
հաղորդականացն եղիցի. բայց այս
օրէնք առ համապատիւ եղբարսն
է՝ քահանայից առ քահանայս, և
աշխարհականաց առ՝ աշխարհա-
կանս: Իսկ եթէ քահանայն ընդ-
բանիւ արգարեալ զոք'ի ժողովրդա-
կանացն վասն պատուիրանազանց
լինելոյ յօրէնս Աստուծոյ, և նա
հպարտացեալ՝ ոչ գայ յուղղու-
թիւն, և ոչ խնդրէ թողութիւն'ի
քահանայէ անտի, քահանայն ա-
ռանց խղճի մատուսցէ զսուրբ պա-
տարագն, և ընդ դատապարտու-
թեամբ է այն՝ որ ոչ ուղղեցաւ, և
ոչ խնդրեաց զթողութիւն: Քան-
զի և Քրիստոս ոչ վայրապար հրա-
մայէ առնել թողութիւն տրտմե-

ցուցանողէն, այլ եթէ անկեալ առաջի խոստանայ ապաշխարել, յայնժամ, ասէ, շնորհեսցի առ 'ի քէն թողութիւն յանցանացն՝ զոր առ քեզն յանցեաւ։ Իսկ եթէ մեղուցեալն առաջի անկեալ քահանային և խոստանայ գալ յուղղութիւն, և քահանայն յաղագս մարմնական ինչ պատճառի ոխակալ լինելով ոչ առնիցէ թողութիւն, չէ պարտ նախ քան զհաշտելն մատուցանել պատարագ։

Նա և առ քահանայս բազում պատճառս յօդէ սատանայ խռովելոյ ընդ միմեանս, և միաբանելոյ, և յոխակալութեան և 'ի նախանձու ախտս տանջելով զորդին զամենայն ժամանակս, որ և առ ոգէաս և վայրենաբարոյս առաւել զօրանայ։ Է՝ որ վասն յափշտակելոյ 'ի ժողովրդենէ միմեանց ագահութեան ախտիւ, և է՝ որ յաղագս հարստահարելոյ զընկերն փառասիրութեան աղագաւ, և յայլ ևս յոլովագոյն ատելութեան պատճառաց, լուծանի 'ի

բազդոդաց ոխակալութիւն ունե-
լով՝ի պատին ընդ ումեք, մատիցէ
յատուցանողին խորհրդոյն կա-
տարումն, և անընդունելի առնիցէ
զպատարագն առաջի Աստուծոյ,
այլ նախ հաշտեսցի ընդ եղբօրն՝
ըստ հրամանին Քրիստոսի, և ա-
պա եկեալ մատուսցէ զպատա-
րագն: Նոյն սահման և՝ի վերայ
հաղորդականացն եդեալ. բայց այս
օրէնք առ համապատիւ եղբարսն
է՝ քահանայից առ քահանայս, և
աշխարհականաց առ՝ աշխարհա-
կանս: Իսկ եթէ քահանայն ընդ
բանիւ արարեալ զոք՝ի ժողովրդա-
կանացն վասն պատուիրանազանց
լինելոյ յօրէնս Աստուծոյ, և նա
հպարտացեալ՝ ոչ գայ յուղղու-
թիւն, և ոչ խնդրէ թողութիւն՝ի
քահանայէ անտի, քահանայն ա-
ռանց խղճի մատուսցէ զսուրբ պա-
տարագն, և ընդ դատապարտու-
թեամբ է այն՝ որ ոչ ուղղեցաւ, և
ոչ խնդրեաց զթողութիւն: Քան-
զի և Քրիստոս ոչ վայրապար հրա-
մայէ առնել թողութիւն տրամե-

ցուցանողին, այլ եթէ անկեալ առաջի խոստանայ ապաշխարել, յայնժամ, ասէ, շնորհեսցի առ 'ի քէն թողութիւն յանցանացն՝ զոր առ քեզն յանցեաւ: Իսկ եթէ մեղուցեալն առաջի անկեալ քահանային և խոստանայ գալ յուղղութիւն, և քահանայն յաղագս մարմնական ինչ պատճառի ոխակալ լինելով ոչ առնիցէ թողութիւն, չէ պարտ նախ քան զհաշտելն մատուցանել պատարագ:

Նա և առ քահանայս բազում պատճառս յօդէ սատանայ խռովելոյ ընդ միմեանս, և միճարանելոյ, և յոխակալութեան և 'ի նախանձու ախտս տանջելով զոգին զամենայն ժամանակս, որ և առ տգէտս և վայրենաբարոյս առաւել զօրանայ: Է՝ որ վասն յափշտակելոյ 'ի ժողովրդենէ միմեանց ագահութեան ախտիւ, և է՝ որ յաղագս հարստահարելոյ զընկերն փառասիրութեան աղագաւ, և յայլ ևս յոլովագոյն ատելութեան պատճառաց, լուծանի 'ի

նոցանէ սիրոյն պատուիրան, և Քրիստոսի աշակերտութեանն նըշան, առ որս ասաց. Թէ, Յայսմ ծանիցէ աշխարհ զձեզ՝ եթէ իմ աշակերտք էք, եթէ սիրիցէք զմիմեանս: Որոց և մեք զառաքելականն աւանդեմք պատուիրան, եթէ Արեգակն 'ի վերայ բարկութեան ձերոյ մի մտցէ. Եւ Մի տայք տեղի սատանայի. այս ինքն՝ զի թէ զխաղաղութիւնն՝ զոր ետ Քրիստոս աշակերտացն, և նորօք մեզ, փութայ հանել 'ի ձէնջ խռովարարն, և զխռովութիւնն իւր փոխանակ խաղաղութեանն սերմանել 'ի միջի ձերում, մի տայք նմա տեղի՝ երկար ժամանակաւ բնակել 'ի յոգիս ձեր, զի մի զտաճարդ Աստուծոյ որ 'ի ձեզ՝ չարին առնիցէք բնակութիւն, ատելութեամբն և ոխակալութեամբն: Այլ ընդ շարժել բարկութեան եռանդան բոցոյն՝ որ 'ի փչմանէ անտի նորա բորբոքի, շիջուցէք զնա խաղաղարար ջրով հոգւոյն նախ քան զմտանել արեգականն, որ-

պէս զի խաղաղասէր լինելովն՝ որդիք Աստուծոյ լինիցիք, ըստ երանութեանն խոստմանն, զճշմարիտ որդւոյն Աստուծոյ զգործ արդեամբք 'ի ձեզ կատարելով, այն՝ որ արար խաղաղութիւն յերկինս և յերկիր արեամբ խաչին իւրոյ։

Իսկ եթէ ոք 'ի քահանայից խռովելոց ընդ ընկերի՝ սիրէ զատելութիւն քան զսէր, և զխռովութիւն քան զխաղաղութիւն, և ոչ լուծանէ զտրտմութեան պատճառն, և հաշտեսցի ընդ եղբօր իւրում 'ի խոնարհել միոյն և 'ի խնդրել զհաշտութիւն, մի իշխեսցէ քահանայագործութիւն առնել, որչափ զդեռն տրտմութեան և բարկութեան յինքն բնակեցուցանէ. զի Զի՞նչ հաղորդութիւն է լուսոյ ընդ խաւարի, ասէ առաքեալն, կամ Քրիստոսի ընդ բելիարայ։ Քանզի գրեալ է. Թէ, որպէս որ զսէրն ունի՝ զԱստուած յինքն բնակեցուցանէ, զի Աստուած սէր է, նոյնպէս և որ զատելութիւնն ունիցի՝ զսատանայ յանձն իւր զար-

մանէ, զի կերակուր է նորա ատելութիւն, որպէս և ամենայն գործք չարեաց ։ Վասն որոյ ամենայն ոք 'ի ձէնջ՝ որքան ատելութեան ախտին տայ տեղի սատանայի ընդարձակագոյն յինքեան, Քրիստոսի մարմնոյն և արեանն ոչ է արժանի ընակութեան. և թէ ոխակալութեան և նենգութեան հոգւով յանդգնի առնուլ զնա, նման լինի Յուդայի մատնչի, որ յետ պատառոյն՝ ապա եմուտ 'ի նա սատանայ ։

Եւ արդ աղաչեմ զամենեսեան զձեզ, դժուարաշարժս լինել 'ի մեծաբանութիւնս և 'ի կռիւս, և դիւրաշարժս 'ի հաշտութիւն և 'ի խաղաղութիւն ։ Եւ մի՛ ոք որ զօրաւորն է 'ի մարմնական յառաջադիմութիւնս՝ ջանայ զրկել զընկերն և անիրաւել, զի մի՛ զայն՝ որ առնէ իրաւունս զրկելոց զԱստուած, դատաւոր և դատախազ իւր կացուցանէ, և զոր 'ի յանցաւոր կեանս զրկեաց, 'ի յանանցն վաշխիւ հատուցանէ ։

Այլ աւագագոյնքդ 'ի ձէնջ և հաստատունքդ յիմաստութեան , շահեցարուք զկրսերագոյնսն և զպակասամիտսն , ներող լինելով առ նոսին և երկայնամիտ , որով և վարձս ընկալջիք յԱստուծոյ 'ի շահել զեղբարսն ։ Իսկ կրսերագունիցդ , պատուէր տամք զխոնարհութիւն , և զհնազանդութիւն ցուցանել աւագագունիցն , և իմաստնոց քահանայիցն ։ Եւ յայսպիսի բարեկարգութիւն լինելով ձեր՝ անունն Աստուծոյ փառաւորութեան լինիք պատճառք առ արտաքինսն , և ժողովրդեան ձերոյ՝ բարեացնախանձու ։ Իսկ եթէ 'ի վիճմունս , և 'ի հակառակաբանութիւնս և 'ի հայհոյութիւնս միմեանց տեսանեմ զձեզ , յորս են բազումք՝ մանաւանդ թէ ամենեքեան՝ բայց 'ի սակաւուց , անունն Աստուծոյ վասն ձեր հայհոյի 'ի տեսողացն արտաքնոց , և ժողովուրդ ձեր առաւել խոտորին 'ի պատուիրանացն Աստուծոյ , և զպատիժ դատաստանին դուք կրէք

զթիւրելոցն ձերում պատճառաւ յուղիղ ճանապարհէ աստուածային օրինացն:

Մի՛ ոք 'ի ձէնջ վիրեսցէ զկուրութիւն ազատութեան քահանայական ուսմանց յաղագս ծառայութեան, կամ աշխարհական զբաղմանց. այլ թէ և ոչ ամենեցուն ամենայն շնորհօք կատարեալ լինել հնար է, զոր և աստուածայինն օրէնքն պահանջեն 'ի քահանայից, սակայն 'ի հարկաւորսն պարտին անթերի լինել: այս ինքն զեկեղեցական գիրս ուղիղ ընթեռնուլ, և զմանր ուսմունս ձայնաւորացն պաշտել յեկեղեցիս. և ապա գալ 'ի ձեռնադրութիւն քահանայութեան: Բայց լսեմք զոմանց սուտ քահանայից, զի ոչ միայն յայլ ուսմանէ են օտարք յաղագս հեղգութեան, մանաւանդ թէ վասն անհաւատութեան, այլ և զսաղմոսն Դաւթի ոչ գիտեն բովանդակ, առանց որոյ՝ զնոսին զհարիւր և զյիսունսն խօսել բերանով ընդ Աստուծոյ, ոչ մատուցին պատարագ-

ըստ աւանդութեան կանոնի հարցն սրբոց: Ոմանք և ոչ զբանս աղօթից սրբոյ պատարագին գիտեն 'ի բերան, և սուտ պատարագաւն խաբել կարծեն զանխաբելին Աստուած, և զմարդիկ, և զհոգիս ննջեցելոցն, առ աչս մարդկան կեղծաւորելով. որոց դատաստանն առաւել է քան զամենայն մեղաց՝ առաջի Աստուծոյ. որք և ոչ իսկ են արժանի այլ ևս մատուցանելոյ պատարագ, թէ և՛ յետ յանդիմանելոյն առնուցուն 'ի բերան: Այլ թէ կամիցին զոգիս իւրեանց փրկել 'ի դատապարտութենէ՝ մեծապաշխարութեամբ, թէ արդեօք քաւեսցին յառ Աստուած մեղանացն:

Մի՛ ոք 'ի քահանայից վայրապար և առանց մեծի զգուշութեան կատարեսցէ զսուրբ մկրտութիւնն, իբրև զաշխարհական ինչ գործ համարելով, և մի՛ ընդ աստուածային բանիցն՝ բանս ծիծաղականս և կատակերգութիւնս խառնեսցէ, որպէս լսեմք յոմանց անգիտաց և ան_

երկեղից՝ զի առնեն, զի մի՛ ին_
քեանց դատապարտութեան լինիցի
այն պատճառ, և երախայրիցն ան_
մեղաց՝ թերակատար զշնորհն հո_
գւոյն սրբոյ ընդունելոյ ։ Այլ որ_
պէս զսուրբ պատարագն՝ այնպէս
երկիւղիւ կատարեցէք զպաշտա_
մունսն, և զընթերցմունս Աստուա_
ծաշունչ բանիցն, և զամենայն
կարգաւորութիւնն սուրբ մկըր_
տութեանն խորհրդոյ. և եթէ
այսպէս առնիցէք՝ հաւատացէք,
զի որպէս էջ հոգին սուրբ 'ի վե_
րայ փառաւորչին իւրոյ 'ի Յորդա_
նան, նոյնպէս և 'ի վերայ ամենայն
ուղղափառ հաւատով մկրտելոց
իջցէ, զօրս և յորդեգրութիւն Աս_
տուած հայր վերակոչէ շնորհօք՝
որպէս զբնութեամբ որդին, և լի_
նիք դուք արբանեակք, և սպա_
սաւորք հոգւոյն սրբոյ՝ յաստուած_
արարութեանն շնորհ, մանա_
ւանդ թէ իբրև զմանկաբարձս որդ_
ւոցն Աստուծոյ, ձեռօք ձեր կա_
տարելով և բառնալով 'ի մօրէ նո_
ցին յաւազանին ծոցոյ ։

Եւ մի՛ ոք 'ի քահանայից յետ հաց ուտելոյ իշխեսցէ առնել մկըրտութիւն առողջից. մանկանց, բայց թէ յերկեղէ մահու: Այլ նախ կատարեսցէ զմկրտութեանն գործ, և ապա մատուսցէ զպատարագն սուրբ՝ յորմէ և զմկըրտեալն հաղորդեցուսցէ: Եւ մի՛ յանհաւատից արանց, կամ կանանց, որք ոչ են երկրպագուք Քրիստոսի, առցէ ոք կնքահայր մանկանց մկըրտելոց. զի զոր ինքեանք ոչ ունին՝ այլում զիա՞րդ կարեն տալ զխոստովանութիւնն՝ որ 'ի սուրբ երրորդութիւնն, յորժամ պահանջէ քահանայն 'ի դէմս մկրտելոցն զդաւանութիւն հաւատոյն: Վասն որոյ մի՛ տայք ազգաց աշխարհականաց յաղագս մարմնական ինչ սիրելութեան զայս առնել. և եթէ յանդգնին՝ դուք մի՛ յանձն առնուք զմկրտելն, զի մի՛ թերի առնիցէք զայն՝ որ մկրտինն՝ 'ի կատարմանէ, և մի՛ ծիծաղելիս զմեծ խորհուրդն աստուածայինն կացուցանէք առաջի անհաւատիցն. որ

Թէ հնար էր՝ և ոչ միում 'ի նոցանէ արժան էր լինել մերձ յաւազանն սուրբ 'ի մկրտութեանն ժամու, զի մի վասն հակառակացն Ճշմարտութեան՝ հոգւոյն սուրբ հեռասցի 'ի մկրտելոցն: Եւ մի ոք 'ի ձէնջ լռել հարկի պահանջեցէք զինս արծաթոյ անգին շնորհին վասն մկրտութեանն, կամ մահուհաղորդ տալոյ, այլ որ ունին և տան սիրով որպէս զնուէր եկեղեցւոյ, առէք. և որ աղքատ լինին՝ մի բռնադատէք:

Ասեմք և յաղագս զծնունդս այլազգեացն մկրտելոյ, որ սովորութեամբ բերի 'ի հին ժամանակաց, և է ընդդէմ հրամանին Քրիստոսի, որպէս ասաց՝ Ոչ տալ ըզսրբութիւն շանց. զոր արժան էր խափանել, և ոչ թողացուցանել. զի զի՞նչ օգուտ է այլով բերանով խոստովանել զՔրիստոս, և զգենուլ զնա մկրտութեամբն՝ մինչ անբանն է և անզգայ, և յորժամ զարգանայ հասակաւ՝ մերկանալ դարձեալ ուրացութեամբն, և լի‿

նել հայհոյիչ աստուածայնոյն խոր-
հրդոյ անօրէնութեան նորա՝ ըստ
դէնին իւրեանց , փոխանակ փա-
ռաբանիչ լինելոյ ։ Որով առաւել
դատապարտանաւ դատելոց են յա-
ղագս եղծանելոյ յինքեանս զտի-
րական պատկերն , զոր վերստին
նկարագրեաց 'ի նոսա աւազանն
սուրբ , քան զամենեքին ոչ դրոշ-
մեալսն . այլ զի գոյ 'ի նմա մասն
բարւոյ , այս ինքն՝ զի 'ի մկրտելոց
անտի բազմաց 'ի տղայական հա-
սակին հասանէ վախճան մահու ,
և այնոքիկ ոչ ընդ կորուսեալսն՝
այլ ընդ փրկեալսն արժանաւորին
փրկութեան , և զի զաւակաւն զա՛յ-
նոսիկ յափշտակելով 'ի սատանայէ՝
խառնեսցէ 'ի գունդն Քրիստոսի ,
վասն այնորիկ ոչ խրատուցես հա-
մարեցաք զամենեքին խափանելն ։
Բայց զայս միայն վասն սորին իրի
պատուէր տամք քահանայիցդ , մի
վասն ագահութեան ախտի յոր-
դորել զնոսին , և կամ յօժարու-
թեամբ՝ ընդունել , այլ դժուարաւ
և 'ի հարկէ մերել յայնպիսի իրս ։

Զի թէ հաստատուն մնալոց էին 'ի հաւատս՝ բարի էր յորդորումն և յօժարութիւնն ձեր. բայց զի ապրեալքն ըստ մարմնոյ՝ անդրէն ընդ ջուրսն են անցանելոց, և 'ի լուսակիզն յօղեաց՝ 'ի սևութիւն այծից փոփոխելոց, ըստ սրբոյ Լուսաւորչին մերոյ տեսլեան. Նորին աղագաւ անօգուտ է ջանն՝ որ վասն նոցին, զի շահն սակաւ է, և վնասն յոլով։

Մի՛ ոք 'ի ձէնջ զատոյտ պսակ դիցէ ումեք, այլ եթէ ծնողս ունիցի, և միաբան իցէ և ոչ բաժանեալ, գիտութեամբ և կամաւ նոցին եղիցի։ Իսկ եթէ ոչ ընդ ծնողք՝ հասարակաց տեսութեամբ յայտնի դիցի պսակն, զի վկայեսցի յամենեցունց՝ թէ ուղիղ է, և ոչ ընդդէմ օրինացն Աստուծոյ. որով և երգոցն ձայնք և նուագարանացն՝ զնոյն նշանակեն, իբրև թէ վկայս պսակելոցն զամենեցունց լսելիս և զտեսանելիս կացուցանելով։ Իսկ գաղտնին՝ անվկայ է և անհաստատ, և ոչ ընդ օրինօք, յու֊

մէ պատուէր տանք 'ի բաց հրաժարել, և ոչ յանդգնել յայտնելի իրս վասն ագահութեան:

Մի՛ և կնաթողաց արանց՝ կամ այրաթողաց կանանց՝ առանց կանոնական հրամանին դիցէ ոք պսակ, զի մի՛ լուծիջիք դուք 'ի քահանայական կարգէ՝ ըստ կանոնաց, և եղեալ պսակն քակեսցի. և եթէ բռնանան և ոչ բաժանին՝ ընդ պոռնիկս համարեալ լիցին:

Մի՛ և այնոցիկ՝ որք առեւանգեալ ունին, դնիցէք պսակս. զի հակառակ օրինաց Աստուծոյ է, և բիւր չարեաց պատճառք 'ի սատանայէ շարժեալք 'ի մոլեկան ախտոն. և բազումք այն իսկ են՝ որ յետ սուտ պսակին՝ յորժամ յագին դիւական տարփմամբքն՝ մեծաւ տաղտկութեամբ բաժանին 'ի միմեանց, և պսակադիրքն այնպիսեացս կցորդ չարեաց նոցին լինիցին:

Մի՛ և տղայոց անմեղաց՝ յաղագս ագահութեան հայրենի ժառանգութեան, կամ վասն այլ ինչ պատճառի՝ պսակ դիցէ ոք 'ի քա-

մայ է գործն, և կաշառատուքն բռնաւորաց վասն ջատագով լինելոյ նոցին յանիրաւ գործն յայն՝ առաւել դատապարտութեան և անիծից են արժանի, զի զօրէնս Աստուծոյ և զդատաստանս եկեղեցւոյ լուծանել փութան բռնութեամբ աւագաց։ Վասն որոյ՝ առանց խղճոյ է լուծումն այնպիսւոյ պսակին. քանզի չէ ըստ հրամանին Աստուծոյ, այլ 'ի մարդկային բռնութենէ։

Մի՛ ոք համազգեաց, որոց արեան մերձաւորութիւն իցէ, պսակ օրհնութեան դիցէ. այլ՝ մինչև 'ի յերկուց կողմանցն զչորրորդ ազգին գլխաւորութիւնն կատարեալ ունիցին։ Եւ թէ զի՞նչ պատճառաւ զչորրեակ թիւն կանոնադրեցին հարքն սուրբք սահման ամուսնութեան՝ ծանուսցուք զի գիտիցէք։

Քանզի բնութիւն մարմնոյ 'ի չորից տարերաց գոլով, յիրաւ և մարմնական ազգակցութիւնն մինչև 'ի չորրորդ թիւն ժամանէ։

որ է այսպէս ։ Ի միոյ հօրէ երկուց եղբարց բաժանեալ, հաստատոր ունին յինքեանս զհօրն գոյացութիւնս ․ իսկ առ ՚ի նոցանէ ծնունդքն՝ զկէս արեանն եղբայրութեանն ․ և երրորդ ծնունդն՝ որ եղբարցն որդւոց, զկիսոյն կէս արեանն միայն ․ իսկ չորրորդ ծնունդն՝ որ ՚ի սոցանէ, զչորեակ մասն արեանն միացելոյ ։ Եւ այս է սահմանն և կէս արեան մերձաւորութեան ։ Եւ քանզի ամենայն փոյթ Աստուծոյ և աստուածայնոցն՝ յաղագս սիրելոյ է զմիմեանս մարդկան, վասն այնորիկ խրատունս համարեցան որք հոգւովն օրինադրեցին, զօտարացեալսն ՚ի միմեանց միանալ սիրով ամուսնութեանն կապակցութեամբ ։ Իսկ զմերձաւորսն արեամբ բաւական վարկան համազգութեամբն միայն ունել զհաղորդութիւն սիրոյ առ իրեարս ։ Եւ այս է առաջին պատճառ՝ ոչ տալոյ թոյլ համացեղիցն ամուսնութեան ․ են և այլք յոլովք, զորս իմաստնոց թողաք քննել։

Եւ արդ՝ որ այսպիսի ընտրութեամբ ըստ օրինացն Աստուծոյ ընկեցի պսակն, որպէս և գրեցաք, մի՛ յայլում ժամու դիցէ զայն քահանայն, բայց յառաւօտէ աւուրն մինչև ցժամ Ճաշոյն. և կերեալ և արբեալ զոք՝ մի թողուցուք յեկեղեցին, և մի՛ յանառակ կանանց կամ յարանց, որ յայլում ժամու չեն արժանի եկեղեցւոյ՝ զի մի՛ պղծեսցի Նորոգ տաճարն Աստուծոյ, և աղտեղասցի պսակն օրհնութեան: Եւ ՚ի ժամ կատարելոյ զսուրբ պսակն՝ երգք գուսանացն լռեալ դադարեսցեն, մինչև ելցեն յեկեղեցւոյն, զի մի՛ դիւական երգքն խառնեսցին ընդ աստուածայինն երգոցն: Եւ ՚ի բուն բարեկենդանին օրէ սկսեալ մինչև ցկատարումն պահոց շաբաթուն՝ որ յետ պենտեկոստէին է, մի՛ ոք ՚ի քահանայից տղխտութեամբ պսակ դիցէ ումեք, և ոչ յամենայն կիւրակէս տարւոյն՝ որպէս հաստատեցին կանոնաւ սուրբ հարքն առաջինք: Քանզի պահոց քառա-

Նորդւացն աւուրք՝ սգոյ և տրտմու-
թեան է, և խորհուրդ չարչարանաց
տեառն և ոչ գինարբութեան և
ուրախութեան հարսանեաց: Իսկ
յինունքն և կիւրակէքն ունին զօ-
րինակ երկնաւոր փեսային Քրիս-
տոսի, հարսանեաց և հարսին եկե-
ղեցւոյ, որ լինելոց է 'ի հան-
դերձեալ աշխարհին՝ յորժամ
խառնեալ միանան ազգ արդարոց
մարդկան ընդ նոյն դասս հրեշ-
տակաց, զոր և անուն իսկ ա-
ւուրցդ յայտ առնէ, յինունք վե-
րակոչելովն, որով և զհաւատացեալս
ամենայն՝ մանկունս առագաստի
հարսանեաց անուանեաց տէրն,
որոց հրամայէ՝ ոչ պահել որչափ
զփեսայն ընդ ինքեանս ունիցին. որ
են աւուրք յարութեան նորա
մինչև 'ի վերանալ նորին յերկինս:
Վասն այսորիկ պատճառի՝ ոչ պատշաճ
համարեցան հարքն սուրբք 'ի հո-
գևոր հարսանեացն օրինակի ա-
ւուրսն՝ յորում ասացաւ 'ի տնէ
ոչ արանց կանայս առնել, և ոչ կա-
նանց արանց լինել, զմարմնականս

զայս կատարել հարսանիս, որ է ախտաւոր և ծննդական ։

Եւ որոց 'ի հարսանիսն երթիցեն քահանայք՝ զայս խրատ պատուիրանի աւանդեմք ։ Մի՛ յապաղել անդր ընդ գինարբու աշխարհականացն մանկունս, յորում յոլովս մեղանչեն անպատրաստքն՝ որք գեգերինն 'ի նմա 'ի տեսանելն 'ի լսելն և 'ի խօսել զանուղղայս ․ այլ յորժամ զբաւ լինիցի կերակրոյն, և մինչ յերկս միայն արբուցեն բաժակի՝ յառնել վաղվաղակի 'ի սեղանոյ անտի, զի մի՛ ընդ գինեմոլսն յարբեցութեան ըմբռնեալ՝ այպն լինիցի արտաքնոց տեսողաց, ոչ միայն ինքեան, այլ և ամենայն քահանայք միանգամայն ։ Եւ ծանրագոյն ապաշխարութեամբ, թէ արդեօք քաւեսցէ զարբեցութեանն մեղս, զերատին արժանի լինել քահանայագործութեան ։

Մի՛ ոք 'ի քահանայից զստահանայական յանցանս յինքեան ցուցցէ, այն՝ որ հակառակ եկաց Աստուծոյ և կործանեցաւ, և ընդդի-

մակաց լինիցի եպիսկոպոսին իւրոյ՝ 'ի բանս կամ 'ի գործս, որպէս Կորխ և Դաթան՝ Մովսիսի և Ահարովնի, զի մի՛ ընոցին կործանումն ընկալցի յԱստուծոյ. մանաւանդ այնոքիկ՝ որք յանդգնին կապալս յարուցանել 'ի վերայ եկեղեցւոյ, կամ աճեցուցանել զպատուաջագունից եղեալսն, և այսու պատճառաւ՝ արտաքսեն զեպիսկոպոսունս յաթոռոց բռնութեամբ այլազգեաց, և ինքեանք լինին հրամանատարք ժողովրդոց, և կապալատուք փոխանակ նոցա: Որք անձամբ զանձինս 'ի ներքոյ առնեն աններելի դատաստանացն Աստուծոյ, և անիծից դատապարտութեան այնպիսիքն ոչ են արժանի 'ի կեանս իւրեանց քահանայագործութիւն առնելոյ, և ոչ 'ի մահուն՝ հաղորդի կամ քահանայական թաղման:

Դարձեալ, մի՛ ոք 'ի քահանայից կամ 'ի ժողովրդոց զեկեղեցւոյ դատաստան առ մարմնական իշխանս դատեսցի կամ առ այլազգիս կամ առ քրիստոնեայս, զի մի՛ դա-

տապարտեսցի յառաքելական և 'ի կանոնական հրամանացն : Որպէս և գրէ Պաւղոս առ Կորնթացիսն , Իշխէ՞ ոք 'ի ձէնջ , եթէ իրք ինչ իցեն ընդ ընկերի իւրում , դատել առաջի անիրաւաց , և ոչ առաջի սրբոց : Եւ հարքն սուրբք 'ի կանոնրս իւրեանց՝ լուծանել հրամայեն 'ի քահանայութենէ՝ որզայսառնէ:

Դարձեալ՝ մի՛ ոք 'ի քահանայից հոգաբարձու քաղաքի կամ գեղջ լինիցի , կամ գաւառապետ աշխարհական իշխանաց , կամ գրող հարկաց և սակից , կամ յայլ ինչ գործակալութիւն աշխարհի լինելով : Քանզի անկարելի է ըստ տէրունական հրամանին՝ երկուց հակառակ տերանց ծառայել , և հաճոյանալ տան Աստուծոյ՝ որ է եկեղեցի Աստուծոյ կենդանւոյ , և տան աշխարհականաց : Վասն որոյ ընտրեսցէ այնպիսին 'ի միոյն 'ի բաց կալ , կամ յաշխարհի հոգաբարձութենէն , կամ 'ի քահանայական գործոյն : Իսկ եթէ ընդ աշխարհական հոգոցն յանդգնի և զքահա-

Նայական պատիւն ունել, և զտեսչութիւն ժողովրդոց, բռնութեամբ է այն, և ոչ հրամանաւն Աստուծոյ և մեր, որ և գտանելոց է այնպիսին ըստ կրկին յանդգնութեանն ։

Լսեմք զոմանց քահանայից՝ ձիավարժս լինել և զէնս առնուլ ըստ զինուորաց, և 'ի խորախճանութիւնս խաղուց ձիընթացից ընդ նոսին արշաւել երիվարօք, 'ի յորս երէոց և 'ի նետաձգութիւնս. և յամենայն ինչ յայսպիսիս, որ նացայն գործոյ է անկ և ոչ եկեղեցւոյ սպասաւորաց, զի զէն զինուորութեան մերոյ ոչ է մարմնաւոր, որպէս հրամայէ առաքեալ, այլ հոգևոր և աստուածայինն, որովք պատերազմիմք ոչ ընդ մարմնոյ և ընդ արեան, այլ ընդ իշխանութիւնս և ընդ պետութիւնս ընդ այսս չարութեան՝ որ 'ի ներքոյ երկնից ։ Վասն որոյ աղաչեմք՝ 'ի բաց լինել յայսմ հետէ 'ի յանկարգ սովորութենէ աստի. բայց եթէ 'ի Ճանապարհի՝ եթէ

'ի հետևոսմ և թէ երկմտաբար՝ առնուլ զէնս յաղագս երկեղի ինչ եղելոյ կարծեաց, և այն՝ սպարկեշտութեամբ, և ոչ ըստ զինուորութեան կարգի՝ կապարճիւք և կազմեալ սուսերաւ: Այլ ոչ նա է արժան առնուլ զէնս կարգաւորաց, կամ արշաւանս առնել երիվարօք ըստ մանկական բարոյից, 'ի բամբասանաց պատճառս տեսողաց: Զի զորս խրատէ Պաւղոս զզէնն լուսոյ զգենուլ, այս ինքն զուղիղ հաւատս և զգործս բարեաց, և նոքօք կռուել ընդ բնութեանս մերոյ թշնամւոյն, չէ արժան զխաւարայինս զայս զէն ստանալ յանձին, և պատերազմել նոքօք ընդ համազգեաց մերոց մարդկան, կամ խոցոտել զանբանից կենդանեաց հոյլս, և կամ սիգաքայլ երիվարօք յօրանալ, բայց թէ 'ի տկարութենէ: Քանզի յայսցանէ և 'ի սոյնպիսեացն՝ արգելուն մեզ աստուածային պատուիրանքն:

Քահանայ, եթէ զոք 'ի ժողովրդենէ իւրմէ վասն պատուիրանա-

զանց լինելոյ ընդ բանիւ առնի-
ցէ, և նորա յամառեալ մնայ 'ի
յանցանսն և ոչ դառնայ, այլ որք
'ի քահանայից անտի մի իշխեսցէ
ընդունել զնա յեկեղեցի իւր, որ-
պէս սովոր են ոմանք 'ի տգէտ քա-
հանայից յինքեանս ձգել զայնպի-
սիսն. և որ զայս առնէ, նա տայ
նմա 'ի մեղաց անտի անդարձ լի-
նել, և զանձն իւր կցորդ պատու-
հասի յանցանաց նորա առնիցէ։
Այլ վասն այսպիսի իրաց եղելոց՝
այս օրէնք հաստատեսցի 'ի միջի
ձերում, զի զորոշեալն 'ի միոյ քա-
հանայէ, և ամենայն քահանայա-
կիցք նորին նմանապէս 'ի բաց որո-
շեսցեն յինքեանց, մինչև զղջացեալ
յանցաւորն դարձցի յանուղղայ
գնացից իւրոց, և առաջի ան-
կեալ խնդրեսցէ զթողութիւն, և
ուխտ դիցէ Աստուծոյ ապաշխա-
րել, և այլ ոչ ևս 'ի նոյն սովորու-
թիւն չարեաց անկանել։ Եւ յոր-
ժամ յիւրոյ քահանայէն այսպի-
սի օրինակաւ ընկալցի զթողու-
թիւն, յայնժամ և այլ քահա-

Նայքն ընկալցին զնա սիրով Աս-
տուծոյ։ Այս օրէնք ուղղութեան
և 'ի մէջ եպիսկոպոսաց հաստա-
տեսցի. որպէս զի զատ 'ի միոյ ե-
պիսկոպոսէն բանադրեալն 'ի քա-
հանայից կամ յաշխարհականաց,
այլ ոք յեպիսկոպոսաց ոչ ունի իշ-
խանութիւն լուծանելոյ, բայց 'ի
բանադրողէ անտի։

Աւանդեմք և զայս ևս պատուի-
րան ամուրեաց քահանայիցդ՝ որ
ըստ աշխարհի, զի որում 'ի ման-
կական հասակին հասանէ վախճան
ամուսնոյն, թէ կամեսցի զոգի իւր
ապրեցուցանել 'ի մեղաց և 'ի բամ-
բասանաց, և սուրբ խորհրդոյն
արժանաւորապէս սպասաւորել,
հրաժարեալ յաշխարհէ՝ ըստ կա-
նոնական հրամանին՝ 'ի կարգ կրօ-
նաւորութեան մտցէ։ Զի 'ի մէջ
աշխարհի՝ սովորական ընդելու-
թեամբ լինելով 'ի տեսութիւնս, և
'ի խօսակցութիւնս ընդ կանայս,
մանաւանդ խոստովանութեան նո-
ցին լինել ընդունող ըստ օրինի քա-
հանայութեան, անհնար է սրբու-

իշխանաբար հրամանն տալով այլ ծառայականցս պաշտելով, բաւականն լիցի առ 'ի մէնջ։ Իսկ զպականեալն 'ի մերոցս՝ ունիք հմտանալ կատարելապէս 'ի հարցն առաջնոց կանոնական գրոց, որովք օրինադրեցին զմանկունս եկեղեցւոյ 'ի փառս Աստուծոյ։

## ԱՌ ԻՇԽԱՆՍ ՈՐ ԸՍՏ ԱՇԽԱՐՀԻ

ՓՈԽԵՍՑՈՒՔ զաստուածային պատուիրանացն խրատ և առ ձեզ՝ որ ըստ աշխարհի ունիք զքաղաքավարութիւն։ Եւ նախ և առաջին առ իշխանսդ, որք 'ի նուաճեալ ժամանակիս տիրէք 'ի տեղիս տեղիս բազմաց, և կամ սակաւուց զօրաց և գաւառաց։ Զորս աղաչեմք մի անհնազանդ լինել օրինացն Աստուծոյ. այլ որպէս կամիք զի ծառայք ձեր զկամս հրամանի ձերոյ

թեամբ ծառայել Աստուծոյ. ա-
պա թէ ընդ անձուկ ճանապարհն
գնալ դժուարանայ, զլայնն և
զարձակն սիրելով, լուել արժան է
նմա 'ի սրբոյ պատուիրագրին սպասա-
ւորութենէ, թէ և 'ի յայտնի վա-
տութիւնս ոչ բամբասի: Քանզի
ոչ կարէ յերկրաւորդական հա-
սակին մաքրապէս սպասաւորել
սրբութեանցն. մանաւանդ՝ որ ոչ
երկեղածութեամբ և պարկեշտու-
թեամբ և պահօք և աղօթիւք զգու-
շանայ անձին իւրում, այլ աներ-
կեղութեամբ վարի 'ի կերակուրս
և յըմպելիս, և յամենայն ունակս
ընդարձակ վարուց: Իսկ որոյ միտք
'ի ծերութիւն՝ հասանէ վախճան
ամուսնոյն, և վստահ լինի յանձն
իւր՝ սրբութեամբ և անարատ վա-
րուք և առանց բամբասանաց սպա-
սաւորել Աստուծոյ, որպէս զի զա-
վութիւնս ընկալցի 'ի տեսողաց և մի՛
բամբասանս, այնպիսին կացցէ յե-
կեղեցւոջ իւրում ողջան ախորժէ:

Եւ արդ քահանայիցդ առ 'ի
խրատ զոր գրեցաք սակաւուք, ոչ

իշխանաբար հրաման տալով այլ ծառայակցացս պաշտելով, բաւական լիցի առ 'ի մէնջ : Իսկ զպակասեալն 'ի մերոցս՝ ունիք հմտանալ կատարելապէս 'ի հարցն առաջնոց կանոնական գրոց, որովք օրինադրեցին զմանկունս եկեղեցւոյ 'ի փառս Աստուծոյ :

## ԱՌ ԻՇԽԱՆՍ ՈՐ ԸՍՏ ԱՇԽԱՐՀԻ

ՓՈԽԵՑՈՒՔ զաստուածային պատուիրանացն խրատ և առ ձեզ՝ որ ըստ աշխարհի ունիք զքաղաքավարութիւն : Եւ նախ և առաջին առ իշխանսդ, որք 'ի նուաղեալ ժամանակիս տիրէք 'ի տեղիս տեղիս բազմաց, և կամ սակաւուց զօրաց և գաւառաց : Զորս աղաչեմք մի անհնազանդ լինել օրինացն Աստուծոյ. այլ որպէս կամիք զի ծառայք ձեր զկամս հրամանի ձերոյ

հնազանդութեամբ և անթերի կատարեսցեն, որք թէ . և զմի ինչ 'ի հրամայելոցն անկատար թողուն՝ պատուհաս կրեն 'ի ձէնջ, նոյնպէս և դուք՝ վասն զի բնութեամբ ծառայք էք Աստուծոյ՝ ծառայեցէք տեառն երկիւղիւ և հնազանդութեամբ . զի մի՛ պատուհասիցիք իբրև զապստամբեալս 'ի տեառնէ, այլ որպէս զմտերիմ ծառայս պատիւ ընդունիցիք յերկնաւոր թագաւորէն ։

Եւ արդ՝ առաջին զայս պատուիրան աւանդեմք ձեզ . մի՛ անիրաւաբար վարիք առ հնազանդեալսդ ծանր և դժուարակիր հարկադրութեամբ, զոր ոչ կարեն բառնալ, այլ օրինօք դատեցէք, և ըստ չափոյ զօրութեան զիւրաքանչիւր ոք ։ Զմտաւ ածէք, զի և ձեր տէր գոյ յերկինս, և ակնառութիւն ոչ է առաջի նորա, որպէս և առաքեալ ասէ ։

Մի՛ զոք զրկէք 'ի մարդկանէ, և մի՛ նեղէք զաղքատս և զանանկս, զի մի՛ բողոքեսցեն առաջի Աստու-

ծոյ վասն ձեր, և Աստուած լսէ նոցա, ըստ իմաստնոյն Սողոմոնի. զի ասէ, Թէ Մի՛ տար պատճառս աղքատին անիծանել զքեզ, զի մի՛ արարիչ նորա լուիցէ նմա, և հատուսցէ քեզ չարիս։

Մի՛ չար և անիրաւ գործակալս և գաւառապետս կացուցանէք 'ի վերայ աշխարհի ձերոյ, զի մի՛ յանիրաւութենէ նոցա զոր գործեն, դուք գտանիք յԱստուծոյ հանդերձ նոքօք. այլ զարդարամիտս և զարդարադատս ընտրեցէք, ունել 'ի վերայ մարդկան զգործակալութիւն, զի մի՛ զարքունական սահմանեալ իրաւունս վաստակաւորացն թողցեն, վասն սակաւ կաշառոյն զբազումս, և կամ ինքեանք գողասցին. և մի՛ առաւել քան զհրամայեալսն նեղեսցեն զնոսա և առցեն։ Զի անիրաւութիւններկու կողմանքն առաջի Աստուծոյ. այլ այնպէս իրաւադատ լինիցին, զի տացեն զկայսերն կայսեր, և զԱստուծոյն՝ Աստուծոյ։

Մի՛ զոք անիրաւութեամբ դա-տիք, այլ ուղիղ դատաստանն արա-րէք, զի և ձեր դատաստանն քաղ-ցրութեամբ լինիցի յԱստուծոյ և մի՛ խստութեամբ: Մի՛ վասն կա-շառաց, կամ վասն սիրելութեան միոյ կողմանն, կամ վասն ատելու-թեան և ոխակալութեան, կամ վասն պատուոյ երեսաց 'ի միոյն աչառելով զանիրաւն արդարացու-ցանիցէք 'ի դատաստանի, և զարդա-րոյն թիւրիցէք զիրաւունս, զի մի՛ ա-նիծիցիք զօրինացն Աստուծոյ որ յա-ղագս այսոցիկ՝ պարտականս զան-ձինս առնիցէք:

Մի՛ անտես առնէք զայրւոյն և զաղքատին զիրաւունսն, յորժամ աղաղակեն առաջի ձեր վասն զըր-կողաց իւրեանց, այլ դատ արարէք որբոյն, և տուք իրաւունս այրւոյն, ո՛րպէս ասէ Աստուած մարգարէ-իւն, և ունկնդիր լերուք աղաղակի նոցա, և փրկեցէք զնոսա 'ի նեղչաց իւրեանց, և զյափշտակեալ ինչս նոցա դարձուցէք յանիրաւացն.

յայնժամ և Աստուած լսող լինի աղաչանաց ձերոց, և կատարէ ըզխնդրուածս պիտոյից ձերոց։

Մի՛ որպէս զանբան կենդանիս, որ բնութեամբ ծառայք են մարդկան, ծառայեցուցանէք զմարդիկ՝ որ ընդ իշխանութեամբ ձերով լինին՝ 'ի գործ խիստ և աններելի, որպէս և Փարաւոն զորդիսն Իսրայէլի, և զայն՝ առանց կերակրոյ տալոյ նոցին, այլ ներելով և քաղցրութեամբ, և սակաւօրեայ ժամանակաւ, և առատագոյն կերակրովք լցուցանել զնոսա յաշխատութիւն անդր, և չափով և մի՛ յանչափս, որպէս զի կարող լինիցին վաստակօք իւրեանց զաղքատանաց կեանս զտանց և զորդւոց իւրեանց լցուցանել, և զարքունական հարկս հատուցանել։

Մի՛ զվարձս վաստակաւորաց ձերոց հատանէք իշխանաբար, որպէս զայնոսիկ՝ զորոց ամբաստանեն առաքեալքն և մարգարէքն, թէ Զրկեալն 'ի ձէնջ աղաղակէ, և բողոք հնձողացն եհաս յականջս

տեառն զօրութեանց ։ Բաւական լիցի ձեզ՝ զի վաստակօք նոցա մեծանայք, և առաւել քան զչափն փափկանայք, և այն զի ոչ թէ այլ բնութիւն է նոցա և այլ ձեր, այլ 'ի միոյ կաւոյ և 'ի խառնուածոյ ։ Քանզի նմանապէս է տերանց և ծառայից, փարթամաց և աղքատաց սկիզբն գալոյ յաշխարհ, և կատարած ելիցն յաշխարհէ ։ Վասն զի զուգահաւասար ամենեքեան ծընընդեամբ մտանեն յերկիր, և մահուամբ ելանեն'ի սմանէ ։ Իսկ մեծութիւն և փոքրկութիւն, բարձրութիւն և խոնարհութիւն, բարեբախտութիւն և պանդխտութիւն, 'ի մէջ ծննդեանն և մահուանն պատահեն մարդկան, որ են իբրև զերազք զարթուցելոց. որպէս'ի փորձոյ անտի յայտնի է ամենեցուն՝ իմաստնոց և գաւառաց, զի ոչ ինչ 'ի սոցանէ ունի զհաստատութիւն ։

Վասն որոյ մի վասն անցաւորիս կենաց՝ կորուսանէք զյաւիտենական զկեանսն. զի թէպէտ և Քրիստոս դժուարաւ ասաց՝ մեծատանց

յարքայութիւն երկնից մտանել, ըստ օրինակի ուղտոյ ընդ ծակ ասղան. այլ եթէ զմեծութիւն ձեր ըստ կամացն Աստուծոյ 'ի գործ արկանէք, գժուարինն ձեզ դիւրին լինիցի: Զի և Աբրահամ մեծատուն էր, և ոչ միայն արքայութեանն մտանելոյ արժանացաւ, այլ և գոգ նորա արքայութիւն Աստուծոյ եղև և անուանեցաւ, և հանգիստ ամենայն արդարոց: Նոյնպէս և Յոբ, և ամենայն մեծատուն արդարքն՝ ըստ ասելոյն 'ի տեառնէ, թէ Տեսանիցէք զԱբրահամ և զԻսահակ և զՅակոբ, և զամենայն արդարսն՝ յարքայութեան Աստուծոյ: Այսպէս և դուք՝ եթէ ըստ նոցին օրինակի գնայք 'ի ճանապարհս արդարութեան: Զի ոչ զոք զրկէին, և ոչ զոք նեղէին, ոչ զօրուք զինչս յափշտակէին, և ոչ ումեք առնէին ինչ անիրաւութիւն, և կամ նենգութիւն, այլ և յիւրեանց արդար վաստակոցն զքաղցեալս կերակրէին, զմերկս զգեցուցանէին, ըզ-

հիւրս ընդունելն , զկարօտութիւն կարօտելոց՝ լցուցանելն , նեղելոց բաւական լինելն , և տկարաց զօրացուցիչ , զաղքատն և զանանկն ոչ միայն ինքեանք ոչ նեղելն , այլ և փրկելն'ի նեղչաց իւրեանց ։ Եւ որպէս ոչ եղև նոցա մարմնաւոր փարթամութիւնն արգել և խափան ժառանգելոյ զարքայութիւնն երկնից, նոյնպէս և ոչ ձեզ լինիցի պատճառ չարի մեծութիւնդ , եթէ կամիցիք արդարութեամբ վարել զգա , որպէս և նոքա • այլ մանաւանդ բարւոյ առիթ լինի ըստ իմաստնոյն , զի ասէ , թէ փրկանք առն մեծութիւն իւր ։

Իսկ այն՝ որ փոխանակ զիւրն տալոյ կարօտելոց՝ զնոցայն յափշտակէ , և կողոպտէ զնոսա • և փոխանակ հիւրընկալ լինելոյ և հանգուցիչ աշխատելոց 'ի ճանապարհի՝ գողակից լինի գողոց, և զարանակալ 'ի ճանապարհի այնոցիկ՝ որք անմեղութեամբ գնան ընդ ուղիղ ճանապարհս իւրեանց, և զդուռն իւր յանիրաւ ստացուածոց անտի

ընու, և մեծանալ կարծէ ։ Թողից
տալ զանթողլին յանցանս, որք
ոչ միայն զինչան յափշտակեն, այլ
և զարիւնն անմեղաց հեղուն, զի մի
զատախազ լինիցին յափշտակո-
ղաց ընչից իւրեանց ։ և զայն ոչ ա-
ծեն զմիտս՝ եթէ այլ զատաւոր
կայ զիտող ամենայնի, յորմէ ոչ
կարեն թաքուցանել զգաղտնիս
չարեաց իւրեանց ։ յաղագս այսպի-
սեաց մեծատանց յիրաւի հրամայէ
Քրիստոս դժուարաւ մտանել յար-
քայութիւն երկնից ։ որոց ոչ ար-
քայութիւնն է օթևան, այլ հուր
գեհեննին ։ և ասպնջական որդն ան-
քուն և տարտարոսն յաւիտենա-
կան ։ Իւ այս յիրաւի ։ զի թէ որք
յիւրեանց արդար ընչիցն ոչ կե-
րակրեն զքաղցեալս, և ոչ զգեցու-
ցանեն զմերկս, և ոչ ժողովեն զօ-
տարս, լսելոց են 'ի Քրիստոսէ
յաւուր դատաստանին՝ եթէ Եր-
թայք յինէն անիծեալք 'ի հուրն
յաւիտենից ։ Ապա որք աղքատին
առաւել քաղցի լինին պատճառ,
և տառապելոյն՝ մերկութեանն, և

օտարին՝ կորստեան ընչիցն և անձինն, և փոխանակ զբանտարկեալոյն տեսանելոյ և մխիթարելոյ բանիւ և արդեամբք, արձակելոց անմեղաց՝ բանտից և կապանաց ընկենին առիթ, ուր արդեօք խմանի տեղի և չափ տանջանաց այնպիսեացն, եթէ ոչ ընդ սատանայի. և հրեշտակաց նորա, զորոց և զկամսն կատարեցին :

Վասն որոյ աղաչեմ 'ի բաց լինել ամենեցուն ձեզ 'ի կորստական գործոցս յայսցանէ : Եւ մի ոք պատճառեսցէ զպատճառս մեղաց ասելով, զի եթէ ոչ զրկեմք և ոչ յափշտակեմք, զիշխանութիւն մեր ոչ կարեմք հաստատուն ունել : Եւ առ այս առաջին զայս ասեմք, զի թէ անկարելի էր որոց զիշխանութիւնս ունին հաճոյ լինել Աստուծոյ, ապա զիա՞րդ բազումք 'ի թագաւորաց և յիշխանաց գովելիք եղեն Այ և մարդկան որք և յիշատակին 'ի գիրս սուրբս : Դարձեալ, թէ և անհնարելի էր՝ ըստ ասելոյ ձեր՝ առանց զրկանաց

իշխանութիւն վարել, ապա որ ի֊
մաստունն է՝ փախչել արժան էր
յանցաւոր իշխանութենէն, և ոչ
վասն այնորիկ անանց տանջանօք
ընդ սատանայի տանջիլ: Բայց ոչ
է անհնարին առանց անիրաւու֊
թեան վարել զիշխանութիւն, այլ
դիւրին և հեշտալի է, որք սիրեն և
կամին. և մեք վկայեմք առաջի Աս֊
տուծոյ, և երաշխաւոր լինիմք ա֊
մենեցուն, զի եթէ ոք զտուն իւր
մաքրեսցէ 'ի զրկանաց, և զիրա֊
ւամբք ստացուածս միայն ժողո֊
վեսցէ անդ, թէ և սակաւ թուի
թէ իցէ, առաւել շահեկան լի֊
նիցի և պատճառ հարստութեան,
քան զբազում անիրաւաբար ստա֊
ցեալս: Եւ զայս իմաստունն Սո֊
ղոմոն յայտ արարեալ ասէ, թէ
Անէծք տեառն 'ի տունս ամբարշ֊
տաց, յարկք արդարոց օրհնին:
Քանզի սակաւ ինչ անիրաւն ըզ֊
բազում իրաւամբք ստացեալսն
'նման հրոյ կիզէ և ապականէ, զի
անիծիւք և դառնութեամբ է ժո֊
ղովուածն անիրաւին 'ի զրկելոց ան֊

տի, և ընդ աղքատացն անխծից և Աստուծոյ անէծքն մնանեն 'ի տունս զրկողաց: Իսկ տուն արդարոյն, զի սուրբ է 'ի զրկանաց, և կերակրիչ է քաղցելոց, ընդ օրհնութիւնս աղքատացն և Աստուծոյ օրհնութիւնն մնեալ 'ի ծածուկ և անյայտ զսակաւն բազմացուցանէ, որպէս զսարեփթացի այրւոյն և զսոմնացւոյն, և զորս տէրն կերակրեաց յանապատին:

Եւ մի ոք յանմտաց և 'ի մարմնասիրաց զբազում ինչս տեսանելով զրկողաց և ամբարշտաց, և զսակաւս՝ որոց իրաւամբք ստանան, այպանիցէ զբանիւք մերովք, այլ լուիցէ անսպիտին աստուածահօր մարգարէին Դաւթի՝ զի ասէ, Լաւ է, սակաւիկ ինչ արդարոյն քան զբազում մեծութիւն մեղաւորաց: Նոյնպէս և որդւոյ նորին Սողոմոնի, Արդարոյն, ասէ, ամենայն աշխարհ լի է ընչիւք, իսկ ամբարշտին և ոչ դանկ մի: Եւ դարձեալ, Լաւ է, ասէ, բանջարոջ կերակրել հանդերձ արդարութեամբ, քան

մեծամեծ զէնլեօք՝ անիրաւութեամբ։ Եւ յիրաւի է այս․ զի որք յիրաւացի և յարդար ընչից իւրեանց կերակրին, ոչ ինչ կրեն պատիժս յԱստուծոյ․ իսկ այնք՝ որ 'ի զրկանաց կամ 'ի գողութենէ և 'ի յափշտակութենէ ընուն զսեղանս իւրեանց, զամենայնն՝ զոր առատապէս վայելեն յայլոց իրաց, առկանեօք ունին հատուցանել 'ի դատաստանին աւուր։

Մի՛ և զպահս հաւատոյ լուծանէք 'ի ձուկն և 'ի գինի իշխանաբար, զի մի՛ ընդ անժուժկալսն դատիցիք։ Դարձեալ և զայս ասեմք, զի սուտութիւնն և խաբէութիւնն զոր Քրիստոս հրամայեաց թէ 'ի չարէն է 'ի սատանայէ, թէպէտ և ամենայն մարդոյ վնասակար է, բայց առաւել մեծամեծաց և իշխանաց․ զի փոքրն, վասն զի անզօր է, ջանայ ստութեամբն զքան իւր հաստատել և հաւատալի առնել․ իսկ մեծն՝ 'ի ձեռս իւր է առնելն զոր կամիցի իշխանաբար, յորժամ զիրաւունսն արհամարհիցէ։ Դար-

ձեալ՝ ռամիկ մարդոյ, եթէ ստութիւն ինչ խօսի, և թէ այլ ինչ վատթար իրս գործէ, ոչ լինի այնքան յայտնի, և ոչ հրապարականախատ լինիցի։ Իսկ զմեծին և զփոքր մի սխալանքն՝ 'ի հայհոյութիւն և 'ի Թշնամանս բարձրացուցանեն մերձաւորք և հեռաւորք, այլ և սիրողքն չարի օրինակ չարութեան առնուն զայն 'ի մեծամեծաց եղեալ պատուիրանազանցութիւնս ինչ։ Վասն որոյ աղաչեմ, մի՛ եղիցի առ ձեզ բան խաբէութեան և ստութեան, մի՛ առ ձեր հնազանդեալսն, և մի՛ առ արտաքինսն։ Այլ որոց խոստանայք բանիւ զբարիս՝ զնոյն և գործով կատարեցէք, զի այն է հաճոյ առաջի Աստուծոյ և մարդկան, և գովութեան պատճառ ձեզ յամենայն բերանոյ։

Նա և զգլխաւորաց ձերոց և զամենեցունց՝ որք ծառայեն ձեզ զսահմանեալ հռոգսն մի՛ պակասեցուցանէք, զի զրկանք մեծ է այն և անիրաւութիւն։ Քանզի ո՞չ նոքա

պարտական էին վասն պարգևացն որ 'ի ձէնջ զարիւնս իւրեանց հեղուլ վասն ձեր, նոյնպէս և դուք պարտիք զխոստացեալ թոշակսն նոցին հատուցանել անվթերի։ Եւ մի՛ ինչ բռնութե̄ առաւել քան զչափն գնայք առ նոսա, զի մի՛ յերկեղէ կողոպտելոյ, և պատուհաս կրելոյ 'ի ձէնջ անիրաւաբար զաղտնի փախչին, և ուրացողք լինին երդմանցն որ առ ձեզ, և երկու կողմանցդ լինիցին մեղք՝ նոցա և ձեզ։ Այլ եթէ հաւանիք խորհրդակցութեան մերոյ և խրատու, զայս սահմանն դիք ամենեցուն՝ որք ծառայենն ձեզ. զի որչափ կամք լինին մարդոյ կալ 'ի ծառայութեան ձերում, հաւատարմութեամբ ծառայեսցեն ձեզ, և առանց նենգութեան. և որ ոք յօժարի ելանել 'ի ծառայութենէ ձերմէ, յայտնի հրաման խնդրեսցէ 'ի ձէնջ առանց երկեղի. և դուք մի՛ սաստիւ և բռնութեամբ լինիք արգելող, բայց եթէ, սիրով և իւրով կամաւ զայն՝ որ ոչ կամիք դուք գնալ 'ի ձէնջ.

և այլոցն քաղցրութեամբ տուք հրաման․ և եթէ ինչ պալատիցիք, հատուցէք նոցա։ Եւ յորժամ այսպիսի իրաւունս տեսանեն 'ի ձէնջ լեալ, կամ ոչ գնան բնաւ, և կամ թէ գնան, փութով դարձեալ առ ձեզ դառնան․ և ազատէք ըզնոսա և զձեզ 'ի խղճէ երդմնազանցութեանն, և լինի այն մեծ վարձուց պատճառ ձեզ յԱստուծոյ։

Դարձեալ՝ մի՛ եղիցի ձեզ յօժարութեամբ դիմել յերդմունս յանունն Աստուծոյ և յաւետարանն սուրբ և 'ի խաչ, առաւել մեծագոյն հարկի։ Քանզի Քրիստոս հրամայէ յաւետարանին՝ ուր երդումն լինի, թէ ամենևին մի՛ երդնուցուս՝ ոչ միայն յարարիչն, այլ և ոչ յարարածս, ոչ յերկինս և ոչ յերկիր, և ոչ 'ի գլուխ քո․ այլ այնպէս ցուցէք ամենեցուն զձեզ ճշմարտախօս լինել, մինչ զի լոկ բանից ձերոց որպէս երդման հաւատասցեն մարդիկ։ Իսկ եթէ ծանրագոյն ինչ հարկ լինիցի երդնլոյ, մի՛ ոք մեղիցէ զանթողլի յանցանան՝

ուրանալով զերդմունսն, և երդ-
մնազանց լինելով. զի առաւել չար
է ուրացութիւնն՝ որ յերդմունսն
է, քան զայն՝ որ յերկեղէ մահու
առաջի անհաւատից ուրանան:
Քանզի այն ՚ի բռնութենէ է և
յերկեղէ տանջանաց և մահու. և
այս կամաւորութեամբ և վասն
սակաւ ինչ կորստական շահի. և է
զանազանութիւն սոցա՝ որպէս կա-
մաւ մեղքն և ակամայ:

Եւ ոչ միայն առ հաւատացեալս
քրիստոնեայս պարտ է. առանց
ստութեան պահել զերդմունսն,
այլ և առ այլազգիս. և մանաւանդ
առ նոսա առաւել, զի մի անուանն
Աստուծոյ և հաւատոյս քրիստո-
նէութեան պատճառ լինիցի հայ-
հոյելոյ ՚ի նոցանէ: Զի թէ կուա-
պաշտ Թագաւորին Նաբուգոդո-
նոսորայ երդմնազանց լինելով Հրէ-
կիայ, մատնեաց Աստուած զքա-
ղաքն և զանձն ՚ի ձեռս նորա, քա-
նի՞ եւս ՚ի նորոյս պատուհասէ Աս-
տուած զայնոսիկ, որ ստեն և ու-
րանան զերդմունսն՝ որ առ նոսա:

Եւ մի՛ ոք զայն առաջին դիցէ, եթէ վասն զի նոքա սաստեն երդմանցն որ առ մեզ, պարտ է զի և մեք առ նոսա զնոյնս արասցուք: Այլ չէ մերս երդումն և նոցայն հաւասար. զի մերս առ ճշմարտութիւնն է, և նոցայն ոչ նոյնպէս: Վասն որոյ և մեք որպէս զծառայս գիտող կամաց տեառն իւրոյ և ոչ արարող՝ բազում ըմպեմք գանս, և նոքա որպէս զտգէտս՝ սակաւս:

Դարձեալ աղաչեմք, մի՛ առ բարկութիւն շարժելով, և ոչ ուղղադատ խրատամբք, կամ խրատ ինչ առնելոյ մարդոյ, կամ մահու վճիռ տայցէք: Քանզի նոր օրէնքս ոչ հրամայեն զայսպիսի, և հին օրէնքն՝ թէպէտ և հրամայէ, բայց ոչ վայրապար, այլ ըստ յանցանացն արժանաւորութեան զիւրաքանչիւրան դատել՝ի խրատ և՝ի մահ: Վասն որոյ և դուք որ յիշխանութեանդ էք թէպէտ և զնոր օրէնքս անկարելի ասէք պահել, զհին օրինացն հրամանս՝ որ վասն այսպիսի իրաց է, կատարեցէք:

Իսկ եթէ առանց օրինաց դատիք զմարդիկ անխրատաբար 'ի սպանումն և 'ի խրատ, գիտասջիք հաստատուն, զի խնդրելոց է 'ի ձէնջ Աստուած յաւուրն դատաստանի զարիւն սպանելոցն, և զհատեալ անդամս խրատելոցն ։

Նա և զայս ևս պատուիրան աւանդեմք ձեզ, մի՛ լինել վրիժառուք և քինախնդիրք, որով զիշխանն Իսրայէլի Նախատէ մարգարէն Եսայիաս. այլ ըստ հրամանին Քրիստոսի Ներողք և երկայնամիտ լերուք առ ամենեսեան, որ մեղուցեալ իցեն ձեզ, զի և դուք ընկալջիք առ 'ի Նմանէ զքաղցրութիւն և զբարերարութիւն, ըստ ասելոյն, թէ Մի՛ դատիք և ոչ դատիցիք, մի՛ պատժէք և ոչ պատժիցիք. զի որով չափով չափէք, չափեսցի ձեզ։

## ԱՌ ԶԻՆՈՒՈՐԱՑ ԴԱՍՍ

ԽՕՍԻՄՔ ըստ կարգի և առ դասս զինուորացդ, որք ընդ ձեռամբ էք իշխանութեանց և պետութեանց։ Եւ նախ և առաջին զառաքելականն առ ձեզ բարբառիմք՝ բան, որ պատուիրէ ձեզ հնազանդ լինել տերանց ձերոց յամենայնի։ Մի՛ առ ակնանէ ծառայել՝ որպէս մարդահաճոյք այլ միամտութեամբ սրտիւ որպէս Աստուծոյ։ Զի և այնմ, ասէ, տէր է հատուցանող. այս ինքն թէ որ հաւատարմութեամբ ծառայէ զայն, ընդ որոյ իշխանութեամբ անկեալն է, թէ և 'ի նմանէ պակասութիւն ինչ լինիցի ինքեան, մի՛ ապէ տրտմեսցի, զի Աստուած է որ հատուցանէ նմա փոխարէնս բարեաց ըստ ուղիղ վաստակոց

իւրոց։ Իսկ որ նենգաւոր զաւանիցի բանիւ, կամ գործով, կամ անձին տեառն իւրոյ, կամ տեղւոյ ամբականի նորա, կամ ընչից նորին, Աստուծոյ է այն նենգութիւն, և ոչ մարդոյ. և յԱստուծոյ ընդունելոց է զվրէժ հատուցման չարեաց իւրոց. որ և 'ի հաւատոյն որոշեալ է այնպիսին, և չար քան զանհաւատն է։ Քանզի նոքա թէպէտ և 'ի ճշմարիտ հաւատոյ և յօրինաց Աստուծոյ մոլորեալք են, բայց զհնազանդութիւն տերանց իւրեանց, և զմտերմութիւն հաստատուն բերեն յանձինս։

Եւ զինչ առաւելք առ քրիստոնեայ իշխանս ունել միաբանութիւն և սէր, յայտնի և ծանօթ է. այլ թէ և 'ի քրիստոնէից ոք ընդ այլազգւոյ է իշխանութեամբ, և 'ի նորին պարգևաց կերակրի և զգենու, զնոյն հաւատարմութիւն պարտ է ցուցանել նմա, և զառանց նենգութեան ծառայութիւն։ Զի և յորժամ գրէր զայսոսիկ առաքեալն

Պաւղոս, Թէ ծառայք, հնազանդ լերուք տերանց ձերոց՝ ոչ եթէ քրիստոնեայք էին տեարք ծառայից, այլ կռապաշտք: Բայց այսու յայտնի կամեցաւ ցուցանել հեթանոսացն զճշմարիտ օրէնս քրիստոնէից եթէ ատելի է օրինաց մերոց նենգութիւն տերանց, և սիրելի է հաւատարմութիւնն, զի մի բանս հայհոյութեան յօրէնս և 'ի հաւատս մեր խօսեսցին, յորժամ 'ի քրիստոնէից զոք տեսցեն նենգաւորս գտեալ առ նոսա:

Եւ եթէ կարգեցէք 'ի տերանց ձերոց 'ի գործ վերակացութեան, կամ առաքիցէք 'ի տնօրէնութիւն ինչ բանի, արդարութեամբ և իրաւամբք՝ առ հնազանդեալսն վարեցարուք· մի զոք նեղելով անողորմաբար արտաքոյ իրաւանց, և մի զոք զրպարտելով անկարեկից բնութեամբ, ցուցանելով զձեզ առ նոսա օրինօք դաժանաց, և մի առաւել քան զհրամայեալն ձեզ առնիցէք ըստ սրբոյ Մկրտչին խրատու, այլ Թոշակօքն ձեր բաւա-

կանասջիք, և ողորմութեամբ և սիրով գնացէք առ ամենեսեան, զի և դուք ողորմութիւն գտանիցէք յԱստուծոյ:

Եւ մի յաղագս զինուորութեանդ արհամարհեալ զպատուէրանս Աստուծոյ՝ լինիցիք անհնազանդք առաջնորդաց, որք խրատեն զձեզ պահել զպատուիրանս Աստուծոյ, կամ զսուրբ պահս անօրինաբար լուծանէք կամ զյափըշտակութիւն ընչից աղքատաց, և զանպարտ արեանցն հեղմունս ոչ մեղս համարիք. զի բաց 'ի հասարակաց պատերազմական սպանմանցն՝ որք հրամանաւ թագաւորացն լինին, այլոցն՝ որ 'ի ձէնջն լինին՝ ամենեցուն համարս պահանջելոց է 'ի ձէնջ Աստուած, ծանր և անաչառ դատաստանաւ:

Նոյնպէս և զորս քան զահմանեալ հռոգան ձեր՝ անիրաւաբար և բռնութեամբ յաղքատաց յափըշտակէք կամ 'ի տերանց ձերոց ընչից գողանայք, ունիք տալ զվըճարն առանց պակասութեան յա-

ւուքն դատաստանի ։ Դա և քան զայլ հասարակաց ժողովրդականաց՝ ձեզ տաւպել պարտ է երկնչել յԱստուծոյ, և զպատուիրանս Նորա պահել. զի յամենայն ժամ ընդդէմ սորա ։ Թշնամեաց ունիք պատերազմել ։ Վասն որոյ՝ առաւել քան մարմնական զինուք՝ հաւատոյ զինուքն վառեցարուք, այսինքն աստուածպաշտութեամբ և արդարութեամբ և սրբութեամբ, պահօք և աղօթիւք, և ողորմութեամբ. որպէս զի Աստուած լիցի ախոյեան 'ի պատերազմունսն, և զԹշնամիսն վանեսցէ առաջի ձեր ։

## ԱՌ ՔԱՂԱՔԱՊԱՆՍԴ

ՊԱՏՈՒԷՐ տանք և քաղաքայնոցդ, և որք 'ի վաճառափողոցս նստիք գնել և վաճառել, և առարուեստաւորացդ, զի ուղղու-

թեամբ ստանիցիք զկեանս ձեր, և անսպառ քաղաքավարութեամբ։ Եւ մի՛ որք խաբէութեամբ և նենգաւորութեամբ վաճառեսցէ զընտացուածս իւր անմեղ գնողաց։ Մանաւանդ՝ ստախօսութեամբ և սուտ երդմամբ զռամիկսն և զանգէտսն խաբելով. զի 'ի դատաստանին աւուր ընդ գողս և ընդ յափշտակողս դատելոց է այնպիսին։ Եւ առնու Աստուած զբարեգործութիւնն իւր, և տայ զրկելոցն 'ի նմանէ։

Եւ մի՛ ունիցի առ ձեզ կշիռ մեծ և փոքր, և չափ կրկին, զի պիղծ են երկոքին առաջի տեառն՝ որպէս ասաց Սողոմոն. այլ արդարութեամբ և ուղղութեամբ վաճառեցէք զգործս ձեռաց ձերոց, և զնիւթ վաճառոց ձերոց, զի մի անէծք զրկելոցն այրեսցէ զգոյս ձեր, այլ օրհնութիւնն Աստուծոյ մնասցէ 'ի տունս ձեր։

Եւ մի՛ արհամարհէք զշինականսն իբրև զանգէտս, յաղագս պարզամտութեանն իւրեանց. քանզի

տուանել սիրէ Աստուած զարդա-րանձիր կեանս նոցա, քան զորա-տաւորս և զխաբեբայս 'ի մարդ-կանէ ։

Մի՛ տայք զարծաթ ձեր 'ի վար-ձու, ըստ մարգարէին, այնոցիկ՝ որք նեղին 'ի բռնութենէ խղխողաց, և տուէք զաղքատութեան վաս-տակս նոցա 'ի շահս վաշխից ․ այլ որպէս եղբարք՝ կարեկիցք և օգ-նականք լերուք միմեանց ։ Եւ զոր տայք նոցա փոխ՝ զայն միայն պա-հանջեցէք 'ի նոցանէ, և շահեցիք զվարձս յԱստուծոյ բազմապատիկ յանանց կենացն, որպէս և հրա-մայէ Քրիստոս ոչ միայն տուանց վաշխից տալ, այլ թէ Տո՛ւք այնո-ցիկ յորոց ակն ոչ ունիցիք առ-նուլ ։ Այլ և յամենայն գոյից ձե-րոց տուք ողորմութիւն կարօտե-լոց և աղքատաց, զի այնու արբե-ցի ամենայն ինչ ձեր, և առնու-ցուք զփոխարէնն 'ի Քրիստոսէ յաւուրն դատաստանի ։

# ԱՌ ԵՐԿՐԱԳՈՐԾՍ, ԵՒ ՀԱՄՕՐԷՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆՍ

ԼՈՒԱՐՈՒՔ և երկրագործք և համօրէն ժողովրդականք, զխրատ պատուիրանին Աստուծոյ՝ զոր աւանդեմք ձեզ։ Որոց մանաւանդ առաւել պիտանացու է դեղ հոգեւորական՝ առ 'ի բժշկութիւն ոգւոց, զի և դուք առողջանայցէք 'ի մեղացն հիւանդութենէ։

Որով աղաչեմք զձեզ, մի՛ անցաւոր կենացս հեշտութեամբ մարմնոյ՝ զյաւիտենական հեշտութիւնն հոգւոց, զոր յարքայութեանն երկնից վայելեն սուրբքն, կորուսանէք։ Եւ՝ զի տաճար էք Աստուծոյ, որպէս ասաց առաքեալն, և հոգի Աստուծոյ բնակեալ է 'ի ձեզ մկրտութեամբ աւազանին, մի՛ ապականէք պղծալից պոռնը-

կութեամբ և չնութեամբ զտաճարդ Աստուծոյ, որ են հոգիք ձեր, զի մի ապականեսցէ զձեզ Աստուած ՚ի դատաստանին աւուր՝ հրովն գեհենին, որպէս և գրէ Պաւղոս։

Եւ մի արբենայք գինւով յորում զեղխութիւն և յիմարութիւն է, որ է մայր պոռնկութեան, և ամենայն պղծութեան, և անխրատութեան, և վիճման, և աղտեղի բանից անարգանաց, յորմէ և սպանութիւնք լինին, զի մի արտաքս անկանիցիք յարքայութեանն Աստուծոյ ժառանգութենէ ընդ սպանողս, և ընդ չարագործս՝ ըստ առաքելական բանին։ Եւ եթէ ոք ՚ի ձէնջ մեղաւ այսոքիւք Աստուծոյ, և կամ այլ ինչ յանցանօք, մի կացցէ հանապազ ՚ի նոյն աղտեղի սովորութիւնն մինչև ՚ի վախճանին օր, այլ ՚ի ձեռն խոստովանութեան և ապաշխարութեան քաւեսցէ զյանցանս իւր, և գործեսցէ յայսմ հետէ փոխանակ չարին զբարիս։

Դարձեալ մի՛ զկեզուս ձեր առնէք գործի սատանայի, 'ի ձեռն չար և դառն խոցաց մանաւանդ որ զհաւատ և զհոգիս անարգեն, և զմկրտութիւն աւազանին, և զմկրտիչ քահանայն և զերէս և զբերան, որ քան զուրացութիւն և զթլփատութիւն մեծ են այս յանցանք. զի այլազգիք՝ որ ուրանալ տան քրիստոնէիցն զհաւատն, զԱստուած ոչ տան անարգել: Իսկ այս՝ որ զհաւատն անարգէ, ոչ զմարդ անարգէ, այլ զԱստուած. զի հաւատ ամենայն աստուածապաշտին՝ Աստուած է: Եւ որ զմկրտութիւնն և զմկրտիչ քահանայն անարգէ, առ հոգին սուրբ է անարգութիւնն այն, զի նորա ծնանելեն մկրտեալքն աւազանաւն: Եւ որ զհոգի մարդոյ և զերէս անարգէ, նոյն առ Աստուած վերանայ հայհոյութիւնն, զի հոգին յԱստուծոյ է փչումն, և երեսն՝ պատկեր է Աստուծոյ, նոյն և բերանն՝ ընդունող է մարմնոյ և արեանն Քրիստոսի: Եւ արդ մի՛ տրամե-

ցուցանէք զհոգւոյն սուրբ Աստուածոյ, այսպիսի զաւակր և աղաւնոյ բանիւք, զի մի հեռասցի 'ի ձէնջ Աստուծոյ հոգին որ բնակեաց 'ի ձեզ յաւազանին, և փոխանակ մնասցէ և բնակեսցէ 'ի սիրտս ձեր հոգին սատանայի։

Դարձեալ և զայս պատուէր առհասարակ ամենայն հաւատացելոցդ աւանդեմք,, զի զմանկունս ձեր երկիւղիւն Աստուծոյ սնուցանիցէք, խրատելով զնոսա 'ի մանկական տիոց լինել աստուածասէր, ողորմած, աղօթասէր. և ուսուցէք նոցա զբանս աղօթից, և սաստեցէք չսովորել'ի խօսս աղտեղիս և 'ի յիշոցատուութիւնս զի 'ի մանկութեանն ժամանակ առաւել անկի խրատ ծնողացն 'ի միտս մանկանցն անջնջելի յիշատակաւ, ընդ որում և վարձս բարեաց ընկալջիք փոխարէն 'ի տեառնէ ։

Եւ գլուխ ամենայն բարեաց՝ զսէր առ միմեանս կալջիք, և առ աղքատս և մերկս և հիւրս և բանտեալս և հիւանդս զկարեկցու-

թիւն և զօղորմութիւն, որով ար-քայութեանն լինիջիք ժառանգ-որդս 'ի Քրիստոս Յիսուս :

## ԱՌ ԴԱՍՍ ԿԱՆԱՆՑ

ՊԱՏՈՒԷՐ տուաք և կանանց ազ-գի՝ պարկեշտութեամբ և բարե-ձևութեամբ լինել յամենայնի որ-պէս և վայելէ քրիստոնէից. և ա-ռաւել քան ոսկւով և արծաթով, ամօթխածութեամբ և պատկառա-նօք զարդարել զանձինս ձեր : Եւ մի որք 'ի գայթակղութեան պատ-ճառս մեղաց անմիտ երիտասար-դաց՝ այլագունեսցէ զգոյն երե-սաց իւրոց օտար գեղօք, զի մի զիւր հոգին և զցանկացողին ին-քեան՝ արկցէ 'ի գուբն անօրէնու-թեան :

Եւ մի որք նմանող լիցի օձին՝ գոր-ծի լինելով սատանայի, զոր և կա-

ւատն անուանեն ։ Զի որպէս նա Եւայի Ղամբեաց զպտուղն մահու խաբէութեամբն, նոյնպէս և սա զանմիտ կանանց և զարանց տայ ճաշակել զպտուղն մահաբեր մեղաց ։ Որ 'ի սկզբանն քաղցր երևի անմտաց, և յետ կատարմանն՝ դառն քան զլեղի ։ Որ և զանէծս օձին ժառանգեսցէ այնպիսին յԱստուծոյ, զորոյ և զգործն ստացաւ ։

Դարձեալ մի՛ ոք 'ի ձէնջ սատանայական կախարդութեան, և ազանդոց դեղատուութեան զհետ երթիցէ ։ Զի այդ մեղք՝ 'ի գործն է վնասն, և այդ՝ 'ի հաւատն ։ Քանզի կախարդութիւնն 'ի սատանայէ է ։ Եթէ ոք ոչ նախ հեռանայ յԱստուծոյ, և ուրանէ զինքն սատանայի պաշտօնեայ և երկրպագու, ոչ յաջողին կախարդութիւնքն ։ Վասն որոյ աղաչեմք 'ի բաց լինել յայսպիսի մեծ և աններելի չարեաց, զի մի ընդ սատանայի դատապարտեսցի այնպիսին 'ի հուր գեհեննին ։ Զի այս գործ կռապաշտութեան է և

ոչ քրիստոնէից, զոր Քրիստոս եբարձ գալստեամբն իւրով յաշխարհէ զկռոցն մոլորութիւնն, և զգործս նորին չարութեան: Արդ մի՛ ոք վերստին գործակից լիցի սատանայի չար գործովք կախարդութեան, և ընդ նմին այրեսցի 'ի հուր գեհեննին յաւիտեան:

Էր և այլ ինչ բազում գրել առ ձեզ յաստուածային պատուիրանաց՝ առ 'ի զգուշութիւն մեղաց, և յամենայն չար գործոց, բայց զոր պակասն է 'ի գրոյս՝ ունիք ուսանել 'ի քահանայիցդ և յեպիսկոպոսացդ, որք կարգեալ են յԱստուծոյ տեսուչք հոգւոց ձերոց, որ ըստ օրէ համառօտել ձեզ զբանն ճշմարտութեան: Եւ մեք աղաչեսցուք զտէր, զի հանցէ 'ի ձէնջ զխիստ քարեղէն, և տացէ ձեզ սիրտ մարմնեղէն, լինել երկիր արգաւանդ, և արդիւնացուցանել զսերմըն բանիս մեր յոգիս ձեր, և տալ պտուղ բազմապատիկ 'ի չափ երրորդին: Որով զուարթագին և անարատում երեսօք սատասցուք յա-

ահեղն դատաստանին առաջի արդար դատաւորին, Ահա ես և մանկունք քո՝ զոր ետուր ցիս և դասեսցուք ընդ աջեայն 'ի յաւիտենականն կեանսն ձեօք հանդերձ, 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր, որ է օրհնեալ յաւիտեանս, ամէն :

# ՆԱՔԻՆ

## ՏՆ. ՆԵՐՍԵՍԻ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

Գիր շրջաբերական առաքեալ ՚ի հոգ-ւոյս արևելից ՚ի, Կարս ընծի նորահերք եպիսկոպոսի տարսոնի, զորոյ Գիրս ցու-ցանէ զանունն : Յորս բանք միտեալնէ արարածական. առաջնորդին , և քարոզ ոգեշահ առաջնորդելոյն ՚ի նմանէ :

Շ*նորհօք ամենակալին Աս-տուծոյ Հօր, և գթութեամբ միա-ծնի Որդւոյ Նորա Յիսուսի Քրիստո-սի, և պարգևօք կենդանարար սուրբ Հոգւոյն՝ այս մեր գիր օրհնու-թեան հոգևորական հրամանի է, Ներսեսի ծառայի Քրիստոսի և ողորմութեամբ Նորին կաթողիկո-սի Հայոց, զոր գրեցաք յանմատոյց*

գլեանկդ և 'ի հոյակապ քաղաքդ Կարս, և որ ընդ դովաւ նահանգք գեղօրէից, վանօրէից, և ագարակաց։ Որոց այդոցիկ ամենեցուն սրբազան հարց, խաչակրօն միանձանց, աստուածարեալ և շնորհազարդ քահանայից, մեծազարդ իշխանաց, քրիստոսասէր զինուորաց, արդարասէր վաճառականաց, պատուաւոր տանուտերաց, աշխատասէր երկրագործաց, ձեռահմուտ արուեստագիտաց, և ամենայն քրիստոսադաւան հայաստանեա ժողովրդականացդ հոգևոր որդւոց մերոց։ Ողջոյն սիրոյ և խաղաղութեան հասցէ յաստուածընկալ սուրբ Նշանացս և յառաքելական նշխարացս, և 'ի սուրբ Լուսաւորչին մերոյ աջէս և յաթոռոյս և 'ի մէնջ։

Գիտութիւն լիցի ձեզ, զի օրէնք է ծննդական և մահկանացու բնութեանս փոխանակել զմիմեանս, որպէս որք զմարմնաւորս ունին իշխանութիւն, այսպէս և որք զհոգևորական վերակացութիւն։ Այս

օրէնքն քննառուորականն, և յաղագս ո-
րոյ բանս է կատարեալ տնտեսնի․
քանզի յետ բարուոյ և խնամատուն
հովուի մերոյ Տէր Աբրահամու
զընթացան կատարելոյ, և առ հո-
գիւն քաղ կոչեցելոյ, ընտրեցաւ
առ 'ի ձէնջ ըստ հոգևոյն տեսու-
թեան Խաչատուր քահանայ՝ ա-
րեանաւուռ նորին ըստ մարմնոյն և ա-
ռաքեցաւ առ ամի որոյ աթոռոյս
վկայական ձեր գրով անարատ ու-
նել զքաղաքավարութիւն անձին
իւրոյ 'ի մանկութենէ․ զոր և ըն-
կալեալ մեր և հաւատացեալ վկայ-
ութեանս որ 'ի ձէնջ թղթով և բա-
նիւ, կատարեցաք 'ի վերայ դորա
զաստուածայինխորհրդածութեցն
ձեռնադրութիւնն՝ յաստիճան ե-
պիսկոպոսութեան վերակոչելով
կենդանեկիր խաչիւս և աստուածա-
խօս աւետարանաւս, և սուրբ
Լուսաւորչին աջովս, որպէս
զի յայսմ հետէ կալցի իշխանու-
թիւն առաքելական՝ կարգել զա-
պատամերականն յօրինաց Աստուծոյ
յերկինս և յերկրի, և զդարձեալն

յապաշաւանս 'ի վատթար գործոց՝ արձակել 'ի կապանաց մեղաց՝ յաղժամ ցուցցեն զպտուղն արժանաւոր ապաշխարութեան ։ Ի կարգ քահանայութեան, 'ի պատուարութիւն աստուածային և 'ի տեսչութիւն ժողովրդեան կոչեսցէ զանարատսն և զիմաստունսն և զվկայեալսն 'ի գործս բարեաց և յերկեղն Աստուծոյ և . մի 'ի ծանուցեալ արատաւորաց զղջք և յանձր կեղից և յանիմաստից ածցէ յայս գործ հոգևորական վասն երկիւղ ինչ հարկեցուցանող պատճառի ։ Պահեսցէ և զհրամայեալ օրէնսն 'ի տեառնէ որ յաղագս առն և կնոջ անբաժանելի զուգաւորութեան զի բայց 'ի բանէ պոռնկութեան, և որ այլ ևս են. 'ի կանոնս սուրբ հարցն գրեալ պատճառք, այլով իւիք մի արասցէ բաժինս որպէս լըսեմք զոմանց յեպիսկոպոսաց արեւելից, զի արհամարհելով զօրէնս Աստուծոյ, բաժանեն անխտրաբար սակս սակաւ ինչ կուրացուցիչ մամոնայի ։ Զի թէ որ արձակէ զկին

իւր և արասցէ այլ՝ չնայ ըստ բանին Քրիստոսի, այս և արձակեցն ընդ նմին զոր արձակեաց՝ չնութեան մեղջն պատժիցի ։ Տացէ և զանձն իւր օրինակ յամենայն գործս բարեաց՝ քահանայից և ժողովրդոց, զարդարելով նախ զոր յինքն պատկեր աստուածային զանազան երանգօք՝ հոգւոյն սրբոյ օրինօք, սրբութեամբ, արդարութեամբ, խոնարհութեամբ, հեզութեամբ, աստուածային երկեղիւն, սիրովն որ առ Աստուած և առ ընկերս, եղբայրսիրութեամբ, և մարդասիրութեամբ, աղքատասիրութեամբ և ողորմածութեամբ. պահօք, աղօթիւք և ամենայն ճգնաւորական հանդիսիւ յառաջագէմ եղեալ 'ի յերկնաւոր վարս առաքինութեան. որպէս զի իւրաքանչիւր ոք 'ի ձէնջ 'ի միոյ պատկերէդ յայդմանէ առեալ զայս օրինակ բարեաց, նկարագրեսջիք 'ի տիպս հոգւոց ձերոց ։ Որ և յետ օրինակ զինքն տալոյ ձեզ գործով, ուսուցէ բա-

նիւ զաստուածայի́ն օրէնսն երկրորդ-
դելով՝ի լսելեաց ձեր յամենայն ժամ․
անձնեցուցէ որ ըստ օրէ զհօտ եր-
կնաւոր հովուին զոր գնեաց ա-
րեամբն իւրով, լուսաւոր վարուք
շինելով զնոսա՝ի փառս Աստուծոյ,
և մի՛ անկարգաւոր բերմամբ պատ-
ճառ լինել գայթակղութեան, և
նուաղեցուցանել ՚ի քանաւոր ոչ-
խարաց անտի, կամ՝ կաղացուցա-
նել զոք յաստուածայի́ն ճանա-
պարհացն ընթացից․ զի մի՛ պա-
հանջեսցի զարիւն կորուսելոյն որ-
պէս յանբանից հովուաց հովուա-
պետըք ։ Տացէ զարծաթ բանին ՚ի
պատուիրանացն Աստուծոյ ՚ի սե-
ղանաւորս՝ որ են անձինք լսողացն․
զի յորժամ՝ եկեալ պահանջեսցէ
տոկոսեօք անդրէն զաճումն արդա-
թոյն և գտցէ, ասասցէ ծառայ բա-
րի և հաւատարիմ՝ մուտ յուրախու-
թիւն տեառն քո ։ Որով և դուք ա-
մենեքեան առ ՚ի գմանէ հովուե-
եալք և արածեալք ՚ի վայրի դա-
լարւոջ առաքինութեան, և՚ի ջուր
հանգստեան պատուիրանացն Աս-

տուծոյ, փութացարուք ընդ առաջնորդելով հոգւոց ձերոց մտանել 'ի յառագաստն ուրախարար երկնաւոր փեսային մշտնջենաւոր հարսանեաց, ասելով զորա մեծապանծ պարծանօք առաջի Աստուծոյ վասն ձեր, թէ Ահաւասիկ ես և մանկունք իմ, զոր ետուր ցիս։

Եւ այս լինի՝ յորժամ հետևողք լինիջիք աստուածային ճանապարհի վարուց զորա որ հանէ յերկինս, սուրբ պահելով զհոգի և զմարմին ձեր յամենայն պղծութենէ աշխարհական ցանկութեանց. զի տաճար լինիցիք Աստուծոյ հոգւով, և աստուածային տեսութեանն արժանաւորք ըստ երանութեանն տեառն։ Ի բաց լինել յանառակ արբեցութենէ որ մայր է սպանութեան և պոռնկութեան և ամենայն չարեաց, և յիմարեցուցիչ իմաստութեան, որ տուեալ է մեզ յԱստուծոյ. և սիրել զչափաւորութիւն 'ի գինի և յամենայն կերակրոց վայելս, այնքան մինչ զի զուրախութիւն միայն կրել 'ի գի-

նոյն արբամանէ ըստ մարգարէին Թէ Գինի ուրախ առնէ․ և ոչ զբազում տրտմականսն որ 'ի յանչափութենէ անտի ծնանի․ զբանս բարիս խօսել ընդ ընկերս առ 'ի պատճառս սիրոյ որպէս կամք են Աստուծոյ, և մի զԹշնամանաց և զանարգանաց և զչարաչար խռոված բարբառել խօսս, որք զատելուԹիւնն աճեցուցանեն․ և մի ոք տացէ զլեզուն գործարան սատանայի որպէս զօձին, զի նովաւ խօսեցի զբանս բարկուԹեան և զնենգուԹեան։ Խօսեցարուք զճշմարտուԹիւն իւրաքանչիւր ընդ ընկերի իւրում, և մի զխաբէուԹիւն և ըզստուԹիւն․ զի ճշմարտուԹիւնն յԱստուծոյ է, և ստուԹիւնն 'ի սատանայէ․ մի անիրաւէք և մի զրկէք զմիմեանս, այլ անկեղծ սիրով սիրեցէք զընկերս, և բարի արարէք միմեանց․ և զոր ինչ քեզ չար Թուի՝ ընկերին մի առներ․ և զոր ինչ կամիս Թէ առնեն քեզ այլք, զնոյն արա և դու այլոց որպէս պատուիրեաց Քրիստոս։ Աղօթից տեղ

կացէք, զի աղօթք են որ բարձրացուցանեն զմարդիկ առ Աստուած և խոնարհեցուցանեն զԱստուած առ մարդիկ։ Ողորմութիւն կարօտելոց մի՛ պակասեսցի 'ի ձէնջ, զի և դուք ողորմութիւն գտանիցէք յԱստուծոյ յաւուրն դատաստանի։ Եւ գլուխ ամենայն բարեաց՝ զի առաջնորդիդ ձերոյ հնազանդ կայցէք, և մեծապատիւ ընդունիցիք զդա որպէս զհրեշտակ Աստուծոյ. և մի՛ ըստ առաջին ընդելական սովորութեան արհամարհէք. այլ իբրև զնոր առաքեալ յԱստուծոյ ընդունեցարուք. և մի՛ ոք հակառակող և ընդդիմաբան գտցի, զի մի՛ կրեսցէ զխորասոյզ լինելն ընդ Դաթանայ և Աբիրոնի. և զհաս կանոնական զուարթառատ սրտիւ հատուցէք 'ի ձեռս դորա որպէս Աստուծոյ և աստուածայնոցն նուէր. յորմէ և ձեզ պարգևեսցի առ 'ի վերուստ բարեացն առատութիւն։

Եւ արդ 'ի մտանել դորա յաշխարհդ յայդ՝ մտցէ և շնորհք ողորմութեանն Աստուծոյ առ ձեզ, և

բարձցէ 'ի ձէնջ զամենայն պատուհաս որ վասն մեղաց, և տացէ պտղաբերութիւն երկրի ձերում և զաճումն անդէոց, և զբարերարութիւն թագաւորացդ, և զխաղաղութիւն յարտաքինն թշնամեաց, և զշինութիւն աշխարհաց. զի վայելեալք յանցաւոր կեանս հասանուք բարութեամբս որ 'ի սմա, արժանաւոր լինիցիք բարեաց գործովք յաւիտենական կենացն հասանել 'ի ձեռն Յիսուսի Քրիստոսի տեառն մերոյ, որում փառք յաւիտեանս. Ամէն:

Շնորհեցաք ձեզ դոմա և պարգևս հոգևորականս, զեւղն օծութեան, զմիւռոնն սուրբ, զոր 'ի լուսաւորութիւն արասցէ հոգւյն սուրբ նորածնելոցն աւազանաւն, և 'ի լրումն ամենայն եկեղեցական կարգաց:

# ՆՈՐԻՆ

## ՏՆ. ՆԵՐՍԵՍԻ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

*Բան Մխիթարութեան առ Վրան-գէալյան մարզնով, որք յանբարեաց ոմանց նախատեալք եղեն, զոր ծանուցին նմա գրով։*

ԸՆԿԱԼԱՑ զգիր Թախծանաց զախտացելոցդ մարմնով, զուրուկ անուանելոցդ որ յԵդեսիա քաղաք, և լցաք արտասուօք յաղագս պէսպէս հարուածեցելոցդ մարմնով, որ է յանկքննելի դատաստանացն Աստուծոյ, այն որ չափով և կշռով բաժանէ իւրաքանչիւրումն զօգտակարն, Թէպէտ և մարդիկ ոչ իմանան, զառողջութիւն և զախտաժէտութիւն, զմեծութիւն և զփո-

քըրկութիւն, զխարթամութիւն և զաղքատութիւն. որպէս և ձերդ-ակարութիւն և անբուժելի ցաւք մարմնոյ ոչ այլ ուստեք է, քան թէ 'ի հրամանէ կամացն Աստուծոյ։ Իսկ այնոքիկ որք խռովեցուցանեն և զզուեն զձեզ անյուսութեան բա-նիւք, և վէրս 'ի վերայ վիրաց և ցաւս 'ի ցաւոց յաւելուն որպէս 'ի դրելոցս ձեր ծանուցաւ, անտե-ղեակ են խրատանց բարձրելոյն, և արժանաւորս պատուհասի մեղան-չեն, թէպէտ և ոչ իմանան որ ըստ բարեկամացն Յոբայ շարժէ 'ի վե-րայ ձեր սատանայ զայնպիսիսն, զի ոչ միայն մարմնով, այլ և մտօք ևս տանջեսցէ զձեզ, ունայն 'ի մխիթա-րութեանց մեծի յուսոյն առնե-լով որ կայ ձեր առաջի։ Որպէս և Յոբ ո՛չ այնչափ խոցուածս ընդունէր 'ի յոգւոյն ընդ որդւոցն և ընչիցն կորստեան, և ընդ մարմնոյն վիրաց, որքան ընդ բարեկամացն և կնոջն զայրացուցանող բանից զորս յոր-դորէր սատանայ վիճել ընդ նմա, առ որս ասէր թէ բժիշկք մեղանչա-

կանք էք դուք, և ողջացուցիչք չա֊
րեաց ամենեքեան. եղիցի ձեզ համ֊
բանալ, և համարեալ լիցի յար֊
դարութիւն. և զի ընդդէմ կամացն
Աստուծոյ խօսէին առ Յոբ բարե֊
կամք նորա, յայտնի է յայնմանէ
որ 'ի կատարումն փորձութեանցն
ասէր Աստուած առ Նոսա. զի թէ
ոչ էր Յոբայ ծառայի իմոյ ա֊
ղօթս արարեալ վասն ձեր, սատա֊
կեալ էր իմ զձեզ վասն անիրաւ
խօսելոյ զնմանէ ։ Քանզի ստորու֊
թիւն է սատանայի, զի յորժամ
այլով հնարիւք ոչ կարէ խախտել
զառաքինի հոգին 'ի ճշմարիտ յու֊
սոյն որ առ Աստուած, գտանէ զո֊
մանս 'ի մարդկանէ թերի 'ի հաւա֊
տոյ, և տգէտ յիմաստութեան
դրոց, և 'ի չար գանձուց սրտից նո֊
ցա խօսի զանյուսութեան բանսն
առ ձեզ և առ նմանիս ձեր նեղեալս
մարմնով, որպէս զի անյոյս լինե֊
լովն՝ վտանգլին 'ի նեղութիւնսն և
տրտնջեն զԱստուծոյ, և անմասն
լինին 'ի վարձուցն. Որ և պահանջէ
աստուածային օրէնքն յամենայն

մարդոյ որ առողջ են մարմնով՝ ձեռ-
նտու լինել տկարացն, և ոչ հա-
կառակ նոցին. 'ի փարթամացն ար-
դեամբք գոյից բաշխելով զկարիս
նոցա, իսկ յաղքատացն՝ 'ի տես
գալ վշտացելոցն ըստ հրամանին
Քրիստոսի, և բարի բանիւք մխի-
թարել զնոսա, և վշտակից լինել
և արտասուել, յորժամ ոչ է ձեռն-
հաս օգնել նոցա այլ իւիք. և որ
զայս առնեն, մասնակից լինին երա-
նութեան աղքատացն։

Իսկ որք փոխանակ ողորմու-
թեան արհամարհեն և նախատեն
զնոսա, առ Քրիստոս վերաբերին
նախատինքն այն. և որպէս զողոր-
մութիւն զոր առնէ ոք աղքատաց,
իւր. համարի Քրիստոս, նոյնպէս
և զարհամարհանս նոցա և զբանս
նախատանաց, և զամենայն արտմու-
կան կիրս զոր ածէ ոք 'ի վերայ նե-
ղելոցն և տառապելոցն, յինքն վերա-
բերէ Քրիստոս. զոր և առ ձախա-
կողմեանսն ասէր, եթէ Քաղցեայ, և
ոչ կերակրեցէք զիս, և այլն ամե-
նայն. և յորժամ նոքա ասիցեն, Տէր

Երբ տեսաք զքեզ քաղցեալ կամ ծարաւի կամ մերկ, և ոչ պաշտեցաք զքեզ. ասէ ցնոսա, որովհետև ոչ արարէք միում՚ի փոքրկանցս յայսցանէ, և ոչ ինձ արարէք: Եւ յորժամ Պաւղոսի երևեցաւ Քրիստոս մինչ ՚ի հրէութեանն էր, և ձայնէր առնա յերկնից Սաւուղ Սաւուղ զի՞ հալածես զիս, ոչ եթէ զՔրիստոս որ ընդ աջմէ Հօր իւրոյ նստէր ՚ի բարձունս, կարող էր հալածել Պաւղոս, այլ զիւրոց հաւատացելոցն հալածանս՝ իւր համարելով ասէր զայն: Արդ որպէս զվկայիցն զբանտըս և զչարչարանս և զհեղումն արեանց իբրև անձին իւրոյ արարեալ՝ այնպէս վրէժ առնու Քրիստոս յանհաւատիցն յորժամ գայ փառօք հօր իւրոյ դատել զտիեզերս, նոյնպէս և իւր աղքատացն և վշտացելոցն, ՚ի վերայ նեղութեանցն զոր կրեն, և այլ ևս նեղութիւնս հատուցանէ որք բանիւք նախատանաց, կամ այլ ինչ անիրաւութեամբ փոխանակ մխիթարելոյ զնոսա և ցաւակից լինելոյ, վրէժս տացէն յար-

դար դատաստանի անդ որպէս զհակառակ հրամանին Քրիստոսի ։

Իսկ որ նեղելոցն վասն Քրիստոսի և աղքատացն անտեսուչ, և հիւանդացն, և հարկաւոր պիտոյիցն կարօտելոց՝ ողորմած լինի և օգնական ըստ կարողութեան իւրում, կամ կերակրելով, կամ զգեցուցանելով զմերկութիւն, կամ քաղցըր բանիւք մխիթարելով զվիշտն, կամ ողորմութիւն տալովն ազատեսցէ 'ի ծառայութենէ, 'ի յերկրորդ պալատեան իւրում յառաջ կոչէ Քրիստոս զայնպիսին, և առաջի ամենայն տիեզերաց գոհանայ զնոցանէ ասելով, Թէ Որքա առաւել քան զոր ես պատուիրեցի՝ արարին. զի ոչ միայն 'ի տես եկին առ իս մինչ հիւանդ էի և 'ի բանդի, այլ և ազատեցին զիս ողորմութիւն տալովն 'ի բանդէ կապանաց. և ձեռնտու եղեն ինձ 'ի հիւանդութեան դեղովք և պէսպէս սպասաւորութեամբք. և զքաղց իմ և զծարաւ ոչ միանգամ, այլ բազում անգամ՝ լցին, և ծածկոյթ եղեն մեր_

կութեան իմոյ զգեստուք իւրեանց.
պատապարեցին զիս 'ի տօթոյ և 'ի
սառնամանեաց: Արդ փոխանակ
ազատելոյն զիս 'ի մարմնաւոր կա-
պանաց անտի՝ ազատեալ եղիցին
ոգիք 'ի կապանաց մեղաց իւրեանց.
և փոխանակ տապականացու կերակ-
րոյն և ըմպելոյն զոր 'ի քաղց իմ
և 'ի ծարաւ կերակրեցին զիս, և ար-
բուցին ինձ, տաց նոցա զանապա-
կան կերակուրն և զանմահարարն.
Ջուրկենդանին, որովք այլ ոչ ևս քաղց-
նուն և ծարաւին. և ընդ դիւրա-
վաճնելն զգեստուցն իւրեանց ո-
րով ծածկեցին զմերկութիւն իմ,
զգեցուցից նոցա զլուսեղէն պատ-
մուճանն առաջին զոր մերկացաւ
նախահայրն իւրեանց: Եւ այ-
սուհետև 'ի տէրունական բանիցս հաս-
տատիմք որպէս և ասացաքս. Թէ Որ
արբուսցէ միում 'ի փոքրկանցս յայս-
ցանէ բաժակ մի ջուր ցուրտ մի-
այն, ոչ կորուսցէ զվարձս իւր: Եւ
եթէ փոքրս այս ողորմութեան յի-
շատակ պահի առ Աստուծոյ, և ոչ
կորիցէ վարձ տուողին, զինչ է ա-

նել վասն մեծամեծացն ։ Արդ զոր օրինակ մարտիրոսքն որք վասն 'ի Քրիստոս հաւատոցն համբերեցին պէսպէս չարչարանացն և մահու 'ի յանիրաւ մարդկանէ, փառաւորին և պսակին 'ի Քրիստոսէ յորժամ գայ միւսանգամ յաշխարհ, նոյնպէս և ամենեքեան որ զցաւս մարմնոյն և զնեղութիւնն որ գան 'ի վերայ այսմ ապականացու բնութեանս, և ժուժկալութեամբ տանին և գոհութեամբ զԱստուծոյ, ոչ ինչ նուազ 'ի վկայիցն Քրիստոսի՝ փառացն լինին արժանաւորք. մանաւանդ դուք որ առաւել նեղիք քան զայլս 'ի նեղելոցն մարմնով ։

Աբրահամ յսկզբան մանկութեան իւրոյ հաւատոյ եղև Աստուծոյ որպէս և գրեալ է, թէ Հաւատաց Աբրահամ յԱստուած, և համարեցաւ նմա յարդարութիւն. բայց յետ փորձելոյն զնա Աստուծոյ վասն որդւոյն յողջակէզ խնդրելոյ, յորում հաւատոյ գտաւ տարօրէն յօժարութեամբ՝ ապա լուաւ

զկատարեալ օրհնութիւնն Աստուծոյ, և հայր ազգաց բազմաց եղև, և հիմն և ժողովարան արքայութեան երկնից։ Եւ Յոբ յառաջ քան զփորձութիւնն վկայեցաւ յԱստուծոյ արդար լինել և անարատ. բայց յետ յաղթելոյ փորձութեանցն սատանայի համբերելովն և գոհանալով զԱստուծոյ, ապա արժանաւոր գտաւ յաղթանակի պսակողին համբերողաց։ Պաւղոսի վարշամակ երեսացն որով զքիրտն մաքրէր, զհիւանդս և զախտաժէտս բժշկէր. բայց իւրն մարմնոյ տկարութիւն զոր ունէր՝ ոչ բժշկեցաւ մինչև ցվախճան. քանզի կամէր Աստուծոյ այն էին որպէս և ինքն խոստովան լինի՝ երիցս ասէ աղաչեցի զտէր զի 'ի բաց արասցէ յինէն, և ասէ ցիս տէր, Շատ են քեզ շնորհք իմ; զի զօրութիւն իմ 'ի տկարութեան կատարի։ Նոյնպէս և ամենայն արդարքն 'ի հնումն և 'ի նորումն՝'ի փորձութիւնս յաղթող լինելովն հաճոյք գտան Աստուծոյ։

Եւ եթէ էր աղագաւ կամի Աս-

տուած զսուրբս իւր և զանզգեալըս
տալ 'ի նեղութիւն մարմնոյ 'ի կեա-
նըս յայս, և ոչ 'ի հեշտութիւն և 'ի
դիւրութիւն, ասեմք կարճառօտ
և յայտնի բանիւ յաստուածայնոցն
իմաստից ։ Քանզի նախահայրն մեր
Ադամ քաղցր պտղոյն հեշտու-
թեամբ կորոյս զաստուածայնն
զփառսն, և զկեանսն անմահականս
և զդրախտին վայելչութիւնն, և փո-
խանակ ընկալաւ զերկիր փշաբեր և
զկեանս տրտմականս և զախտակիցս
և զտաժանելիս, և մահ 'ի կատարա-
ծի ․ վասն որոյ և արարիչն և տէրն
ամենայնի երկրորդ Ադամ եղև և
անուանեցաւ, 'ի բնութենէ նորին
առնլով մարմին յաղագս փրկու-
թեան նորա ․ և ընթացաւ ընդ կեն-
ցաղոյս ճանապարհ ոչ հեշտու-
թեամբ, այլ գերագոյն տառապանու-
թեամբ 'ի յօրինակ մարդկան որք
ընդ նորին ճանապարհ կամեսցին
գնալ ։ Որպէս և ինքն իսկ տէրն
իւրաց տայ ճանապարհակցաց իւ-
րոց ասելով, Որ ոք կամեսցի զկնի իմ
գալ, թողցէ զամենայն ինչ զոր ու-

նի, և ուրասցի զանձն իւր, և առցէ զխաչ իւր հանապազ, այսինքն զպէսպէս առաքինութեանց չարչարանս, և ապա եկեսցէ զկնի իմ։ Եւ ընթացողացն զհետ Քրիստոսի այսպիսի ճանապարհաւ, ո՞ւր լինին օթևանք 'ի յերեկոյանալ կենցաղոյս․ ո՛չ 'ի յարկս համապատիւ ծառայից, այլ ուր տէրն է ամենեցուն որպէս և յայլում տեղւոջ հրամայէ, Թէ Ուր եսն եմ, անդ և պաշտօնեայն իմ եղիցի։

Եւ արդ վասն զի սակաւք են 'ի մարդկանէ՝ որք անձուկ ճանապարհաւն և նեղ դրամբն մտանեն յերկինս, այսինքն մաքուր կուսութեամբ, և կատարեալ առաքինութեամբք, ընդ որ դասք ճգնաւորացն գնացին յառաջագոյն և ուսուցին, վասն այնորիկ ամենիմաստ գիտութիւնն Աստուծոյ որ կամի զի ամենեքեան կեցցեն և 'ի գիտութիւն ճշմարտութեան եկեսցեն, և արժանաւոր լինին անճառ բարեացն խոստացելոց, ․ոմանց Թոյլ տայ ակամայ աղքատութեամբն ընդդէմ

կալ մարմնոյ հեշտութեանց, կարօտ լինելով հարկաւոր պիտոյիցն, զի այնու արդարասցին. և յայլոց վերայ արկանէ ցաւս մարմնոյ՝ ոմանց առօրեայ, ոմանց մինչև ցվախճան՝ յորժամ տեսանէ զի առողջութեամբ մարմնոյն հիւանդանայ հոգին մեղօք. որպէս զի մարմնոցն հիւանդութեամբքն բըժշկէ անզգուշաբար զհոգւոցն հիւանդութիւնն: Եւ զայս 'ի յերկուց անդամալուծիցն է տեսանել. մին զոր 'ի Պրովբատիկէ աւազանին, առ որ ասէր Քրիստոս յետ բժշկելոյն, թէ Ահա ողջացար, մի ևս այլ մեղիցես, զի մի չար ինչ լինիցի քեզ. յայտ արարեալ եթէ մեղքն էին պատճառք երեսուն և ութամեայ անդամալուծութեան նորին: Եւ երկրորդն զոր 'ի ցուցն կախեալ իջուցին առաջի նորա. առ որ ասէր Թողեալ լիցին քեզ մեղք քո. որով յայտ արար թէ վասն մեղաց կրեաց զցաւսն. և յորժամ զմեղսն զոր կրէր 'ի հոգին՝ եթող նմա Աստուած, յայնժամ և մար-

մինն նորա վասն մեղացն ախտացեալ, ընկալաւ զառողջութիւն: Եւ որք զայսպիսի ցաւս իբրև զգեղ բժշկութեան ընկալցին յԱստուծոյ, և գոհանալով զնմանէ համբերեն նեղութեանցն, և տանին կամաւորաբար զակամայ կիրսն, այնպէս համարի Աստուած, և հատուցանէ վարձս, որպէս թէ յաղագս պատուիրանի նորա կրեցին կամաւ զնեղութիւնն: Իսկ որք տրտնջեն զԱստուծոյ, և անխրատասեն զդատաստան նորա, թէ ընդէր չարացն ներէ կալ առողջութեամբ, և մեզ որ ոչ նոյնպիսի եմք, թոյլ տայ կրել չարչարանս և աղքատութիւնս, նոյնպիսիքն զնեղութիւնս կրեն, և 'ի վարձուցն ունայնս ելանեն, որպէս վարատեալքն 'ի քառասուն վկայիցն: Եւ այս լինի 'ի ապերախտութենէ և յանհաւատութենէ, որք ոչ իմանան զխորս դատաստանացն Աստուծոյ թէ ընդէ՞ր զոմանս կամի բժշկել նախասացեալ դեղօք, և զոմանց անփոյթ առնէ: Ո՞չ տեսանէք զի

և մանկունք բժշկաց փոյթս առնեն. զի զորս ճանաչեն ունելով զցաւս անբուժս, ոչ ձեռնարկեն առ այն֊պիսեացն խարանօք կամ դեղօք ինչ. Իսկ առ ծանուցեալսն հնար լինել բժշկութեանց, ամենայն ջանիւ փու֊թան տալ զառողջութիւն: Նոյն֊պէս ճշմարիտ բժիշկն հոգւոց և մարմնոց Աստուած հայեցեալ 'ի սիրտս մարդկան, առ որս տեսանէ բարեաց ինչ մասն, արկանէ 'ի վե֊րայ առողջութիւն, կամ ցաւս, կամ` զերկուսեան, զի զտակաւ բա֊րւոյն սերմն 'ի բազում պտղա֊բերութիւնս աճեցուսցէ: Իսկ անբժշկելիս զոր ճանաչէ 'ի ցաւս մեղաց, ոչ ձեռնարկէ 'ի բժշկել հիւանդութեամբ կամ առողջու֊թեամբ. այլ թողու տալ ըստ կամս անձանց գնալ մինչև 'ի վախճան, 'ի փոքր ինչ բարեաց թէ ունիցին հատուցումն, զի անդ առանց պա֊տասխանւոյ երթիցեն:

Բայց ո՛չ ամենայն հիւանդու֊թիւնք վասն նախասացեալ պատ֊ճառի են. զի բազումք յաղագս

հակառակութեանց տարերացս ծընանին, յորոց և մարմինս է. զոր և հաւաստարապէս կրեմք որքան 'ի բնութիւնս եմք ախտաւոր՝ եթէ արդարք և եթէ մեղաւորք. այլ այն որ յԱստուծոյ լինի՝ յայտնի է իմաստնոց, յորժամ իմաստութեամբ քննեսցեն 'ի գիրս սուրբս:

Դարձեալ և զայս ասեմք եթէ զաղքատութիւն և զնեղութիւն զոր արկանէ Աստուած 'ի վերայ նեղելոց, ոչ միայն վասն մեղաց նոցին մաքրութեան է որպէս վերագոյնդ գրեցաք, այլ զի առողջքն և փարթամքն գթալով 'ի նոսա և ողորմութիւն առնելով նոցա, թողութեան մեղաց հասցեն յԱստուծոյ, և ողորմութիւն առցեն 'ի նմանէ ըստ Ճշմարիտ երանութեան Քրիստոսի զոր ասէ. Երանի՜ ողորմածաց, զի նոքա ողորմութիւն գտցեն: Որպէս զի ամենեքեան արժանաւորեսցին խոստացելոց բարեացն հասանել, աղքատք աղքատութեամբն, և չարչարեալքն մարմնոյ ցաւօք՝ չարչարանօք, և նե-

զեալքն՝ ներողութեամբքն, յորժամ
զոհութեամբ տանէին զներողութիւնս,
և զչարչարանսն և զաղքատութիւնսն,
և ըստ պատուիրանացն Աստուծոյ
մաքուր վարուք կեցցեն։ Նոյնպէս
և մեծատունքն և ՚փափկացեալքն՝
՚ի ձեռն ողորմած լինելոյն առ այն֊
պիսին հասցեն մեղաց քաւու֊
թեան և երկնից բարութեանցն,
զքաղցեալսն կերակրելով, ըզ֊
մերկսն զգեցուցանելով, զօտարսն
ժողովելով, զհիւանդսն և զբան֊
դեալսն յանձանձելով և մխիթա֊
րելով. ո՛չ ճշդութեամբ, զի մի ըստ
յիմար կուսիցն ՚ի պակասել իւ֊
ղոյն շիջանիցին լամպտերքն. այլ
ըստ մարգարէին խրատու սփռել
զուարթառատ սրտիւ և տալ տնան֊
կաց. զի որ խնայէ ՚ի ժամանակի
սերմանելոյն ՚ի ցորեանն և ճշդե֊
լով սերմանէ յերկիր, ճշդելով և
հնձեսցէ ՚ի ժամանակի հնձոցն. և
որ առատապէս սերմանէ, լնու բազ֊
մապատիկ առձեռամբ զգիրկս իւր ո֊
րայիւքն։ Որ և լսէ զերանաւէտ բար֊
բառն Քրիստոսի, եթէ Եկայք օրհ֊

նեալք Հօր իմոյ, ժառանգեցէք զիսկզբանէ պատրաստեալն ձեզ զարքայութիւնն ։

Որոց լիցի ամենեցուն մեզ հասանել, որք ողորմելի ումեքն զկենցաղական զայս կեանս, և որք ողորմութեամբն որ առ նոսա՝ գտեն զարքայութիւնն երկնից 'ի Քրիստոս Յիսուս 'ի Տէր մեր, որում փառք և զօրութիւն յաւիտեանս յաւիտենից. Ամէն ։

# ՆՈՐԻՆ

## ՏՆ. ՆԵՐՍԵՍԻ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

Թուղթ ՚ի Սամոսատիա քաղաք յաղագս Արեւորդւոյն դարձի ։

Ներսէս ծառայ Աստուծոյ, և ողորմութեամբ նորին կաթողիկոս Հայոց՝ պատուական քահանայիցդ որ ՚ի Սամոսատիայ քաղաքէ, Թորոսի քորեպիսկոպոսի և այլ ևս քահանայակցացդ քոց, և աստուածասէր արանցդ, Գազանիդ և համօրէն՝ տանուտերացդ հոգևոր որդւոց մերոց՝ ողջոյն սիրոյ և օրհնութեան առաքեմք յաստուածընկալ սրբոյ Նշանէս, և ՚ի սուրբ Լուսաւորչի աջէս և աթոռոյս. զորս միշտ ողջ պահեսցէ տէր Աստուած յոգի և ՚ի մարմին ։

Գիտելի է ձեզ, զի վաղ ուրեմն եհաս'ի ձէնջ գիր առ մեզ յաղագս Արեւորդացդ որք 'ի քաղաքի ձերում բնակին, եթէ կամին և աղաչեն 'ի հօտն Քրիստոսի խառնել զնոսա: Զի որպէս ազգաւ և լեզուաւ 'ի տոհմէ Հայոց են, յօժարին զի և հաւատով և հոգւով 'ի նոյն միաբանութիւն հաւատարեացին ընդ նոսա: Եկին և առաջի մեր 'ի նոցանէ, և զնոյն բան աղաչանաց խօսեցան ընդ մեզ. և մեք ծանուցաք նոցա զոր ընթերցեալ էաք 'ի գրոց վասն դիւապաշտ աղանդոյ նոցին, զոր և լուեալ էաք 'ի համբաւէ յընտելակցաց նոցին զզանազան չարիս բանիւ և գործով զնոցանէ: Զի որպէս ազգն Հոռոմոց Պողոմելոյք անուանեալք՝ մնացին խաւարեալք 'ի լուսոյ աւետարանին փառացն Քրիստոսի, և թագնաբար ունելով 'ի սիրտս զաղանդն սատանայի՝ ոչ հնազանդեցան առաքելոցն քարոզութեանց, այսպէս և Արեւորդիքդ յազգս մեր, 'ի մտսին սատանայական խաւարին

մնացեալք, ոչ կամեցան լուսաւո-
րիլ աստուածային լուսովն 'ի ձեռն
Լուսաւորչին մերոյ սրբոյն Գրիգո-
րի, այլ մերժեցին զխաւար և ոչ
զլոյս մինչև ցայսօր ժամանակի: Եւ
թէ 'ի նուազեալ բարեաց ժամա-
նակ մեր ողորմեցաւ Աստուած նո-
ցա, և եբաց 'զխաւարեալ աչս հո-
գւոց նոցին հրաժարիլ 'ի սատանայէ
և զիմնել առ Աստուած ոչ խաբէ-
ութեամբ, այլ ճշմարտութեամբ,
զոհութիւն զթութեանն Աստու-
ծոյ մատուցուք: Որպէս և դոքա
որ առ մեզ եկին, յուրաստ եղեն
երդմամբ մեծաւ 'ի չար աղանդոյ
անտի, և նզովեցին բերանովք իւր-
եանց՝ որ զայնպիսի ծածուկ անաս-
տուածութիւն ունիցի յինքեան.
և զոր ինչ սահման եդաք նոցունց՝
յանձն առին կատարել զամենայն:
Վասն որոյ և մեք զուէրոնականն
կատարեմք հրաման առ նոսա, թէ
Որ գայ առ իս՝ ո՛չ հանից արտաքս:
Քանզի կամի Աստուած զամենայն
մարդիկ զի կեցցեն և 'ի գիտութիւն
ճշմարտութեան եկեսցեն ըստ ա-

ռապէտըս: Եթէ ճշմարիտ լինիցի դառնալ նոցա առ Աստուած, ուրախութիւն է Աստուծոյ և հրեշտակաց 'ի յերկինս, և մեզ 'ի յերկրի ընդ փրկութիւն այնքան հոգւոց մարդկան: Իսկ եթէ ստութեամբք լինիցի դարձ նոցա որպէս և կարծեն բազումք զնոցանէն, և դարձեալ անդրէն 'ի փոխանծն իւրեանց դառնան, մեզ և ոչ մի ինչ է վնաս. զի և մեք վասն հրամանին Քրիստոսի կամիմք ջանամք արկանել զնոսա՝ թէ հնար էր և զամենայն ազգս, 'ի յուռական աւետարանի նորա. այլ ընտրելն և ժողովելն զբարի բարին յամանս ըստ առակաւոր բանի աւետարանին, և զխոտանն 'ի բաց ընկենուլ արդար դատաւորին է՝ յորժամ նըստցի յաթոռ փառաց իւրոց, և հատուցանէ իւրաքանչիւր ըստ հաւատոց և գործոց:

Արդ աստուածային հրամանաւն զայս ինչ պատշաճ համարեցաք առնել առ դոսա՝ զալ ամենայն քահանայիցդ հանդերձ պա-

տուեալսն աշակերտացդ. Մերոյսք ՚ի
մեծ եկեղեցւոյն որ ՚ի քաղաքիդ,
և ժողովել զՍրբութիւն անուա-
նեալ զամենեսեան, զարս և զկա-
նայս և զմանկունս ՚ի դպրոցս եկե-
ղեցւոյն. և նախ հարցանել ցնոսա,
եթէ կամիք ՚ի բոլոր սրտէ և յամե-
նայն մտաց և ՚ի զօրութենէ ձեր-
մէ թողուլ զառաջին մոլորութիւն
հարցն ձերոց, և գալ ՚ի Ճշմարիտ
աստուածգիտութիւն քրիստոնէու-
թեանս: Եւ յորժամ զայս յանձն
առնուն, և ասեն եթէ կամիմք և յօ-
ժարութեամբ սրտից ՚ի բաց կամք
՚ի սատանայական խաբէութեանց
հարցն մերոց, և դիմեմք առ Քրիս-
տոս, յայնժամ դարձեալ երկցս
անգամ հարցէք ցնոսա որպէս ընդ-
երախայսն ՚ի ժամ մկրտութեանն,
եթէ հրաժարիք ՚ի սատանայէ և
յամենայն խորհրդոց և ՚ի բանից
և ՚ի գործոց նորա: Եւ երբ յանձն
առնուն և ասեն թէ հրաժարեմք,
ապա յարևմուտս դարձուցէք զդէմս
երեսաց նոցա և ասացէք, թէ թքէք
յերեսն սատանայի երկցս անգամ,

և անարգեցէք զնա որպէս զպեղծ, և զսուտ և զանիրաւ։

Եւ յորժամ զայս առնեն, ապա ուսուցէք նոցա թէ զարեգակն մի այլ ինչ համարիք, քան թէ ճրագ աշխարհի զոր առեղծ արարիչն Աստուած, և եդ զնա յերկինս լուսաւոր լինել երկրի, նոյնպէս զլուսին և զաստեղս. և զբարտի ծառն մի աւելի պատուէք քան զուռին և զկաղամախին, և զայլս՚ի ծառոց. և մի կարծէք թէ փայտ խաչին Քրիստոսի բարտի էր. ստութիւն է այդ. և խաբէութիւն սատանայի որ մոլորեցոյց զձեզ, և եհան յԱստուծոյ։ Քանզի այդ ծառ որ բարտի անուանի՝ ՚ի կռապաշտութեան ժամանակն ՚ի պաշտօն առեալ էր նոցա, յորս և դիք մտանէին և ՚ի մարդկանէ երկրպագութիւն ընդունէին. և մոլորութիւնն այն՝ թէպէտ և յայլոց ազգաց որ յաշխարհի են, բարձաւ ողորմութեամբն Աստուծոյ, բայց առ ձեզ որպէս զխմոր չարութեան թաքոյց և պահեաց սատանայ. զորս և դուք բարձէք զչար

սովորութիւնն զայն 'ի ձենջ, եթէ կամիք գալ առ Ճշմարտութիւնն Քրիստոսի. և ոչ միայն աւելի պա-տիւ մի՛ դնէք բարտի ծառոյն քան այլ ծառոց, այլ և անարգ համա-րեցէք զնա քան զայլ ծառս, որով և սատանայ անարգեսցի: Եւ եթէ այլ ոք 'ի ձենջ գիտէ առ նոսա դիւականն ինչ բժժանք, և զայնոսիկ յայտնեցէք նոցա և ասացէք թո-ղուլ և 'ի բաց կալ:

Եւ ապա դարձուցէք զերեսս նոցա յարևելս, և հարցէք թէ հա-ւատայք յամենասուրբ Երրորդու-թիւնն, 'ի Հայր և յՈրդի և 'ի սուրբ Հոգին, որ է երեք անձնաւորու-թիւն և մի աստուածութիւն, և մի բնութիւն, և մի զօրութիւն, և մի իշխանութիւն, և մի արարչութիւն որով եղեն յոչընչէ ամենայն արա-րածք բանիւ նորա՝ երևելիք և աներ-ևոյթք, երկինք և երկիր, և որ ինչ յերկինս և որ ինչ յերկրի, հրեշ-տակք և մարդիկ, բանաւորք և ան-բանք, արեգակն և լուսին և աս-տեղք լուսաւորք տիեզերաց, և

կենդանիք երկրաւորք և օդայինք, և ջրածինք, և ամենայն բոյսք և տունկք, և անշարժք և շարժունք. և չիք արարած գոյաւոր անմարմին կամ մարմնաւոր՝ որ ոչ է ստեղծուած ճշմարտին Աստուծոյ:

Հաւատամք և 'ի մարդեղութիւնն Քրիստոսի, որ մի յերեք անձնաւորութենէն Որդին Աստուծոյ կամեցաւ լինել հաճութեամբ Հօր և Հոգւոյն սրբոյ որդի մարդոյ, ծնանելով 'ի միշտ սրբոյ կուսէն Մարիամայ վասն փրկութեան մարդկան. որ և մկրտեցաւ 'ի Յովհաննէ 'ի Յորդանան, և 'ի Հօրէ և 'ի Հոգւոյն վկայեցաւ, և փորձեցաւ 'ի սատանայէ և յաղթեաց փորձողին: Զդևս հալածեաց, զհիւանդութիւնս հոգւոյ և մարմնոյ որք հաւատով խնդրէին 'ի նմանէ՝ բժշկեաց. զկոյրս լուսաւորեաց, զկաղս գնացոյց, զմեռեալս յարոյց, 'ի վերայ ծովու իբրև 'ի ցամաքի գնաց. հողմոյն և ծովուն սաստեաց որպէս զօրաւոր, և դադարեցին. սակաւ հացիւք զբիւրս կերակրեաց: Յես

բազում աստուածայնոյն փորձու-
թեանց և նշանացն զոր արար , եկն
կամաւորութեամբ 'ի փրկագործ
չարչարանսն զոր կրեաց մերով բը-
նութեամբս : Ի խաչին բևեռեցաւ,
և զԱդամ և զծնունդս իւր ազ-
ձակեաց 'ի կապանաց մեղաց : Մե-
ռաւ մարմնով և կենդանացոյց ըզ-
մարդիկ հոգւով : Էջ 'ի գերեզման ;
և աւարեաց զհոգիսն որ 'ի դժոխս :
Յարեաւ 'ի մեռելոց յերրորդ ա-
ւուր, և շնորհեաց զյոյս յարութեան
մարդկան ըստ նմանութեան իւր 'ի
յերկրորդ գալստեանն իւրում :
Համբարձաւ յերկինս մարմնով մեր
առաջի աշակերտաց իւրոց , և նըս-
տաւ ընդ աջմէ Հօր իւրոյ 'ի բար-
ձունս . որ և գալոց է միւսանգամ
դատել արդարութեամբ զամենայն
ազգս մարդկան , բարեգործացն
որք 'ի Ճշմարիտ հաւատս քրիստո-
նէութեանն են , զբարիս հատու-
ցանելով, և անհաւատիցն և ան-
դարձ մեղաւորացն զյաւիտենական
տանջանսն պատրաստելով ընդ սա-
տանայի և դիւացն նորա . և ինքն արդ

զոմք խռովքն արդարովք Թագաւորեսցէ անվախճան յաւիտեանս յաւիտենից:

Եւ յորժամ զճշմարիտ հաւատոյ դաւանութիւնս քրիստոնէից զոր գրեցաք՝ յանձն առնուցուն և խոստովանին, ածէք զնոսա յեկեղեցին. և զորս ոչ են մկրտեալ 'ի նոցանէ՝ երախայացուցէք, և խոստովանեցուցէք զկատարեալն հաւատով, և դնէք փոքր ինչ ապաշխարութիւն, և յետ ժամանակի ինչ մկրտեցէք զնոսա: Եւ որք տղայքն են և մանկունք, զնոսա 'ի ժամին մկրտեցէք. իսկ զայնոսիկ որք յառաջագոյն մկրտեալք լինին, միայն զխոստովանութիւնն առեալ, և ապաշխարութիւն եդեալ, և սուրբ մեռոնաւն զճակատսն դրոշմեցէք և զզգայարանսն՝ ասելով, Յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. և ապա խառնեցէք 'ի հօտն Քրիստոսի: Եւ որպէս հրամայեաց Քրիստոս աշակերտացն թէ Գնա մկրտեցէք զաշակերտեալ հեթանոսն՝ Ուսուցէք նոցա պահել զամենայն զոր

պատուիրեցի ձեզ, զնոյն օրինակ և
դուք արարէք՝ պատուէր տալով՝ 'ի
բաց կալ 'ի սպանութենէ, 'ի շնու-
թենէ, 'ի պոռնկութենէ, 'ի գո-
ղութենէ, 'ի նենգութենէ ընկե-
րաց, 'ի յափշտակութենէ, և յա-
մենայն չար գործոց ատելեաց զորս
ատէ Աստուած. և փոխանակ այ-
սոցիկ լինել եղբայրասէր, սրբա-
սէր. և ոչ միայն զայլոց ինչ ոչ գո-
ղանալ, այլ և յիւր արդար ստա-
ցուածոցն տալ կարօտելոյն ըստ
հրամանին Քրիստոսի. և մի նա-
խանձել նոցա եթէ զոմանս տեսա-
նեն 'ի հին քրիստոնէից զի աներ-
կեղութեամբ գնան, և օրինացն
Աստուծոյ զհակառակն գործեն։
Նա և 'ի քահանայից տեսցեն ան-
կարգ ոք և աներկիւղ, մի գայթակ-
ղեսցին սակաւուցն վատութեամբ
և 'ի Ճշմարիտ օրէնս քրիստոնէից.
այլ 'ի լաւսն և 'ի յընտիրսն հայի-
ցեն, և յայնցանէ առցեն իւրեանց
օրինակ բարեաց։ Զի վատացն ոչ
թէ օրէնքն Աստուծոյ հրամայեն
վատ լինել, այլ իւրեանց ծուլու-

Թիւնն և անմտութիւնն. և սատանայ որ հակառակ է բարեաց՝ տայ զօրէնսն Աստուծոյ արհամարհել 'ի կորուստ անձանց իւրեանց նոյնպէս և կանանցն պատուէր տուք 'ի կախարդութենէ և 'ի դեղատուութենէ և յամենայն գիւական աղանդաւորութենէ 'ի բաց կալ. զի ամենայն ոք որ կախարդութեան զհետ երթայ, գիւաց է պաշտօնեայ և երկրպագու. որ առնէ և որ առնել տայ, այնպիսին ոչ հաղորդի է արժանի և ոչ Թաղման քրիստոնէից: Նոյնպէս և որ զպիղծ և զաղտեղի իրս 'ի կերակուրս կամ յըմպելիս խառնեալ՝ տայ ուտել քրիստոնէի վասն գիւական սիրոյն որ յԱստուծոյ օտարէ և 'ի սուրբ հաղորդութենէն զրկէ, և զկատարեալ ատելութիւնն ծնանի. և զգուշացուցէք զնոսա յամենայն 'ի յայսպիսի բժժագործութենէ. և այս [illegible] հասարակաց օրէնք նոցա 'ի վերայ տասացեղցս՝ արանց և կանանց, զորս կարճառօտիւք և Թեթեւագոյն գրեմք: Երկիցս կամ ե-

ըկցս 'ի տարուոջն խոստովանել ըղձ-
յանցանս խուրեանց քահանայից ,
կամ եւ յոլովագոյն • և յանձն
առնուլ զապաշխարութիւնն զոր
դնէ քահանային վասն մեղաց , կա-
տարել պահօք և աղօթիւք և ողոր-
մութեամբ • որով և թողութիւն
յանցանացն զոր խոստովանեցաւ ,
արժանաւորի մեղուցեալն գտանել
յԱստուծոյ: Եւ յամենայն ժամու
աղօթից եկեղեցին զհետ այլ քրիս-
տոնէիցն յաղօթարանն առ քահա-
նայսն , և երկրպագեսցեն արա-
ջին ամենայնի Աստուծոյ , և աղօ-
թըս արասցեն առաջի նորա , և
խնդրեսցեն զքաւութիւն մեղաց ,
և արժանի լինել արքայութեանն
երկնից , և փրկել 'ի գեհենին տան-
ջանաց • և պահել ղհոգի և զմարմին
'ի կեանս յայս անարատ և անփորձ
յամենայն որոգայթից սատանայի
և յամենայն վտանգից և 'ի փոր-
ձութեանց: Եւ զպահս կանոնա-
կանս զոր այլ քրիստոնեայք պահեն
ընդ. տիեզերս , պահեսցեն և նոքա
սրբութեամբ 'ի պարարտ կերակ-

րոց եւ 'ի Թմբրեցուցիչ ըմպելեաց ։ Ուսուցէք նոցա եւ զայս , ունկնդիր լինել եւ լսող աւետարանական ձայնին եւ այլ աստուածաշունչ գրոց բանից ։ Եւ որ 'ի քահանայից գիտութիւն ունիցի , հասկացուցէք նոցա զծածուկ բանս գրոց ըստ կարի ձերում ։ Առէք եւ յորդւոց նոցա յուսումն գրոց տղայոց . զայս եւ մեք խնդրեցաք 'ի նոցանէ յորժամ եկին առ մեզ , եւ նոքա յօժարութեամբ խոստացան տալ , զի Թերեւս արժանի լինիցին 'ի զաւակաց իրեանց քահանայութեան , որպէս եւ յորդւոց քրմացն սուրբն Գրիգոր ուսոյց եւ ձեռնադրեաց քահանայս եւ եպիսկոպոսունս ։ Եւ ձեզ որ ջանայք աշխատութեամբ եւ ուսուցանէք , մեծապէս վարձս տայ Աստուած` որպէս ասաց մարգարէին Թէ Որ հանէ զպատուական յանարգէն , բերան իմ կոչեսցի . եւ 'ի վերայ ամենայնի եւ զանուանն զօր ունին 'ի նախնեացն իւրեանց Արեւորդիք կոչելով , յայսմ հետէ փոխեսցեն , եւ 'ի Քրիստոսի մեծ եւ 'ի սքանչելի

անուամն անուանեսցին քրիստո-
նեայք, որք սուրբ առաքելական հա-
ւատացելոցն 'ի Քրիստոս եղեն զա-
նուանս զայս 'ի մեծն Անտիոք : Եւ
մեք աղաչեսցուք զԱստուած չմնել
զդասս 'ի վերայ վիմին հաւատոյ,
զի և դրունք դժոխոց սատանայ
և կամարարք իւր ոչ կարասցեն
շարժել զդասս 'ի Ճշմարիտ հաւա-
տոյ և օրինաց տեառն մերոյ Յի-
սուսի Քրիստոսի . ընդ որում Հօր
և Հոգւոյն սրբոյ փառք և զօրու-
թիւն յաւիտեանս յաւիտենից .
Ամէն :

Եւ յորժամ շնորհօքն Աստու-
ծոյ խառնեսցին 'ի հօտն Քրիստոսի ըստ
վերագրելոցդ օրինակի, իմաստուն
և գիտնական և երկիւղած 'ի
տեառնէ քահանայից եղիցին նոքա
ժողովուրդ որ կարող լինիցին յաս-
տուածաշունչ գրոց միշտ ուսուցա-
նել զնոսա և խրատել . և մի՛ վասն
նուիրաց եկեղեցւոյ գայթակղե-
ցուցանել զնոսա՝ հարկիւ պահան-
ջելով կամ զմկրտելոյ, կամ զխոս-
տովանութեան, կամ զհաղորդի ,

կամ զթաղման , կամ զայլ ինչ պտղաբերութեան. այլ զոր իւրեանց կամաւ ընծայեն՝ բաւական համարել: Եւ հեզութեամբ խրատեցէք զնոսա և մի խստութեամբ, զի և դուք վարձս բարեաց ընդունիցիք յԱստուծոյ , և մի զգայթակղեցուցչացն զպատուհաս , երկան իշոյ կախել ընդ պարանոց և անկանել 'ի ծով:

# ՆՈՐԻՆ

## ՏՆ. ՆԵՐՍԵՍԻ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

Թուղթ 'ի Կոստանդնուպօլիս առ-ռն Պաւղոս քահանայ հայկազն 'ի Տարոնէ Կիլիկեցւոյ, որ գնացեալ էր անդ հոռոմացեալ, և բամբասէր զազգս մեր 'ի ժամանակս Կիւռ Մանիէլ Թագաւորին յորժամ հանդերձեալ էին միաբանել Հայք և Յոյնք, և նա գրեաց առ Տէր Ներսէս, և 'ի չփմելս եղև իւրոյ ճառսն:

ՊԱՒՂՈՍԻ համանուան մեծին և քաղաքակցի, երանւոյն Թէ և գործակցի յաւետարանին Քրիստոսի և ուսողի և կրողի զպատկառութիւն չարչարանացն որոյն 'ի մարմնի, ընթերցաք զգիր յընդդիմադրութիւն ամբաստանողացն զքէն

տան մեզ, որով և անզգուշալին բան ոչ գոլ ծանուցաւ հաւատարիմ. քանզի անմտոյց, և ոչ զճաշակս առողջոյ իմաստութեան է այս՝ ուսանել ելն, հայրենի աւանդութեանն բամբասանօք, և այն ստութեամբ և ոչ ճշմարտութեամբ՝ յարգոյ լինել կարծելով ներհակացն ուր չոգաւ, որպէս և բազումք 'ի յառաջագունից հատուածելոցն 'ի մէնջ արարին այսպիսի: Եւ նոքին, առ տխլութեան մերում հաւատացին անքըննաբար զղջաբանութեանն 'ի նոցանէ. և անդուստ թևակոխեալ բազումք յայնպիսեաց այորէն դարձեալք ուսանի ելին, խօսէին զանպատշաճսն զոր ոչ տեսին կամ լըւան առ կատարեալսն, այլ թերես առ նուազս 'ի հեղգացելոցն. և որք նոքին տխլութեամբ զգածեալք 'ի մերասերիցս՝ ախորժելով լսէին զայնոսիկ և հաւատային. և յայսպիսի սերմանեաց աճեցեալ և պտղաբերեալ, որպէս թուի իմաստուն քննողաց, այսքան խաւարին տխլութիւն 'ի մէջ երկուց ազգաց:

Այլ դու թէ և յայտնեսցես անհ-
հանճարարար շաղակրատանաց ան-
պատրաստ եւ ըստ զրեցելումն , սակայն
ոչ և այլովք , զոր և մտացդ քո
խղճի տացուք զդատողութիւն։ Եւ
արդ զմտաւ ած , զի եթէ ապս-
տամբելովք 'ի քոյոց հայրենա-
տուր աւանդից՝ յաւելաւ քեզ
կամ ուղղափառութիւն հաւա-
տոյ , զոր ոչն ունէիր 'ի խրատուէ.
բանից ուղղափառ վարդապետաց
եկեղեցւոյ , կամ երկեղ Աստու-
ծոյ , որ է սկիզբն իմաստութեան ,
կամ երանական մաքրութիւն հո-
գւոյ որ տեսութեանն Աստուծոյ
արժանաւորէ , կամ այլ ինչ յա-
ռաքինութեանց գործոց՝ որովք
հաճոյանայ մարդ Աստուծոյ , բարի
համարեաց անձին զհատուածելդ.
Թէպէտ և կարող էիր և աստանօր
գործելովն զբարին , որպէս բա-
զումք , արժանաւորիլ խոստացելոց
բարեացն : Ապա թէ ոչ ինչ յայս-
ցանէ յաւելաւ , այլ կամ նուա-
զեաց , կամ ներհականն ներգոյա-
ցաւ , դու քեզէն ծանիր զշահն կամ

զաստուածականն : Վասն որոյ նմանողք եղէք դուք՝ որպէս ինձ թուի, այսմ օրէնսակաց, որպէս թէ երկուց հարազատաց խռովութեանց պատերազմելով ընդ միմեանս. և եթէ ոք 'ի զօրացն 'ի խռովութեան ժամանակ հաստատեալ յիւրացն առ օտարն անցանիցէ, 'ի լինել խաղաղութեանն նախատանս յամենեցունց կրէ իբր դրժողս տերանց : Զսոյն կրէք և դուք և այք ըստ ձեզ՝ 'ի լինել ըստ կամացն Աստուծոյ միաւորութեանս : Եւ դարձեալ զոր օրէնսակ յաւուրս քառանորդացն եթէ ոք նախ քան զլըրումն պասեքին լուծանիցէ 'ի յարգելեալ կերակուրս, իբրև զօրինազանց դատապարտի. իսկ յետ յարութեանն տեառն մինչ ամենայն հաւատացեալք 'ի Քրիստոս լուծանեն, անդատապարտ է և զուտելն՝ թէպէտ և մի նոյն են կերակուրք. ըստ որում և 'ի պտուղ գիտութեան ծառոյն եթէ ոչ նախ քան զժամանակ հրամանատուութեանն Աստուծոյ մերձեալ էր մարդն, ոչ

## ՆՈՐԻՆ

## ՏՆ· ՆԵՐՍԵՍԻ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

Պատասխանի Գրոյ ուրուամն՝ որ Գրեալ էր առ նա բանս ղկծանաց յանդուգն Աբեղութեամբ ։

Ընկալաք զոր 'ի քէն գիր սի-
րոյ և յանդիմանութեան ըստ ի-
մաստնոյն, զի բարի ասէ զվէր սիրե-
լւոյ՝ քան զհամբոյր թշնամւոյ. և
ոչ տխրեցայ, այլ ուրախ եղէ, քան-
զի ես ծանուցեալ եմ ինձ, և ոչ
անծանօթ յինէն, և այնքան՝ մինչ
զի ոչ միայն քոյդ լեզու և գրիչ,
այլ թէ և համօրէն ծննդոց Ադա-
մայ բան և գիր ջանային 'ի յայտ
բերել զոր յիս պարսաւելի կիրք;
ոչ էին բաւական՝ մի միայն ունելով
այնց կրից մխիթարութիւն զգի-

տեղին, և ոչ զանգիտանայցեն զնոսա : Բայց վա՜յ ախտացելումն յախտէ, որ խոցի և ոչ ընդոստնու որպէս քնեալ մասն մարմնոյ. և չարչարի՝ և անչարչարելի կարծի քնքեան. որով և անբժշկելի է թէ մարմինն ախտանայ յայտնակի, և եթէ հոգի։

Գրեալ ես երկնչել ՚ի կեղծաւորութենէ որպէս յանհաւատութենէ. և արդարացուցայք զքեզ յայտնակի, քանզի տիրական է հրամանն. վասն որոյ առ իս ոչ բանիւ և ոչ գործով՝ վարեսցիս կեղծաւորութեամբ, զի քեզ յանցանք է, և մեզ ստգտանք՝ ասա ևընդունելոյն գովութեանն, որում ոչ արժայն անշնորհակալու մնանք, այլ և գայթակղեմք առ միոս : Գրեալ ես թէ վասն քո եկի, և ոչ վասն անապատիս կարեաց, և այլ ևս բանք. և թէ առանց Աստուծոյ չկարացի տալ քեզ զշահն, զի ոչ կամեցար. և թէ զնոսա զկնի զհնացելոցն, և ապաշաւանիս թողուս. և թէ հրաման տաս կառուիլ ընդ քեզ, և թէ ոչ անպարտ եմ :

Գալըն վասն իմ՝ առ յինէն ա-
ռացաւ մինչ ասատ էիր. և կարիք
անապատին՝ ոչ յայտնի պահան-
ջումն սակս հպարտութեան վկայ-
եսցէ և մեք. այլ պատրուակաւ ա-
ռացաւ յատենախօսութեանն ա-
ռաջի մեր. վասն որոյ և սրտնեցաք
և բացայայտեցաք զառ 'ի քէն ծած-
կեալն. և այն զի ոչ կարացեր ա-
ռանց Աստուծոյ տալ զշահն մեզ.
վկայի 'ի ձայնէն, զի ոչ ոք առնու
եթէ ոչ իցէ տուեալ նմա 'ի վե-
րուստ. և եթէ զնամք ունայն, մեզ
են տոյժք, թէ և սիրելեաց ապաշաւ:
Բայց զիարդ անկեղծ և ճշմարիտ
կարծի մեր յայնմանէ որ զմի սիրե-
լին փութայ հանել 'ի հնոցէն, և
զմիւս սիրելին 'ի նոյն արկանել
պատրաստէ հնոց. մանաւանդ զի
հանեալն դժուարակէզ, և ար-
կեալն յոյժ դիւրակէզ. ծանծաղ է
և այսոցիկ խորութիւնք, և բացա-
յայտեալ մեզ: Եւ կուռելոյ ոչ ու-
նիս կարիս հրամանի, զի ինքնաշարժ
ես 'ի բարեգործութիւն. բայց թէ
աւետարանականն ձայն, և որ նախ

քան զաւետարանն, և ոյք յետ աւետարանին 'ի հոգւոյն հնչումն ոչ ազդեն 'ի լսելիսս, և ոչ քոյդ մեղուական բղղումն. այլ դու եթէ սիրես՝ աղօթեա լսել ինձ լինել ձայնին ցնծութեան, և լսել առնել զառաւօտուն ողորմութիւն.

Գրեալ ես դարձեալ զղջանեալ, զի խնդրեցեր զսեղանոյ ծածկոյթն, և զի առեր զծերունեացն զահեկանն : Զսեղանոյն զարդ ո՛չ քեզ, այլ ծագողի բանին՝ յորոյ անուն և տաճարդ է՝ նուիրեցի. զի ընդ փոքուն և անցաւորի զանանցն շնորհեսցէ զարդ : Իսկ ծերունեացն գոյից եթէ այնքան զեղջ ունիս յառնուլն, մինչ զի նեղեալ տագնապիս 'ի միտս, և կամիս սթափել 'ի խղճէ մտաց յաղագս յանարժանէ առնլոյն, ոչ ինչ արտամիւք յայտարէն դարձուցանելն, միայն զի դու ազատեսցիս 'ի տագնապէդ. և մեք զայն և որ այլ ես՝ յայսմ հետէ տացուք 'ի ձեռս հեզ և խոնարհ Քրիստոսին, և ոչ ևս հպարտացեալ զերայլին. այնմ որ տառապի առ

դուրս , և հայցէ արտասուօք , և յոչ տալն՝ ոչ հեռանայ , այլ դարձեալ պաղատի մինչև հաւանեցուսցէ զապատուհասն սիրոյ և զկարծր՝ լինել զդուզնաքեայն խնդիր միով լուման իւ կամ պատառով հացիւ , և կամ որ այլքաննեաւ պիտոյիւք կարեաց. և յառնուլն երկրպագէ տուողին , և փոխադրէ բարձրաձայնութեամբ ընդ փողոցն զմեծն , զերկնիցն արքայութիւն հայցելով 'ի համանուանէն իւրոյ տալ ողորմածին:

Եւ Պաւղոս բազմահնար իմաստիւք և խոնարհական բանիւ գրէր առ ազգս 'ի հեթանոսաց հաւատացելոց տալ զողորմութեանն շնորհ որոց յԵրուսաղէմ աղքատացն: Իսկ քո գերադրայն գոլով քան զասացեալդ անուան , ոչ զիջանիս ըստ մեզ և 'ի մերս . այլ և զղջանալ սակս ընդ առանց խնդրոյ 'ի քէն՝ տուեալոցն 'ի մէնջ . և արարիչն ամենայնի օծանիւր 'ի պտունկէ , և սատէր աշակերտացն յաշխատան առնելն զնա , և զու ապաշաւել զգրես զմերն իւզով օծանիլ: Արուսեակն է այդ ախտ ,

և ոչ 'ի ճշմարիտ լուսոյն հոգւոյ ։ Յերեւի ասէի թէ անկերպարանս զոր կրես . և 'ի միոյ ախտէ ոչ ամենայն մարդ մեռանի . այլ 'ի յոգունց և 'ի զանազանից . այսպէս և հոգւոյ ոչ մարմնականքն միայն , այլ և հոգե_կանքն են մահաբերք ։

Գրեալ ես այլ ոչ գալ առ մեզ վասն կարեաց իրիք . և դու յա_ղագս կարեաց ոչ երբէք եկեալ ես . այլ թէ յայսմ հետէ զջա_նաս զոր եկիրդ , այլ ոչ ևս աշխատ առնես 'ի մէնջ վասն գալոյ . մի_այն սէր կայցես՝ յիշեսցես յա_ղօթս եթէ ախորժես . ողջ լեր ։

# ՆՈՐԻՆ

## ՏՆ. ՆԵՐՍԵՍԻ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

Առ նոյն ծաղիկն ։

ՍԻՐԱԿԱՆՍ հուր ՚ի նիւթոց նուազեալ. շիջանի. իսկ ՚ի յոգւոց ներգործեալ բոց հպարտութեան և թարկութեան ոչ ունելով նիւթ՝ վառի և բորբոքի և տոչորէ միշտ, փոքր ինչ զարտաքինս որքան զօրէ և հասանէ լեզուաւ, և յարակեզ զծնողն՝ յորմէ ոչ երբէք բաժանի ։ Ցորում տակի և զքոյգ խմանաւք սիրտ, որ ոչ միայն զնորոյն և հնոյն օրինաց ոչ ունելով խորատ, լուել ՚ի թարկութենէ, և ընդ տարապարտն թարկութեան գեհեն, և ընդ մո_րման ասելոյ ատեան, և բամբա_

սողքն ընդ սպանողսն արտաքոյ արքայութեան . այլ և յաննիւթս զբահետ բերել յայսոսիկ՝ ոչ առ ատելիս , այլ առ սիրելիս եղբարսն , թէ արդ կարծեցք ատելի , կամ ընդ քոյդ սրտի որ առ մեզ՝ զմերս զատելով առ քեզ։

Գրեալ ես , զի տուաք զքեզ 'ի ձեռս հակառակացն , և Նոքա արարին ընդ քեզ որպէս հրամայեցաք մեք։ Արդ եթէ առաւել բան ինչ քան զհասարակացթուղթն մեր առացեալ է մեր ընդ Նոսա , գրեալ դատաւակնիքս քո եղիցի 'ի վերայ մեր։ Իսկ եթէ և ոչ 'ի խորհուրդս անգամ անկեալ է իւր ինչ հակառակ քեզ , թող թէ 'ի բան կամ 'ի գործ , առ քեզ այդրէն դարձցին քոյս գրեցեալք , և ընդ բամբասանացն կիրք՝ կամ 'ի բայէից կամ 'ի մերձակայից՝ զոր գրեալս քո ծանոյց , ո՛չ յոյժ թախծիմք. քանզի ոչ այնքան Նախատեն որքան է 'ի մեզ ազարտելի վատթարութիւն յայտնի և ծանուկ։ Եւ թէ Աստուծոյ մերկապարանոց է մերն աշալանք , և

Հրեշտակաց նորա, յորմէ դատիմք և վկայեալ յանդիմանիմք, լիցին և մարդկան գիտելի. որ է համբերութեամբ տանողացն թեթևութիւն անտի յանդիմանութեանն, և տուժից պատճառ բամբասողացն. նաև զգաստութեան առիթ ուղղապէս բամբասելոցն, և փոփոխումն 'ի բամբասելին կրից:

Իսկ յաղագս փախստեան քո յարևմուտս, և այն 'ի մեր պատճառէ, գրեմք և այսմ վճիռ իրաւանց, եթէ 'ի մեր ինչ բարկութենէ կամ բռնութենէ հալածիս, պատահեալ ինչ քեզ փորձութեան 'ի ճանապարհին՝ մեք եղիցուք պարտական: Ապա թէ դու ինքնահալած լինիս բարուց քոց ախտիւք, բարւոյն կամ ներհակին քեզ պատահելոյ, դու լինիս անձին քո պատճառ, և ոչ այլ ոք:

# ՆՈՐԻՆ

## ՏՆ. ՆԵՐՍԵՍԻ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

Առ նոյն յիմարութեանս և հակառակութեանս երևեալ յանդգնագին ծաղերհ։

ՄԱՐՄՆՈՑ բժշկաց ճարտարութիւն գովի, ճանաչել զոյժ հիւանդին, և ապա տալ զդեղն. զի մի ծանրացուցեալ զստամոքսն՝ նուաղեսցէ. յորմէ վնասի, քան թէ օգտի։ Պարտ է լինել ըստ այսմ և հոգւոց բժշկաց, և մի փութապէս դատել զմաքսաւոր։ Զինէն ոչ առնեմ, զի և ես ոչ միայն մեղաւոր զանազան կրիւք, և յանցաւոր բոլոր օրինաց զիս ունիմ, այլ և ոչ մարդ վարկանիմ զանձն իմ. նաև ոչ յանբանից ըստ բնութեան որի-

նաց կապելոց. առ որում փորձք ու-
նիմ զքոյդ դատել զիս յառաջ քան
զդատաւորն արդար, և Պիղատոսի
և Տրայիանոսի զմեզ համեմատել,
և զաթոռս զայս առ ինև՝ հակառակ
Աստուծոյ և ամենայն սրբոց ան-
լով. և թէ չար տերանցն կամաւ քո
ծառայ եղեր մամոնայի և այլոցն.
և թէ այժմու աթոռդ զոր ունիս՝
ոչ միայն Աստուծոյ չէ, այլ և ոչ
մահմետի. և թէ կոյրդ կուրաց ոչ
առաջնորդէ, և կաշառն զոր առ-
նուս՝ կուրացուցանէ զաչս քո. և
վաճառես զաթոռն Աստուծոյ այ-
նոցիկ՝ որ ընդ չարեօք լցեալ են.
և թէ յեօթանասունս և երկու լե-
զուս չկայ ոք, ո՛չ արեւապաշտ, ո՛չ
կռապաշտ՝ քան զհայոց ազգս ամե-
նայն չարեօք լի և թէ գլուխ այս
ամենայն մեղաց և պատճառ դու
ես վկայութեամբ երկնի և երկրի
և Աստուծոյ և հրեշտակաց և մարդ-
կան. և այլ բազում սոցին նման-
բանք:

Արդ պատասխանի նորա զայս ա-
սեմ եթէ անգիտանաս ծվլքու խմոց
բիւրաւոր և զանազան ախտից ծած

կեղեցն յուղւոջս, յորոց առաւել
քան 'ի քեն՝ 'ի մտացս խղճէ միշտ
դատիմ, տագնապիմ և նեղիմ, զորս
եթէ ցանկաս դարովել, մի երեւե-
լեաս միայն, այլ և՛կ զի զանյայտն որ
յիս լուիցես, որպէս զի տիրապէս
դատեսցիս, և ոչ 'ի կարծ ։ Ծանիր և
զայս, զի զիս թէ և ամենայն լեզուք
զովեսցեն յայն բարի՝ որ ոչ է առ
իս, հողմոյ հնչմունք վարկանիմ ։
և թէ պարսաւէ ոք և դատի յայն
ինչ՝ որ'ի մտացս խղճէ ոչ դատիմ,
ոչ փոյթ ինչ առնեմ ։ Իսկ եթէ
յորոցն ունիմ, և ասէ ոք, ոչ վասն
ասելոյն, այլ վասն ունելոյն վշտա-
նամ ։ Գիտես բանիս, զի մի եւ 'ի
դրելս 'ի վերայ բարգեալ հոգւոցս
յաճախեցից հոգս, և մի դու յին-
թեռնուլն ձանձրասցիս, այս է ։
որովհետև ծանեար զիս ըստ վերոյ
դրելոցդ՝ խոստեալ յԱստուծոյ և
յաստուածայնոցն, և խանդարիչ
Քարայէլը որպէս ոմն 'ի հնումն՝
արա զոր ասեմս առանց ամենայն
կեղծաւորութեանց ։ Ճողոպրեա՛
զինացեալ ձիւս յոգկուղաց աղբես

Հայոց , ասա՛ ընտրել միաբանու֊
թեամբ ամենեցուն զայր որ Աս֊
տուծոյ, որ կարող է նախանձել
զնախանձն Աստուծոյ, կամ միջա֊
կաւ որպէս Ասորիք , կամ յԱս֊
տուծոյ հայցելով և յայտնելով
որպէս բազումք, և հաստատել յա֊
տուածայրին աթոռս երկու աչաց
ածնօղ, զի կարող լիցի կուրացընել
առաջնորդ , և ոչ իբրև զիս երկո֊
քումբք կայր: Եւ ես տամ ձե֊
ռագիր Աստուծով, որ ոչ ընդդի֊
մանամ , և ոչ հակառակիմ , այլ
կամաւ իմով հրաժարեմ 'ի բաց ,
և յոյժ ուրախութեամբ որպէս 'ի
ծանր բեռանց թեթևացեալ . և
քեզ շնորհ մատուցանեմ որպէս
արդարև սիրելոյ: Չեմ լաւ քան
զԳրիգոր աստուածաբան , կամ
զՅոհան, և զայլս բազումս. զի ոմանք
կամաւ , և ոմանք 'ի բռնութենէ 'ի
բաց կացին յաթոռոցն . որոց և
գարշապարացն չէ արժանի երեսս ,
թո՛ղ թէ համեմատութեան : Եւ
ես երթեալ յանքոյթ ինչ տեղւոջ,
տաց լռութեամբ զբերանս հողոյ ,

և զաչս արտասուաց 'ի նշխարեալ կենաց ըմպող ուսուցա եթէ գթացեալ տէր : Եւ այս վայրն սորին այցելուն շատացուցի յուղիղ մնաց, և ոչ 'ի նենգաւոր շրթանց և խորամանկութեանց Աստուծով որ զխրատս և զերիկամանս քննէ : Բայց քոյդ թղթի բանիք պահեսցի մինչ 'ի յաւղաւր դատողութեանն օր . զի որ 'ի սմա անխրատ առ իս 'ի քեն զատումն, գտանեսցի յուղիղ դատաւորէն :

# ՆՈՐԻՆ

## ՏՆ. ՆԵՐՍԵՍԻ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

Առ Երզնկացի վարդապետն Գէորգ։

Օ ՐՆԱՒՈՐԱԳԷՍ իմաստնոյ անձին, և զմեր պարզաբար սիրողն ոգւոյ զԳէորգեայ ծանեաք ընդպարունակեալ միտս բանի զբովանդակն. և զի տրտմականք յաղագս 'ի չարացն չարութեան թունից և ապառնալեաց եղելոց առ ձերսդ, վշտակցեցաք այդմ։ Բայց գիտես ով դիւրադարձդ խոհեմ թէ որքան արգահատէիր մինչ 'ի գառագեղն էր գազանն, և հաւատայիր առ 'ի նմանէ քաղցր և ողոք բանիցն՝ իբրև իժի և քարբի ծածկեալ զթոյնն պատրող բանիւքն. վասն որոյ և մեք

Թէ և այլապէս կարծէք, ո՛չ յա-
ղագս խնայելոյ յինէս, այլ վասն
ոչ յանպէտս վատնելոյ, և յաւելա-
ւածս սերմանելոյ զտէրունին սեր-
մին, յապաղեցաք մինչև ցայժմ:
Բայց արդ պատրաստեցաք աւանդել
առ մերասեռն վէհ, Թերևս արած-
ցէ հնար՝ լուծման անխրաւացն
խորոխտանալոյ. և դուք աղօթիւք
առ Աստուած Ջատագով լերուք
ջանիւն, զի մի ունայն, այլ արդիւ-
նական լիցին մերն ծախք, և նորայն
ջանք: Բայց ըստ սահմանեալ բա-
նին փութա զգալն, զի հոգասցուք
զկապեալսն: Ո՛ղջ լեր:

# ՆՈՐԻՆ

## ՏՆ. ՆԵՐՍԵՍԻ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

### Առ նոյն Գէորգ Վարդապետ։

ՏԵՍ գերաշխարհայնոցն սիրոյ տարփման յաստուածայինն համեմատեալ սիրելոյ ընթերցայ դպիր, և խրախացայ ոգւով ընդ առողջութիւն ողջ եղելոյդ տիրապէս. և մեք ևս յետ մարմնականին ախտի վշտարելոյ ախտանամք օր ըստ օրէ խմանալեաւս փոքու և մեծաւ: Ծանեայ և զճշմարտիդ ճշմարտապատում պատմութիւն, և հաւատացի այնքան՝ իբրև անձին կրեալ և ոչ օտարի. վասն որոյ՛ի սրտէ մաքրեցան որ զքէն կարծեալ մթութիւն, որ ոչ երբէք տպացան: Զի զինչ այն

ինչ որ ընդմիջէ ոգւոյ և մնայց՝ ըստ որում իմ և քո հաղորդութիւն գթոյ ոգեպէս · որում բաղձամ տեսութեան երկրէ՝ ի մեռելութենէ յարուցելոյ սիրելւոյ, եթէ ըստ դիպող ժամու լցցի ըստ գրեցեալս ՚ի քէն խոստման ։ Ի թիւ երից մեծագունի խորհրդոյ ընկալայ զնուէրս շնորհակալութեամբ ՚ի տէր զոյս հօր՝ խնծոր ըստ երգոյն, զՈրդի՝ զքաղցրութիւն, զհոգին՝ ըստ քաղցր ՚ի քիմս բանին · Ո՛ղջ լեր՝ անմոռաց որպէս հասատամ յաղօթս լինել ։ Ողջունեալքս ՚ի քէն ողջունեն սիրով ։

# ՆՈՐԻՆ

## ՏՆ. ՆԵՐՍԵՍԻ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

Ասա նոյն գէորգ վարդապետ երրորդ
անգամ։

Ի ՔՈՒՄ գիտելը նետոյց յետ
նախնկի գրելոյն հարան յանձին, ով
սիրելի ըստ ոգւոյ՝ որով մաղթես-
ցես յամենաբժշկէն ոգւոց զխմա-
նալին տալ սպեղանի 'ի բուժումն
անցելումն և 'ի զգուշութիւն ներ-
կային. և աղաչելինեսցես 'ի բա-
ցուստ որպէս և տէրն զհարկաւորա-
պետոյն ծառայ և զթագաւորազինն
որդի՝ ոչ երկայն բանիւ, այլ սղա-
պատնիւք ըստ այսր չափոյ։ Եւ որ
էն էասցի առ քեզ։

# ՆՈՐԻՆ

## ՏՆ· ՆԵՐՍԵՍԻ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

Առ Եպիսկոպոսունս և վարդապետս հայաստանեայց վասն սիրոյ և միաբանութեան ընդ Յոյնս է

Ներսէս ծառայ Քրիստոսի, և ողորմութեամբ և կամօք նորին կաթողիկոս Հայոց, առաքաւոր եպիսկոպոսաց մերոց, և իմաստուն վարդապետաց որ յաշխարհդ հայաստանեայց, ընդ կողմանսդ որ ընդ հիւսիսով և ընդ հարաւով, որք էք տեսուչք կարգեալք 'ի հօտոյն Աստուծոյ, և դաստիարակք հօտոց բանականաց, որ բնակեալ են 'ի քաղաքս և 'ի գեօղս և 'ի սուրբ ուխտս Ճգնաւորաց: Որոց

Համօրէն առաջնորդացդ և առաջ-
նորդեցելոցդ 'ի ձէնջ՝ ողջոյն սիրոյ
և խաղաղութեան հասցէ յաս-
տուածընկալ սրբոյ նշանէս Վանկոյ,
և յառաքելական նշխարացս, և 'ի
սուրբ Լուսաւորչին մերոյ աջէս, և
յաթոռոյս, և 'ի մէնջ:

Գիտութիւն լիցի իմաստութեան
ձերոյ, զի նախ ժամանակաւ՝ որ-
պէս կարծեմք լուեալ ձեզ 'ի համբա-
ւոյ, մեծ արքայն Հռոմոց իսկիզբն
աւուրց աթոռակալութեան մերոյ
առաքելական աթոռոյս, առա-
քեաց առ մեզ արս պատուաւորս
հանդերձ . արքունական նամակօք
միանգամ և երկիցս և երիցս յաղագս
սիրոյ և միաւորութեան եկեղեցւոյ.
ըստ նախնեացն ժամանակի , և
բառնալոյ զեկամուտ պատճառս
երկպառակութեան 'ի միջոյ երկա-
քանչիւրոց ազգացս : Եւ մեք պա-
տասխանեալ նոցին, որպէս արժան
էր և աւարտումն բանին՝ զայս ինչ:
Եթէ որպէս գլուխն միայն առանց
բոլոր անձին անդամոց օժանդակու-
թեան ոչ է կարող ներգործութիւն

ինչ կատարել, նոյնպէս և մեզ ան-
կարելի է առանց խնամոց համայ-
նից որ 'ի հայաստանեայս մերոց ըն-
ներլոյ՝ այսպիսի առ 'ի ձէնջ խնդրոյս
տալ կատարելապէս պատասխանի:
Այլ՝ ժողովելով զամենեսին յորս
գոյ իմաստութիւն և երկեղ, և 'ի
դիպող ժամու խորհեսցուք 'ի միա-
սին Աստուծով. և ըստ խորհրդ-
դակցութեան բոլորից գրեսցուք
առաջի մեծութեան ձերոյ զայն
ինչ զոր հոգին Աստուծոյ ցուցանէ
մեզ: Այսն որոյ և մեք 'ի ձեռս
աղօթականն եղբարցդ որք գան յա-
րևելս շրջել 'ի սուրբ տեղիս ուխ-
տից հայաստանեաց՝ գրեցաք զայ-
սոսիկ· սակաւուք՝ ծանօթ լինել
ձեզ ճշմարտապէս վերագրելոցդ
խրագործութեանց: զի մի յանի-
մաստից ոմանց անուղղապէս ինչ
լուեալ, այլընդայլոյ ինչ կարծի-
ցէք. և զի պատրաստեսջիք զանձինս
զի յորժամ վերստին հասցէ առ 'ի
մէնջ յետ այժմու հրաւիրանացս՝
կոչմանն գիր և բան, առանց յա-
պաղելոյ և պատճառափրութեան

հաստատեցէք 'ի սահմանեալ ժամադրութիւնն, ոչ 'ի մէնջ կոչեցեալք կամ յուրոյք 'ի մարդկանէ, այլ 'ի հոգւոյն Աստուծոյ որպէս և առաջին սուրբ հարքն: Եւ նախ քան զգալն՝ աղաչեմք ոչ դատարկել յաղօթելոյ սա որ զկամս երկեղածաց իւրոց առնէ Աստուած, և աղօթից նոցա լսէ. զի 'ի ժողովքին 'ի միասին՝ տացէ մեզ իմաստս զայն ինչ խորհել, խօսել և առնել որ նորքին իսկ հոգւոյն սրբոյ են կամք և հաճոյք: առ 'ի շինութիւն և հաստատութիւն կաթողիկէ և առաքելական ուղղափառ եկեղեցւոյ: Ողջ լերուք ամենեքեան 'ի շնորհս Աստուծոյ: Զբովանդակն յեկեալ եղբարցդ հասկանայք:

# ՆՈՐԻՆ

## ՏՆ. ՆԵՐՍԵՍԻ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

Առ Տէր Միքայէլ պատրիարգ Կոստանդնուպօլսոյ ։

ՍՐԲՈՅ և ընդհանրական կաթողիկէ եկեղեցւոյ թագաւորական քաղաքին Կոստանդնուպօլսի պատրիարգի Տէր Միքայէլի ողջ լինել 'ի Քրիստոս 'ի Նուաստ ծառայէ Քրիստոսի և ողորմութեամբն կամօք Նորին կաթողիկոսէ Հայոց Ներսիսէ յաթոռակալէ սրբոյն Գրիգորի Լուսաւորչին մերոյ ։

Ի մօրդ իմաստութեան նամականց ընկալաք զցօղ կաթին՝ տղայական մտաց մեր յարբուցումն, փոքր բանիւ և մեծագոյն իմաստութեամբ պա-

բունակեալ ընդ դրով։ Զոր ար-
բեալ զմայլեցաք ուրախութեամբ,
որպէս և գինեաւ հոգւոյն 'ի վեր-
նատունն, և յիշելով զուզնաքեայ
այսու ճաշակմամբ զերբեմն մայրե-
նի դրկացդ գգուանս սիրոյ, և ըղ-
փափկութեան կերակուրս իմաս-
տից հոգւոյ՝ իւղոյ և մեղու, զոր բըղ-
խէր աւետեաց երկիրդ վերին աշ-
խարհին տիպ, խանդաղատեցաւ որ
'ի մեզ տիրականիս միան յիշողա-
կան զօրութիւն, զնոյն առ. 'ի յա-
գուստ դարձեալ փափագելովստա-
նալ ճաշակ զուարթութեան և
քաղցրութեան, որպէս երբեմն
յայսոսիկ կրս լինելով Դաւիթ ա-
սէր առ Աստուած. Յիշեցի ես զա-
ւուրսն զառաջինս։ Յայտ է. զի
զաստուածատունկ դրախտին զմայ-
լեալ, և զանտխրական ոգւոց փափ-
կութիւնսն։ Եւ մեր ըստ նմին յի-
շելով զտուեալն յԱստուծոյ խա-
ղաղութիւն եկեղեցւոյ յաւուրս
հարցն մերոց սրբոց, ըղձանամք
զնոյն վերստին տեսանել և կրել.
մինչ մի հոգի հեղեալ էր յամենե-

սէն 'ի վերուստ, և ոչ յայլ և այլ բաժանեալ յօտարոտին հոգւոց մարդութեանց, ոմն ասելով Պաւղոսի և ոմն Ապողոսի կամ Կեփայի, և կամ այլ ուրուք 'ի պաշտօնէից, այլ Քրիստոսի ամենեքեան:

Զայսոսիկ ուղղափառութեանն բոց որ 'ի մեզ փոքու նշուլիւք վառումին, բորբոքեաց աստուածային բանից ձեր հոգևորական հողմն, որպէս գարնանական փչումք զկայծակունս արծարծանելով 'ի գործ պատրաստեն ենթակայն իւր ըննել պխտամնացու: Որում և մեր կամք և յօժարութիւն ո՛չ խիստ և անգործ, և ոչ առ 'ի յայժ տաժանումն հնարագիտաց արհեստին, այլ զիւրալուր և հաւանական ճշմարտութեանն բանի 'ի ճշմարտասիրաց ըստ կուսին երկրորդի ունկնդրութեան բարւոյն՝ յորմէ կեանք, և ոչ ըստ կուսին առաջնոյ հաւանութեան չարին՝ որով մահ:

Քանզի սիրելի էր մեր այս խաղաղութիւն 'ի մանկութենէ, որոյ և հասանել ըղձանայաք, մանա-

ւանդ յորժամ տեսանէաք 'ի պատահել միմեանց ձեր և մերս իմաստնոց ոչ արտաքոյ ուղղափառ դաւաճանապետացն խօսելով երկաքանչիւր կողմանցն զբանսն, որոց այնտանացու էր միայն զօդ կատարմանն սէրն, մայրն խաղաղութեան, այլ ոչ ճարտարութիւն բանից՝ ունայնացուցիչ խաչին Քրիստոսի ըստ առաքելոյ: Այլ զայս մեծագոյն իր, և աստուածային գործ ամբարեալ պահէր յառաջատեսութիւնն Աստուծոյ ձերում արժանաւոր սրբութեանդ, զոր և ծանոյց իսկ գրաւորականս ձեր բան, բազմապատիկս ունելով զովեստ խաղաղութեան՝ յաստուածայնոցն բանից. որոց և բացեալ առ լռզութիւն Թովչիդ ճարտարի զականջս սրտից՝ ընկալաք յոգիս. 'ի նոյն իսկ գործարանի Թադուցեալ զբանս ձեր, յոր և Դաւիթ զաստուածայինն: Քանզի զխօսելի է իմաստնոց, զի ճշմարիտ խաղաղութեանն ոչ ինչ է զուգահաւասար յելցս բարեաց, վասն որոյ և աւանդեալն

եկեղեցւոյ պատուիրան զվերին
քարոզէ միշտ հայցել յԱստուծոյ
տալ՝ զխաղաղութիւն երկնային։
Զսոյն յայտ առնէ և տէրունա-
կանն որ յաղագս աղօթից բան,
գաւ արքայութեանն Աստուծոյ 'ի
մեզ, որ է տիրապէս խաղաղու-
թիւն. և լինել հաճութեան կամաց
նորա յերկրաւորքս որպէս և յերկ-
նայինսն. յորս է բնաւորեալ
ընդ բնուրուց բարեացն ունակու-
թեանց և սիրոյ և խաղաղութեան
պտուղ, որ է յաւէտ, և անփոփո-
խելի նախ առ Երրորդութիւնն
սուրբ հրաշափառապէս՝ երից ան-
ձանցն մի գոլով կամք մշտնջենաւո-
րաբար, որ և միով իշխանութեամբ
և միով տէրութեամբ թագաւո-
րեալ յաւիտեանս։ Եւ յանեղա-
կան Երրորդութեանն լուսոյ յե-
ղականացս իջանէ վայր աղբիւրա-
բար հեղեալ 'ի նմանէ խաղաղու-
թեանն նշոյլ առաջին առ յան-
մարմնականաց իմնուանցն դասուց
յերից քահանայապետութեանցն
երկնայնոց զանազանութիւնս. և

ապա ըստ մօրուացն Ահարոնի իւ-
ղոյն իջման օծութեանն, յորմէ և
և 'ի գրապանակս և 'ի զգեստն՝
որք նուիրականաւս եկեղեցեաւ
աննիւթականին հոգւոց ստուգա-
պէս տաճարի Աստուծոյ ընկալան
զքահանայապետութիւն. որպէս
նախ աւետարանիչքն խաղաղու-
թեան առին յայնմանէ որ զոգւոյ
խաղաղութիւնն արկ յերկիր, և
զսուրն հատանող զտու 'ի չարն
միաբանելոց: Նա և ինքն իսկ օ-
ծեալն եղև խաղաղութիւն մեր ըստ
առաքելոյ, և անուանեցաւ զմիջ-
նորմն ցանկոյն քակելով, և 'ի
միութիւն զերկուս բաժանեալս
խառնելով զերկնաւորսն և զեր-
կրաւորս, և զորս 'ի հրէից և 'ի հե-
թանոսաց եկեղեցի:

Նման նմին և փոքր ինչ նուազ
հաւասար յայսոսիկ խաղաղութիւն
կապակցութեան տեսանեմք զան-
ուանակրի նորին և զաթոռակալի
զքրիստոսապսակեալ սուրբ Թա-
դէոսին զյօժարութիւն կամաց
և զփոյթ՝ լինելով գլուխ անկեան

ըստ գլխոյն եկեղեցւոյ երկաւ
զատուցեալ որմոց միջացուցէ։
հանգոյն մեծի արքայից և համ-
մատ նախայօժար բարեսէր սրտի
նորին և զհօրգ հաստատակաց ծա-
նեաքզկապակցութիւն յայսպատ-
ճառ հոգևոր խաղաղութեան,
յորմէ առաւել ևս պահանջի. զի
նմա մարմնոյ և նիւթականաց հա-
ւատացաւ անտեսութիւն յԱս-
տուծոյ, իսկ ձեզ հոգւոց և հո-
գևորականաց ոչ միայն անտեսու-
թիւն, այլ և դատախարակութիւն
և բժշկութիւն. և որքան յայտ-
նիկ ըստ բազմադիմի գործոցն և
անուանցն գոլ զանազանութիւնք
որ 'ի քարոզքն խաղաղութեան
աշխարհի, զընկալեալ խաղաղու-
թիւնն նախ ձեզ առանձնեցին, և
ձեզք ամենայն եկեղեցեաց Քրիս-
տոսի որպէս 'ի միոյ լուսոյ բա-
զում վառեալ լապտերք. և այս
մինչև արքայութեանն Աստուծոյ
ամենեցուն տիրել, զի համարձակ
լեցեք ասել յաղագս լուսաւորեալոցն
'ի ձէնջ, Ահա ես և մանկունք իմ

զոր ետուք ինձ: Վասն որոյ ոչ զարմանք վասն առ մեզ սերմանելոյ զբանն խաղաղութեան՝ Նախ յաղագս հարկաւորաբար յանձնեալ ձեզ յԱստուծոյ տնտեսութեանց, որոյ աղագաւ Պաւղոս անվարձ ասէր լինել: Երկրորդ վասն օրինօք հայրօրէն սիրոյդ ըստ երկնաւորի Հօրն գթութեանց. զոր և մեր 'ի բարի սերմանողէդ տեառն Միքայէլէ աստուածամերձ պատրիարգէ Թագաւորական քաղաքիդ ընկալեալ զբան խաղաղութեան փութացուք ոչ լինել ճանապարհ, կամ ապառաժ և փուշ 'ի կորուսանողաց զսերմն բարեաց. այլ երկիր բարի և պարարտ օգնութեամբ այնմ որ տայ սերմ սերմանողաց, և զհաց բանին կերակուր հոգւոց, և տալ պտուղ Աստուծոյ զմի յերիցն զոմելեաց: Եւ այս լինի արժանաւոր ձեր և որոց ընդ ձեզ սրբոց առ Աստուած պաղատանօք, որպէս զի 'ի հանդերձեալ լինել ժողովցն մերոյ որ 'ի մեծն Հայոց և յընդհանուր կող-

մանց եպիսկոպոսաց և վարդապետաց, ինքնին տէր ըստ խոստացելումն եղիցի 'ի մէնջ, զբանն խաղաղութեան տալով 'ի միտս և 'ի լեզուս ամենեցուն. զի ոչ մարդկային ախտիւ անօգուտ բանակռուութեամբ և անոտի յաղթասիրութեամբ, յորմէ ոչ ինչ օգտեցաւ եկեղեցի այսքան յերկար ժամանակաւ, այլ` հոգւոյն Աստուծոյ խորհրդակցութեամբ խօսեսցին ամենեքեան վասն շինութեան ոգւոց: Եւ որպէս առ մեզ, այնպէս եղիցի առ ձերդ հանդիսական ժողով. զի առուրբ սկսեալ խորհրդոյս` Նովաւ լիցի կատարումն. որով և Աստուած փառաւորեսցի յամենայն լեզուս ազգաց, յեկեղեցիս արդարոց` 'ի միաբանութիւն հաւատոց: Ողջ լեր գլուխ յետ գլխոյն եկեղեցւոյ:

# ՆՈՐԻՆ

## ՏՆ· ՆԵՐՍԵՍԻ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

Պատասխանի թղթոյն պատրիարգի Ասորւոց տեառն Միխայէլի:

ՕԶՈՒԱՐԹՈՒՆ և զարթագոյն հովուապետի զաստուածապատիւ պատրիարգիդ զտէր Միխայէլի ըն_կալաք զգիր սիրոյ, և ընդ ողջունել ձեր՝ Աստուածոյ գոհութիւն մատու_ցաք: Զոր և աղաչեմք զտէր անսա_սանելի պահել զձեզ 'ի հաստա_տութիւն եկեղեցւոյ իւրոյ: Եւ մեք Աստուածով և մաքուր ձեր աղօթիւք կենդանի եմք մարմնով, այլ տկար երկոքումբք՝ երևելեաւս և աներև_ութիւս. որով հայցեմ 'ի ձէնջ ա_

ղօթելՙ գալ զօրութեան յԱստուծոյ տկարութեանս մերոյ ։

Գրեալ էիք վասն տեսութեան միմեանց ցանկութիւն ունելոյ. և մեք վկայեցաք ճշմարիտ լինել գրելոյս. զի և 'ի մեր հոգևոր սիրտ որ առ ձեզ՝ ծանեաք և զձերդ առ մերս նուաստութիւն. և յուսամք յԱստուած, զի զբարի ցանկութիւն մեր յայսոսիկ՝ 'ի կատարումն հասուսցէ ։

Ծանեաք և զսուրբ եպիսկոպոսաց ձեր ժողովումն առ ձեզ վասն քննութեան եկեղեցւոյ կարգաց՝ զպակասն 'ի բարեաց լնուլ, և զօտարոտին 'ի բաց հանելով, զոր և ընթերցաւ առաջի մեր սուրբ եպիսկոպոսս Տէր Յոհաննէս սիրելի Աստուծոյ և մեր. և լուաք և հաճոյ թուեցաւ մեզ և եպիսկոպոսաց մերոց և վարդապետաց. զի ոչ թէ օտար ինչ էր և նորաձև, այլ զառաջին սուրբ հարցն կանոնադրութիւնն 'ի յիշատակ բերելով։ Ընդ որում մեծապէս վարձս ընդունիք յԱստուծոյ՝ այսպիսի հոգևոր ի-

րաց հոգ տանելով, զոր և խնդրէ Աստուած յառաջնորդաց եկեղեցւոյ։

Հասկացաք և զոր 'ի բանից ծանօյց մեզ զոմանց որ ասացեալ են առաջի ձեր եթէ Հայք զՅուլիանեայ ալիկառնացոյ ունին զխոստովանութիւն, որ առ աչօք ասաց զմեռելութիւնն Քրիստոսի և ոչ ճըշմարտութեամբ։ Զո՛ր նզովէ կաթողիկէ եկեղեցի զայսոցիկ ասացողն և զընդունօղն, այլ և զանիրաւ զըրպարտողսն զմեզ։ Բայց մեք խոստովանիմք զՔրիստոս ըստ սուրբ հարցն դաւանութեան որ 'ի Նիկիա, և ըստ ամենայն ուղղափառ վարդապետաց եկեղեցւոյ թէ էառ բանն Աստուծոյ 'ի սուրբ կուսէն Մարիամայ հոգի և մարմին և միտք ճշմարտապէս և ոչ կարծեօք․ և նոյին մարմնովն չարչարեցաւ, խաչեցաւ և մեռաւ մահկանացու բնութեամբ ստուգապէս և ոչ առ աչօք․ և կենդանի էր անմահ Աստուածութեամբն որ միացեալ էր անբաժանելի ընդ մարդկային հոգին որ

բաժանեցաւ 'ի մարմնոյն, և ընդ մարմինն որ եդաւ 'ի գերեզմանին: Որ և միացոյց դարձեալ զհոգին ընդ մարմինն, և յարոյց 'ի մեռելոց յորժամ կամեցաւ ըստ ասելոյն թէ իշխանութիւն ունիմ դնել զսա, և իշխանութիւն ունիմ վերստին առնուլ:

Արդ վասն այսորիկ այս է ճշմարիտ խոստովանութիւն մեր, զոր գրեցաք կարճ 'ի կարճոյ համառօտ բանիւ: Այլ զբովանդակն յիմաստուն եպիսկոպոսէդ 'ի Տէր Յոհաննիսէ հասկանայք. Ողջ լերուք: Ողջունեն զձեզ որ ընդ մեզ եպիսկոպոսք և վարդապետք: Ողջոյն տամք և որոց ընդ ձեզ են պաշտօնեայք Քրիստոսի յիւրաքանչիւր կարգի:

# ՆՈՐԻՆ

## ՏՆ. ՆԵՐՍԵՍԻ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

Առ Ստեփանոս ոմն վանաց խնդրող մեկնութեան ներքին գլխոյ սահմանաց գրոցն Դաւթի Անյաղթի ։

ՕԽՆԴԻՐ հոգևորականն և հաւատով և սիրով հայցողաց պարտ է տալ յօժարութեամբ ըստ հրամանին տեառն թէ ամենայն որ խնդրէ 'ի քէն՝ տուր. ոչ յաղքատութիւն հայելով անձին որ տայն, այլ 'ի ջերմութիւն կամաց հայցողին ։ Քանզի արդար է հրամանատուն, և ըստ կարի պահանջէ յիւրաքանչիւրոցն. և որպէս 'ի մեծամեծաց մեծագունին, 'ի յաղքատացն նուազագունիւք բաւականանայ ։ Ըստ

բաժանեցաւ 'ի մարմնոյն, և ընդ մարմինն որ եդաւ 'ի գերեզմանին։ Որ և միացոյց դարձեալ զհոգին ընդ մարմինն, և յարոյց 'ի մեռելոց յորժամ կամեցաւ ըստ ասելոյն Թէ իշխանութիւն ունիմ դնել զսա, և իշխանութիւն ունիմ վերստին առնուլ։

Արդ վասն այսորիկ այս է ճշմարիտ խոստովանութիւն մեր, զոր գրեցաք կարճ 'ի կարճոյ համառօտ բանիւ։ Այլ զբովանդակն յիմաստուն եպիսկոպոսէդ 'ի Տէր Յոհաննիսէ հասկանայք. Ողջ լերուք։ Ողջունեն զձեզ որ ընդ մեզ եպիսկոպոսք և վարդապետք։ Ողջոյն տամք և որոց ընդ ձեզ են պաշտօնեայք Քրիստոսի յիւրաքանչիւր կարգի։

# ՆՈՐԻՆ

## ՏՆ. ՆԵՐՍԵՍԻ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

*Առ Սեփեստոս ոմն Հոռոմ խնդրող մեկնութեան ներքին Գլխոյ սահմանաց Գրոցն Դաւթի Անյաղթի։*

ՕԽՆԴԻՐ *հոգևորականն և հաւատով և սիրով հայցողաց պարտ է տալ յօժարութեամբ ըստ հրամանին տեառն թէ ամենայն որ խնդրէ ՚ի քէն՝ տուր. ոչ յաղքատութիւն հայելով անձին որ տայն, այլ ՚ի ջերմութիւն կամաց հայցողին։ Քանզի արդար է հրամանատուն, և ըստ կարի պահանջէ յիւրաքանչիւրոցն. և որպէս ՚ի մեծամեծաց մեծագունիւն, ՚ի յաղքատացն նուազագունիւք բաւականանայ։ Ըստ*

որում և մեք ըստ հրամանին առա-
ջին մեր բան, տացուք զխնդրեալն ի
բանի մեկնութեան ։ Որ թէպէտ
դուզնաքեայ քանակաւ, այլ յոգ-
նակի որակութեամբ. ոչ որքան է
զօրութիւն պատուանակեալ 'ի սմա
իմաստից՝ բացայայտել ձեռնարկե-
լով, այլ որքան մերս տկարութիւն
տեսանել կարասցէ՝ եբերու 'ի դէպ
է 'ի ճանապարհի պատահելոյ ան-
ձին, և աշխարհածաւալ հողմովք
խամրացելոյ մտաց ։ Իսկ զկատա-
րեալն տեսութիւն այլում թողցուք
յիմաստս հզօրագունի և կատարե-
լոյ, մանաւանդ՝ տեղւոյ, և ժամա-
նակի պատշաճ ունողի ։ Զորս և դի-
ցուք ապաւէնի պարզ և համառօտ բա-
նիւ, փոքունք զմեծամեծան կշռե-
լով ։

## ՚ՆՈՐԻՆ

## ՏՆ. ՆԵՐՍԵՍԻ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

Առ Ալեքս կեսար Յունաց կայսեր յաղագս խնդրոյ դաւանութեան և կարգաց հայաստանեայց եկեղեցւոյ։

Բանիւք գուզնաքեայ լինի խօսելով 'ի լսելիս խոհեմագունից և աստուածասիրի անձին յաղագս մերոյ հաւատոյ և կարգաց եկեղեցւոյ հարցմանց որ 'ի մէնջ տալով պատասխանի։ Եւ քանզի խօսեցեալն իմաստ շրթամբք ոչ է բնաւորեալ 'ի շտեմարանս յիշողականին մնալ անծախապէս զմոռացութիւնն ունելով հակառակ, վասն որոյ խընդրէք գրով արձանացուցանել ըզնոյնն յաղագս անաղօտ մնալոյ առ

Ձեզ յիշատակ բանիցն որ 'ի մէնջ։
Զոր և տացուք սիրաբար սիրողեդ-
զիմաստութիւն ըստ տխմար գի-
տութեան մերոյ և տկարութեան,
և ժամուս փութոյ համառօտ և
յայտնի բանիւ. սակայն զընծայանս
պարագրելով զհաւատոյ մեր ճըշ-
մարտութիւն և զեկեղեցւոյ կար-
գաւորութիւն 'ի հարցն սրբոց ա-
ւանդից ընկալեալ, որ է այսպէս։

# ՆՈՐԻՆ

## ՏՆ. ՆԵՐՍԵՍԻ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

Պատասխանի առաջին Թղթոյ Թագա-ւորին Հոռոմոց Մանուէլի։

ՔՐԻՍՏՈՍԱՊՍԱԿԵԱԼ յինքնակալ ծիրանածին և օգոստափառ սուրբ Թագաւորի, երկնաւորին յերկրի անուանակրի և աթոռակալի՝ գիր պատուական հրամանի որ առ հայրն մեր ըստ հոգւոյ և եղբայրն ըստ մարմնոյ Գրիգորիս կաթողիկոս՝ եհաս առ մեր նուաստութիւնս 'ի փոխանակ հարցն եղեալ որդիս։ Քանզի զնա 'ի զգայականացս յիմանալիսն կանխագոյն երկնաւորին վերակոչեաց հրաման արքային, որպս զմեզ 'ի հօրն

քարի խրատու և խնամոց 'ի մէջ ծովու աշխարհի, և շուրջ եղելոց օձից և կարճից թողով: Յորոց և արդամութեամբ թմբրեալք յոգի' ներքնավք, և արտաքնովք հնոցն և նորագույս պատճառաւ, զարթեալք որպէս 'ի քնոյ զուարթարարս բանիւք որ 'ի սուրբ թագաւորութենէդ, որով պատուեցաւ քուրձն սգոյ առ 'ի մէնջ, և զգեցաք զուրախութիւն ըստ գոհութե մարգարէին որ յաղագս Աստուծոյ: Քանզի ծանոյց մեզ զօրութիւն բանիս ոչ միայն անուանակցութեան և աթոռակալութեան, այլ և գործակցութեան Ճշմարիտն Էմմանուէլի արժանաւորել մեզ, այն որ հարիւրոցն ոչ խարաց և դրամիցն տաղանդաց էջ 'ի խնդիր նուաղութեանցն լլման. և զմիջնորմն ցանկոյն քակեաց, և առար զերկուսեանն մի արարեալ խաչին իւրոյ, ըստ այսմ և դոքք հանդերձեալ էք զանուանակցութիւնք և զաթոռակալութիւնք ոչ միայն օրինակաւ կոչել, այլ և արդեամբք և ճշմարտութեամբ:

Քանզի զքանի՛ օրհնացն զոր խրա-
մանեաց Թշնամին, և զուսումն հա-
ւատոյ զոր քանդեաց կինձն վայ-
րենի 'ի Ճշմարիտ որթոյն, փութալ
խարամանկարկան լինել, և առ նոյն
պատուաստել վերստին. և այսմ
բարւոյ գործակից լինել զմերս ակա-
րութիւն հրամայեալ էք եղբարք
իմոյ առաքել 'ի սուրբ Թագաւո-
րութիւնդ ; որպէս զի զերբեմն ա-
ւանդեալն գրով բան հաւատոյ՝
դուզնաքեայ ինչ, 'ի խնդրոյ Քրիս-
տոսասէր ոգւոյ և արժանաւոր
սուրբ Թագաւորութեանդ փեսայի
Պռօտոստրատորին, և հաճոյ եղեալ
բարեպաշտութեանդ ձերոյ, վերըս-
տին լուիցէք կենդանի ձայնիւ 'ի
լուծումն աանելութեան պատճառի
որ 'ի սատանայէ և 'ի նորին գոր-
ծակցաց, և 'ի հաստատութիւն սի-
րոյն որ Աստուծով և աստուածայ-
նոց, յորմէ և միաւորութիւն եկե-
ղեցւոյ և խաղաղութիւն մանկանց
նոր սիոնի ։ Յորոց միաբանապէս
'ի մի բերան փառաւոր լինել հա-
մագոյ Երրորդութիւնն և մի աս-

տուածութիւնն փոխանակ որ մինչև ցայժմ հայհոյութեանցն յերկրայունց կողմանցն սուրբ հաւատոյ միմեանց , և աւանդութեանց ։

Եւ մեր յօժարութիւն ընթացից առ այսոսիկ այնքան՝ մինչզի ոչ կենդանութեամբ միայն , թէպէտ և տկարութեամբ զգածեալ եմք , այլ և՛ի գերեզմանէ , թէ էր հնար՝ յառնել և գալ ընդ Ղազարու՝ որպէս և նա յաստուածային ձայնէն կոչումըն ։ Բայց քանզի Ճարտարապետն բնութեանս զսիւն Ճշմարտութեան որ յայսր խարսխի վերայ հաստատեալ էր սասանեցոյց , և փոխանակ զմերս հաստատեաց անարժանութիւն , արգելաւ յայժմուս այսու պատճառաւ յարձակումն կամացս յօժարութեան , զի մի գուցէ որ 'ի մէջ աղտաղտուկ ջուրց անհաւատութեան հաստատեալ կըղզիս ընկղմեսցի 'ի զանազան ալեացս խռովութեանց 'ի վերայ յարուցելոց ։ Նա թէ և այս ոչ պատճառ խափանման պատահեալ էր , զիա՞րդ կաթիլ մի գիտութեան, հնար էր

տու համառօտարածն ծով իմաստութեան համարձակել մերձենալ 'ի հարցումն և 'ի պատասխանիս, յորմէ վտակաց առուգանին որք ընդ արեգակամբս տունկք իմանալի դրախտին Աստուծոյ ։ Քանզի ո՞ւր մեր վարժարանք 'ի Թագաւորական պատրաստեալ հրամանաց, և կամ յոյս փառաց և պարգևաց յառաջացելոցն յիմաստս՝ որ մանաւանդ մանկաբարոյիցն են առաւելագունի պատճառ փութոյ կրթութեան ։ Զի մեզ արդարև 'ի դէպ է երից մանկանցն երգ. առ Աստուած՝ քան խորակլեան տուհմին յայնժամ, եթէ Մատնեցեր զմեզ 'ի ձեռս թշնամեաց մերոց. և եթէ Նուաղեցաք մեք քան զամենայն ազգս. և եթէ Ոչ գոյ 'ի ժամանակի յայսմիկ իշխան մարգարէ, և որ ըստ կարգի։ Եւ որ արդարապէս դատի զարմացման արժանաւոր վարկանի, 'ի շաւիղս միայն տեսանելով զմեզ իմաստութեան, և կաթիլ մի 'ի հոսմանէ եդեմականն ունելով աղբերէ, և 'ի հաւատոյ միայն լինել առհ-

մանր ճշմարտութեան . այլ զիմաստութիւն բանի, կամ զգիտութիւն հանճարոյ ոչ պահանջէ 'ի մէնջ կատարելապէս ։

Բայց հաւատամք ողորմութեանն Աստուծոյ, զի որ շարժեաց զկամս ձեր յայսոսիկ, նոյն յորդորեացէ և 'ի խնդիր ելանել պատուական մարգարտին հաւատոյ ըստ իմաստուն վաճառականին . զի թէ ամենազօր բնութիւնն այն՝ որ զոր ինչ կամեցաւ ըստ մարգարէին արար յերկինս և յերկրի յորժամ հանդերձեալ էր ժողովել զցրուեալքս, էջ 'ի հօրէ, ուստի ոչ երբէք մեկնեցաւ, և եկն յաշխարհ՝ ուր էրն 'ի սկզբանէ՝ զկերպարանս ծառայի առեալ ըստ առաքելոյ, խոնարհեցոյց զանձն լեալ հնազանդ մահու չափ և մահու խաչի, ոչ է տկար յաննմանիցն և ձեզ որ զնորին ունիք զօրինակ՝ խոնարհել յաթոռոյ արքայութեան ձերոյ, և գալ յարևելս 'ի պատճառս նորին գործոյ և խրբ ։ Զի զոր նա ժողովեաց խաչիւն իւրով, և թշնամին արդարու-

Թեան ցրուեալ դարձեալ խորա֊
մանկութեամբ խռով, դուք 'ի նոյն
վերստին ժողովեցէք 'ի փարախ կա֊
թողիկէ եկեղեցւոյ։ Եւ որպէս
խոնարհութեան նորա լինիք նմա֊
նօղ գործով, նոյնպէս և հաղորդ
լինելոց էք փառաց նորա. ըստ այնմ
զոր ասէ դարձեալ առաքեալ եթէ
Վասն որոյ զնա Աստուած բարձրա֊
ցոյց և շնորհեաց նմա անուն՝ որ 'ի
վեր է քան զամենայն անուն։ Զի
ոչ այնքան բարբարոսական պատե֊
րազմաց յաղթութեամբք, և ամրա֊
գոյն քաղաքաց առմամբ, անուն
թագաւորութեան ձերոյ բարձ֊
րանայ, որչափ եկեղեցւոյ Քրիս֊
տոսի առնելով խաղաղութիւն ընդ
ախեղերս, և զպատերազմասէր Թշ֊
նամւոյն խորտակելով զզէնսն մինչ
իսպառ, որ է հեռ և նախանձ չա֊
րեաց, և բանակութիւն լինել 'ի մէա֊
ակար խրս, յորոց միջի է հայհոյ֊
ութիւն անուանն Աստուծոյ։ Որ֊
պէս նախնիքն ձեր և աթոռակալ֊
քըն՝ մեծն Կոստանդիանոս, և մեծն
Թէոդոս ոչ այնքան երկրաւոր Թա֊

գաւորութեան իւրեանց, որչափ եկեղեցւոյ փոյթ ունէին հաստատութեան. որովք և յանցաւոր կեանս առատապէս վայելեցին 'ի խնամս Աստուծոյ յաղթութեամբք թշնամեաց, և ամենայն յաջողութեամբք. և յանանց 'ի կեանսն երկնից թագաւորութեանն և վայելչն Քրիստոսի պսակացն Աստուծոյ արժանաւորք եղեն: Բայց զորօրինակ ամենազօրն Աստուած որ կարօղ էր 'ի միում վայրկեան ժամու յոչընչէ գոյացուցանել զերկնաւորս ամենայն, ոչ միայն զզօրութիւնն 'ի գործ արկանէր յառաջին արարչութեան, այլ և զիմաստութիւն ըստ մարգարէին, եթէ Զամենայն ինչ իմաստութեամբ արարեր, նոյնպէս և յերկրորդ արարչութեանս չունէր ինչ հարկ մարդ լինելոյ, և այնպէս վերստին ստեղծանել զմարդիկ. բաւական էր կամելն միայն, և ամենայն ինչ վճարէր: Այլ կարգն խոնարհեցաւ 'ի մեր տկարութիւն, և էջ՝ ուր անկեալ էաք, և այնու բարձրացոյց ընդ ինքեան, և արար երկ-

Նայինս . և այնու պէսպէս հնարիւք և ճարտարութեամբ որ նորին իմաստութեանն էր վայելչական ։ Այնպէս և դուք եթէ հանդերձեալ էք Քրիստոսի լինել գործակից, պարտիք և ճանապարհի նորին լինել հետևօղ, և ճանապարհաց անօրէնութեանն որ և առաջինն է խոնարհութիւնն . և որ նորին են մասունք հեզութեանն և քաղցրութեանն, որպէս և զինքն առնուլ մեզ օրինակ այսոցիկ հրամայէ, Ուսարուք յինէն, ասէ, զի հեզ եմ և խոնարհ սրտիւ ։ Զի զօրօրինակ բժշկական արհեստ զդեղ առողջութեանն հակառակ պատճառի ախտին մատուցանէ ախտացելոյն, նոյնպէս և բժիշկն հոգւոց . քանզի ծանօթ էր նմա մերս հիւանդութիւն՝ առաջին պատճառ 'ի հպարտութենէ լինել 'ի սկզբանն, նորին ազդաւ ընդ խոնարհութեանն իջանելով ճանապարհ գայ առ մեզ, զի զեռանացեալ ամբարտաւանութիւնն սատանայի խոնարհեցուսցէ . և զմեզ կամաւ ձգեալ առ ինքն

և ոչ 'ի բռնութենէն՝ յերկինս խոնարհութեամբն բարձրացուցէ ։ Զնոյնօրինակ և ձեզ արժան է առնել, ոչ Թագաւորական ահարկու զօրութեամբ, այլ քաղցրագոյն խոնարհութեամբ ձգել առ ձեզ զհեռացեալս, որպէս և Մեծն Գրիգոր Աստուածաբան յաղագս Աստուծոյ 'ի պասեքի Ճառին ասէ եթէ 'ի վերստին ստեղծանելն ըզմեզ, զաստուածութիւն բժշկութեան ոչ առնու 'ի կիր. զի ոչ հարկանելովն և հիացուցանելովն էր կարողութիւն յաղագս ժամանակեայ ապստամբութեանն. այլ՝ ընտանի և մարդասիրագոյն բժշկութեամբն մատակարարէ առ 'ի յուղղութիւնն ։ Որպէս և զտունկ ինչ ընկողմանեալ յուղղութիւն բերել բռնութեամբ ձեռին 'ի միւս կողմն փոխելով, յորժէ բեկանել՝ քան թէ ուղղել լինի. և ոչ զձի խստերախ հանդարտեցուցանել բռնութեամբ սանձաց՝ առանց ողոքանաց և զգաստացուցանող ձայնից ։ Քանզի եօթն հարիւր ամ աւելի

եղելոյ ժամանակաց բաժանման 'ի
միմեանց անդամոցս Քրիստոսի, և
'ի մէջ յօդուածոցն յոլովագունից
մտանելով ախտից ատելութեան,
և զորս ատելութիւնն ծնանիցի՝
Թշնամանաց և հայհոյութեանց, և
այնոքիկ կարծրացեալք և պըն_
դեալք, մինչ զի երկրորդ բնութիւն
հնացեալ սովորութեամբն լինել,
կարօտ է բազում հոգևոր բժշկա_
կան իւղոց օծմանց, այս ինքն սի_
րոյ, գթութեանց և ողորմու_
թեանց, զի արտաքուստ մտեալ օ_
տարոտին ախտ ելցէ արտաքս դար_
ձեալ. և ապա խաղաղութիւն, որ յօ_
դուածս անդամոցն՝ կակղասցի. և
անդամքն վերստին յօդեալք շա_
րակարգեսցին ընդ միմեանս: Եւ
այս լինի՝ յորժամ միջնորդ խաղա_
ղութեանն նախ զերկսեանն խաղաղու_
թեան և զնիւթական սիրոյն ճա_
ռագայթ առ ժողովուրդ ազգի մե_
րոյ որ ընդ իշխանութեամբ սուրբ
թագաւորութեան ձերոյ են՝ ծա_
գէք. և ոչ միայն զձերն՝ որ իբրև
բնութեամբ ծառայէք, ըստ նմա_

նութեան լուսոյ արեգական՝ զբարեացն տուատուութիւն առ ընդհանուր ազգս, այլ և ձերոցդ եկեղեցական դասուց և ռամիկ ժողովրդոց, որ իբրև զարգարութիւն ունին, և զաստուածային պատուիրանաց կատարումն, և զարքայութեանն երկնից ժառանգելոյ բաւական պատճառ՝ զատելն զմեզ, և զհայհոյելն, հրամայեցէք 'ի բաց յայնպիսի պատերազմասէր բարուց լինել, սիրով և խաղաղութեամբ բերիլ առ։ Նժդեհքս և պանդուխտքս, որք 'ի հակառակացն Քրիստոսի հալածեալք վասն արդարութեան, առ ձեզ որպէս յամուր ապաստանի դիմեալք են խաղաղանալ։ Զի համբաւ այսպիսի բարեացդ տարածելով յարևելեայս, անաշխատ իւրաքանչիւր ոգի յօժարեցին 'ի սէր միաբանութեան գալ ինքնակամ հաճութեամբ։ Եւ մի այլ լիցի որպէս մինչև ցայժմ պատճառ փախչելոյ մերոցն 'ի ձէնջ, աւերումն եկեղեցեաց, և սեղանոյ Աստուծոյ կործանումն, և նշանաց

Քրիստոսի խորտակումն, և բարձում Նեղութիւնք պաշտօնէից, և պէսպէս զրպարտութիւնք՝ որպէս և ոչ 'ի մէջ թշնամեաց Քրիստոսի յորս մերձ եմք: Զի այսպիսի գործ ոչ միայն և զբաժանեալսն ոչ միաւորէ, այլ և զմիաւորեալսն պառակտէ 'ի միմեանց. քանզի հակառակասէր է բնութիւն մարդկան, զորս ոչ այնքան բռնութիւն, որչափ խոնարհութիւնն և սէրն ձգէ 'ի հրամայողին կատարումն: Եւ զի՛նչ ասիցեմք զբանաւոր կենդանեացս, ուր և զթռչունս վայրենիս, և ըզգազանս սիրով, քան թէ բռնութեամբ սովոր են մարդիկ վարժել: Եւ արդ առաջին այս 'ի հոգևորական դեղոցն ատելութեան և բաժանման հիւանդութեանց՝ պատճառ առողջութեան:

Երկրորդ զենի այսօրիկ և մեծ քան զառաջինն՝ պատուէր տալ ընդ ամենայն եկեղեցիս որ ընդ թագաւորութեամբ ձերով՝ աղօթս առ Աստուած մատուցանել, զի զբարի առաջարկութիւն որ առ 'ի ձէնջ,

մի վասն մեղաց մերոց և անարժանութեան, թոյլ տացէ հակառակին բարեաց սատանայի խափանել իւրով խորամանկութեամբն. այլ 'ի կատարումն հաստուսցէ վասն ողորմութեան իւրոյ: Որպէս և մեք առ ազգի մերոյ եկեղեցիս որ յարևելս, և 'ի մեծն Հայք և 'ի միայնատանս որ 'ի սուրբ լերինս գրեցաք ընդնոյն պաղատել առաջի Աստուծոյ, զի բաւական զայսքան երկայնաձիգ ժամանակի հիւանդութիւս եկեղեցւոյ համարեսցի, և զառատութիւս ինքեան՝ որ վասն բաժանման մեր 'ի միմեանց: Այսուհետև 'ի սէր միաբանութեան ժողովեսցէ զորդիս նորոյ սիոնի, և ուրախ եղիցի ուրախութեան պատճառն ամենայնի Աստուած հանգերձ սուրբ հրեշտակօքն իւրովք յաղագս հաշտութեան մերոյ: Եւ հաւատամք մարգարէութեան Աստուծոյ, զի ինքն շարժեաց զձեզ 'ի բարիս յայս. զի սովոր է Աստուած, որպէս զբարկութիւնն 'ի ձեռն չարեաց ածել 'ի վերայ աշխարհի ըստ ասացելոյն ե-

թէ զչարսն չարաւ կորուսցէ, նոյնպէս և զքաղցրութիւնն ՚ի ձեռն բարի արանց. որ և երկրաւոր թագաւորացդ սովորութիւն է զնոյն առնել: Վասն որոյ և յառաջին թագաւորացն ոչ զոք՝ բայց զձերդ միայն ետես խոհեմութիւն այսմ մեծագունի բարւոյ լինել պատճառ եկեղեցւոյ. և արժանաւոր իսկ էք որպէս լուաք ՚ի բազմաց՝ մանաւանդ ՚ի սուրբ թագաւորութենդ հաւատարիմ ծառայէ յԱրուխեդ: Զի ծանոյց զչորից մասանց առաքինութեանց զսէր և զյօժարութիւն բերեալ ՚ի ձեզ, մանաւանդ յերկիւղն Աստուծոյ զաստիարակեալ, որ է սկիզբն իմաստութեան ըստ Դաւթայ և Սողոմոնի: Վասն որոյ յերաւէ ՚ի թագաւորութեանն ձերոյ ժամանակ ակնկալութիւն բարում բարեաց է քրիստոնէից իշխանելոյ ՚ի վերուստ: Քանզի զոր օրինակ բարկութիւնն Աստուծոյ որ մատնեաց զեկեղեցի ՚ի ձեռս հեթանոսաց՝ վասն բաժանմանն եղև և յետ բաժանելոյն, նոյն և գթու֊

թիւնն Աստուծոյ առ քրիստո-
նեայս և զօրացուցանել վերստին
զթագաւորս և զզօրաւորս քրիստո-
նէից՝ ոչ այլ ինչ լինիցի, բայց միա-
ւորութեամբն դարձեալ ամե-
նայն եկեղեցեաց Քրիստոսի․ զի
թէպէտ և մարգարէութիւն ոչ է
’ի ժամանակիս, այլ իմաստութիւնն
տայ ճանաչել՝ եթէ արդարանայ
Աստուած զայս ինչ խօսելով առ
ամենայն ազգս՝ որպէս դատաստա-
նաւ․ եթէ ես արարից ձեր մարդ
եղէ վասն ձեր, և չարչարանօք իմովք
և մահուամբ զառ ’ի չար գազանէ
անտի ցրուեալսդ ժողովեցի ’ի միա-
սին, և այսօրինակ մեծագունի երախ-
տեաց փոխարէն ոչ այլ ինչ պա-
հանջեցի ’ի ձէնջ, բայց զայս միայն
պատուիրան աւանդեցի ձեզ՝ եթէ
Սիրեցէք զմիմեանս ։ Իսկ դուք զիմն
արհամարհեալ զսիրոյն պատուի-
րան, զթշնամւոյն ձեր ընկալայք
դարձեալ զխրատ, զատելութիւն և
զբաժանումն․ վասն այսորիկ դար-
ձուցի զօգնութիւն իմ ’ի սրոյ ձեր, և
մատնեցի զձեզ ’ի ձեռս հեթանո-

սաց։ Արդ եթէ փոխիք դարձեալ 'ի սիրոյ իմոյ պատուիրան, և ժողովիք 'ի մի կաթողիկէ առաքելական եկեղեցի իմ, փոխեցայց և ես 'ի բարկութենէ անտի 'ի քաղցրութիւն, և զգեցուցից ձեզ զօրութիւն 'ի պատերազմի, և զյարուցեալն 'ի վերայ ձեր ներքոյ ձեր արարից։

Եւ արդ զոր օրինակ առաւօտունշան՝ աւետիս տայ արեգականն ծագման, այսպէս և շարժումն կամաց ձեր յայտոսիկ՝ գուշակէ զհաշտութեանն Աստուծոյ սկիզբն ընդ եկեղեցի իւր սուրբ. քանզի սիրտ թագաւորի 'ի ձեռին Աստուծոյ է ըստ իմաստնոյն։ Նա զի և լուաք թէ սուրբ և առաջին ամենայն եպիսկոպոսապետաց հայրապետն Հռոմայ, և փոխանորդն Պետրոսի առաքելոյ յիւրոց անտի իմաստնոց առաքեաց խօսել առաջի սուրբ թագաւորութեան ձերոյ վասն միաբանութեան։ Այլ և որ զազգին Ասորւոց ունէր զքահանայապետութի, 'ի նմին շաբաթու յորում զգլուխն մեր վերափոխեցաւ առ գլուխն

Քրիստոս, և նա ընկալաւ զվախճանն։
Եւ յորժամ ժողովեցան եպիսկո-
պոսունք ազգի իւրեանց, և ձեռ-
նադրեցին նոր պատրիարգ, 'ի պատ-
րիարգէ անտի և 'ի ժողովոյ եպիս-
կոպոսացն առաքեցան առ մեզ
երկու եպիսկոպոսք վասն միաբա-
նելոյ ընդ ազգիս մերում։ Զոր և
ընկալաք սիրով և սահմանեցաք 'ի
պատշաճ. ժամու ժողով լինել ա-
ռաջի մեր, և խօսել առ միմեանս
յաստուածաշունչ գրոց. զի թէ
գտանիցի աւանդութիւն ինչ 'ի մէ-
ջի մերում արտաքոյ աստուածա-
դիր կանոնաց, բարձցուք յերկո-
ցունց կողմանց, և զնուազութիւնն
լցցուք միաբանական սիրով։ Ուս-
տի ծանեաք աստուածային լինել
շարժումն զայսոսիկ, և ոչ մարդ-
կայինս։

Այլ և զայս ևս հայցեմք 'ի նե-
րող քաղցրութենէ ձերմէ, զի թէ
անօրինեսցէ Աստուած խօսել մեզ
առ միմեանս, մի՛ եղիցի որպէս
տէարն առ ծառայս, և ծառայքն
առ տէարս. զի դուք զմերձն պահա-

սութիւն դնէք մեր առաջի, և մեք ոչ համարձակիմք 'ի ձերոց ինչ՝ յորոց դայթակղիմք ծանուցանել ձեզ. և այս մարմնաւորաց է օրէն և ոչ հոգևորաց. զի թէպէտև 'ի նիւթականացս զբարձրագոյնն ունիմք ամենայնիւ, և յիմաստութիւն առաւել եալ քան զմնաս, այլ աննիւթական շնորհաւն մի են հաւատացեալք 'ի Քրիստոս, մեծամեծք և փոքունք ըստ Պաւղոսի։ Վասն որոյ եթէ ողորմութիւն Աստուծոյ պշխմնարկեալս 'ի ձէնջ շինուած խաղաղութեամբ յաւարտումն հասուցէ լինել քննութեան բան 'ի միասին ժողովելոց, դիցուք երկոցունց բաժանեալ որոնցս գլուխ անդեան և Թագաւոր զվէմն Քրիստոս, որպէս և է իսկ Ճշմարիտ. և դատաւոր զգիրս առաքելոցն և մարգարէից և զուղղափառս վարդապետաց եկեղեցւոյ. և մեք իւրաքանչիւր ոք որպէս դատախազք կալով առաջի Թագաւորին և դատաւորացն, խօսեսցուք դատաստանաւ ընդ միմեանս, և խնդրեսցուք իրա֊

ւումս 'ի նոցանէ: Եւ որում բանն և զխմաց վկայեն դատաւորքն ուղիղ և ըստ կամաց նոցա լինել, զայն ընկալցուք անհակառակ. և զոր վկայեն արտաքոյ եղեալ ճշմարտութեան եթէ 'ի դաւանութիւն հաւատոյ, և եթէ յաւանդութիւնս եկեղեցեաց՝ թէ առ մեզ և թէ առ ձեզ, յայնցանէ 'ի բաց հրաժարեսցուք երկոքեան: Եւ քննութիւն ոչ հակառակութեամբ և անօգուտ բանակռուութեամբ որպէս մինչև ցայժմ, յորոց ոչ ինչ օգտեցաւ եկեղեցի յայսքան ժամանակ, այլ մանաւանդ վնասեցաւ իսկ. այլ եղիցի հեզութեամբ և հանդարտութեամբ, և զբեռն իրերաց բառնալով, և զտկարութիւն տկարաց բժշկելով ըստ հրամանի առաքելոյն: Զի որ յաղագս հակառակին յաղթելոյ խօսեսցի զբանն, որպէս զի փառս որսասցէ 'ի մարդկանէ իբրև զյաղթող, վաճառական է այնպիսին բանին Աստուծոյ, և ոչ սպասաւոր. և հարկանող վիրաւորեալ անդամոցն Քրիստոսի, և ոչ

սպառօղ։ Այլ արժան է ըստ մեծին Գրիգորի աստուածաբանի յայտնիկ բերել եկեղեցւոյ վարդապետաց· որպէս և Նա առ հոգւոյն Նուաստացուցիչսն, որք զօրութիւն Աստուծոյ ասէին, և Աստուած ասել ոչ համարձակէին, ասէր· Տուք զզօրութիւն աստուածութեանն, և տացուք ձեզ Թողութիւն ձայնին՝ մինչև ընդ այլ ճանապարհ 'ի նոյն եկեսցուք օթևան · և զայս ասելով, ասէ՝ իբրև զհիւանդս զձեզ բժշկեմք, զի ընկալցուք եղբարս զօտարացեալսդ յեղբայրութենէ։ Ըստ այսմ և դուք զոր միանգամ գտանիցէք Թերութիւն բարեացկամ հիւանդութեան ինչ պատճառ 'ի մեզ, ոչ 'ի զրպարտութենէ ասեմ, զոր ատելութիւնն ծնանի, և ոչ 'ի ստաբանութենէ ոմանց աներկեղից 'ի մէնջ առ ձեզ հատուածելոց, և զմերս աղարտելով կարգաւորութիւն 'ի համոյս ձեր կարծելով, այլ Թէ զոր ունիմք խոստովանաբար, զայն դուք բժշկեցէք· և մեք հաւանիմք իբրև հաւատարիմ բը-

ժըշկաց, թէ և դառնահամք լինիցին դեղքն։

Նոյնպէս և թէ առ ձեզ յառաջակէն ոգւոց գողաբար մտեալ իցէ իրս ինչ արտաքոյ ճշմարիտ աւանդին, զի գոյ քուն և իմաստնոյն ըստ աստացելումն, և յայտնի՛ ի մէնջ առ ձեզ անտես եղեալն ի ձէնջ հնացեալ սովորութեամբքն, զայն դուք բարձէք ՚ի մարմնոյ եկեղեցւոյ։ Եւ չէ ինչ անտեղի կամ աւաջին կատարելոց յիմաստութիւն՝ յանկատարից ընդունել զօգտակարագոյն ինչ բան. ուր զի մեծն մարգարէից Մովսէս ՚ի Յոթորայ, և մարգարէն և թագաւորն Դաւիթ ՚ի Նաթանայ ընդունէին խոնարհութեամբ. զի ոմն զիմաստութեանն իւր խրատ, և ոմն զյանդիմանութիւն սղալանաց։ Նաև հըմուտ բժշկաց առողջութիւն է ոչ անարգանս համարել յորժամ հիւանդանան, յաշակերտաց իւրեանց ընդունել դեղս բժշկութեան. այլ մանաւանդ հրամայել տալ առանց զանգիտելոյ, լաւ վար-

կանելով զառողջութիւնն խոնարհութեամբ, քան 'ի հիւանդութեան կալ հպարտութեամբ: Նաև բժիշք աչաց թեպէտ և սրագոյն լինին զայլս տեսանելով, բայց զինքն և որ շուրջ զինքեամբ են դիրք մարմնոյն անկարանայ նկատել. որ և յախտանալն՝ այլում կարօտանայ աչաց և ձեռին վասն առողջութեան:

Եւ արդ՝ այս պատճառ իմաստից բան բաւական է զոր տուաք դրով ծայրագոյն ձեր իմաստութեան: Կարող էք սակաւուքս զբաղուամն իմանալ մտաւորական տեսութեամբ. և զոչ պարունակեալն դրով, բանականքդ պատմեսցեն բանիւ առաջի սուրբ թագաւորութեանդ: Որք ընդ հոգևոր բանիւ՝ ծանուսցեն և զմարմնաւոր կրից մեր տաժանումն զոր ունիմք 'ի շուրջ եղելոյս զմեօք: Ողջ լեր թագաւոր օգոստէ, երկնաւոր թագաւորին պահպանեալ զօրութեամբ:

# ՑԱՆԿ

# ՑԱՆԿ

## ԱՆՈՒԱՆՑ

